ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 5
Մ Ա Յ Ի Ս
1957 Թ.
★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIV
ՏԱՐԻ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն

Էջ



### ՀՈՒՇԵՐ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ԱՆՑՅԱԼԻՑ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



ОБЯЗАТЕЛЬНЫЙ ЭКЗЕМПЛЯР

digitised by A.R.A.R.@

Государственная БИБЛИОТЕКА СССР им. В. И. Ленина
2641 10385
П-58

## СОДЕРЖАНИЕ



# ՄԱՄՈՒԼԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

*Քառասունհինգ տարի առաջ, 1912 թվականի մայիսի 5-ին լույս տեսավ մարքսիստական բանվորական օրաթերթի՝ «Պրավդա»-յի առաջին համարը, որը հրատարակվեց Պետերբուրգի բանվորների նախաձեռնությամբ, նրանց հավաքած միջոցներով և ակտիվ մասնակցությամբ։*

*Ռուսաստանում ռևոլյուցիոն շարժման նոր վերելքի պայմաններում բոլշևիկյան մասսայական առաջին լրագրի լույս ընծայումը մեծ իրադարձություն էր մեր պարտիայի հերոսական տարեգրության և ռուսական բանվորական շարժման պատմության մեջ։ «...«Պրավդա»-յի ստեղծումը,— ասում է Վ. Ի. Լենինը,— ռուս բանվորների գիտակցականության, էներգիայի և համախմբվածության ակնառու ապացույցն է մնում»։ «Պրավդա»-ն կարևոր դեր խաղաց պարտիական շարքերի խտացման, մասսաների հետ պարտիայի կապերի ամրապնդման, ռևոլյուցիոն բանվորների նոր սերնդի դաստիարակման և օպորտունիզմի բոլոր տարատեսակների դեմ մղվող պայքարում։*

*«Պրավդա»-ն փառավոր ուղի է անցել։ Նա եղել է ու մնում է մեր պարտիայի մարտական օրգանը, լենինիզմի գաղափարների դրոշակակիրը, կոմունիզմի համար մղվող պայքարի հզոր զենքը։*

*Ի նշանավորումն լենինյան «Պրավդա»-յի առաջին համարի լույս ընծայման՝ ամեն տարի տրադիցիոն կերպով մայիսի 5-ին նշվում է Սովետական Մամուլի օրը։*

*Մամուլի օրը ոչ միայն լրագրային աշխատողների, այլև տասնյակ միլիոնավոր ընթերցողների, աշխատավորական լայն զանգվածների տոնն է։ Սովետական մամուլը, նոր տիպի մամուլը, մեր պարտիայի գաղափարական ամենասուր զենքն է, ամենահեռահար հրետանին, որն ազնվորեն ծառայում է ժողովրդին, արտահայտում է նրա նվիրական իղձերը, նրա խոհերը։ Եվ դա հասկանալի է, քանի որ Կոմունիստական պարտիան, նրա մամուլը չունեն և չեն կարող ունենալ այլ շահեր, քան ժողովրդի շահերն են, քան հոգատարությունը ժողովրդի բարեկեցության ու երջանկության նկատմամբ։ Սովետական մամուլը մասսաներին է հաղորդում բոլշևիկյան ճշմարտացի, ազնիվ խոսքը, լենինիզմի ամենահաղթ գաղափարները, ակտիվորեն օգնում է նրանց կոմունիստական շինարարության մեծ գործում։ Նա հնարավորություն է տալիս մեր պարտիային ամեն օր, ամեն ժամ խոսելու ժողովրդական լայն մասսաների հետ։ Մամուլը հասարակական կարծիքի կազմակերպիչն է, հրամանատարը. Նա ոչ միայն կոլեկտիվ պրոպագանդիստ և ագիտատոր է, այլև կոլեկտիվ կազմակերպիչ։*

*Սովետական ժողովուրդը հերոսական ջանքեր է գործադրում, պայքարում է գործի վերածել ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները՝ հանում*

digitised by A.R.A.R.@

սոցիալիստական էկոնոմիկայի ու կուլտուրայի հետագա վերելքի, հանուն մասսաների նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացման: Պարտիայի Կենտկոմի Դեկտեմբերյան և Փետրվարյան պլենումների, ՍՍՌՄ Գերագույն Սովետի վեցերորդ սեսիայի որոշումները ամբողջապես ուղղված են այդ վիթխարի խնդիրների պրակտիկ իրականացմանը: Այդ ամենը հրամայաբար պահանջում է ուժեղացնել և է՛լ ավելի բարելավել մեր մամուլի բոլոր օղակների աշխատանքը, ամեն կերպ ծավալել բանդյուղթղթակցական շարժումը:

Մեր պարտիայի XX համագումարը պահանջեց հատուկ ուշադրություն դարձնել մամուլի դերի, նրա գաղափարական-քաղաքական և կազմակերպական մակարդակի բարձրացման վրա: Ինչպես Սովետական Միության ամբողջ մամուլը, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի մամուլը, ռեսպուբլիկական, քաղաքային, շրջանային, բազմատիրաժ թերթերը, ռադիոն, ամսագրերը օգնում են պարտիական կազմակերպություններին՝ ՍՄԿՊ XX համագումարի որոշումները կատարելու գործում:

Թերթերն ու ամսագրերն իրենց քննադատության սլաքն ուղղում են ղեկավարման որոշ օղակներում եղած գրասենյակային-բյուրոկրատական մեթոդների դեմ, օգնում են կադրերին վճռական շրջադարձ կատարելու դեպի տնտեսական շինարարության կոնկրետ ղեկավարման հարցերը: Թերթերը և ամսագրերն իրենց էջերում պայքարում են մարքսիզմ-լենինիզմի գաղափարների տարածման համար, սովետական մարդկանց դաստիարակում են Հայրենիքին, Կոմունիստական պարտիային նվիրվածության ոգով:

Սակայն չի կարելի ասել, թե մեր ռեսպուբլիկայի մամուլի, ռադիոյի աշխատանքներում սխալներ ու լուրջ թերություններ չկան: Ճիշտ չէր լինի աչք փակել դրանց հանդեպ:

Առաջավոր փորձի տարածմանը մեր պարտիան միշտ էլ մեծ տեղ է տվել: Նա ունի կենսական նշանակություն: Անցյալ տարի մամուլում հրապարակվեց լենինյան մի փաստաթուղթ. դա մեր պարտիայի և սովետական պետության հիմնադիր Վլադիմիր Իլյիչ Լենինի նամակն է՝ ուղղված Օլմինսկուն, իսկ պատճենը՝ «Պրավդա» թերթի խմբագրությանը:

Մեծ առաջնորդի տարիներ առաջ արտահայտած մտքերն այժմ էլ պահպանում են իրենց թարմությունը և կարծես թե այսօրվա համար են ասված:

Լենինն այդ նամակում գրել է.

«Ամենից վատը մեզանում ընդհանուր դատողությունների չափից ավելի առատությունն է մամուլում և քաղաքական ճռճռանությունը՝ տեղական փորձի ուսումնասիրման ծայրահեղ անբավարարության պայմաններում... որքան շատ խորանանք կենդանի պրակտիկայի մեջ, այնքան ավելի հաջող կլինի բարելավումը մեր մամուլում և մեր ամբողջ շինարարության մեջ...»:

Մինչդեռ, ինչպես ցույց տվեցին անցյալ տարվա վերջին կայացած բանգյուղթղթակիցների ժողովներն ու կոնֆերանսները, ռեսպուբլիկական համագումարը, մեր մամուլը դեռ խոր չի թափանցում իրական կյանքի մեջ:

Հիշենք, թե ինչպիսի հետևողականությամբ Վ. Ի. Լենինը պահանջում էր թափանցել իրական կյանքի մեջ, պարզել, թե որտե՛ղ, ո՛վ, ի՛նչ ձևերով է հաջողվում հասնել իսկական, թեկուզ և փոքր հաջողության: Լենինը պահանջում էր չվախենալ սխալներից, չվախենալ շարքային մարդկանց աշխատանքի դրական փորձի շուրջը ռեկլամ անելուց: «Ամբողջ ուժով,— ասում էր նա,—



ամեն մի քիչ թե շատ աչքի ընկնող տեղական աշխատողին ցույց տալ որպես օրինակ»: Ամենալուրջ թերությունն այս գործում մակերեսայնությունն է: Մենք թերթի էջերում հանդիպում ենք առաջավոր փորձի մասին լավ վերնագրերի, խոսուն ճակատների, բայց, դժբախտաբար, հրապարակված նյութերը քիչ բան են ասում փորձի էության մասին: Այդ նյութերի մի մասը պատմում է, թե ինչի են հասել առաջավոր բանվորները, ինժեներները, տեխնիկները, ինչի են հասել առաջավոր արտադրական ձեռնարկությունները, կոլտնտեսությունները: Բայց նրանց մեջ բացակայում է հիմնական հարցի պատասխանը. ինչպե՞ս են հասել այդ բարձր ցուցանիշներին: Ավելի լավ է առաջավոր փորձի մասին մեկ հոդված տպագրել այդ փորձի բոլոր մանրամասնություններով, քան թե քսաներեսուն ինֆորմացիոն բնույթի նյութեր: Ինչպես առաջավոր փորձի, այնպես էլ Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցության հարցերի լուսաբանման գործում չկա հետևողականություն:

Առաջավոր փորձի պրոպագանդան և արմատավորումը էպիզոդիկ մի բան, կամպանիա չէ: Սոցիալիստական տնտեսության զարգացման համար առաջավոր փորձը, նրա արմատավորումը մեծ նշանակություն ունի:

Մի այլ թերությունը առաջավոր փորձի նյութերի միօրինակությունն է, նրանց մեջ իշխող շաբլոնը, տրաֆարետը: Շատ թերթեր լրագրային բազմազան ձևերից հաճախ տարվում են միայն ինֆորմացիայով՝ ստորագրությամբ և անստորագիր: Երբեմն «Առաջավորների փորձ» խորագրի տակ տպագրվում են չոր ու ցամաք ինֆորմացիաներ:

Մամուլի էջերում քիչ են ելույթ ունենում առաջավոր մեխանիզատորներն ու կոլտնտեսականները, օղակավարներն ու բրիգադիրները: Մինչև այժմ անբավարար ուշադրություն է նվիրվել գյուղատնտեսական արտադրության առանձին ճյուղերի զարգացմանը. վատ են լուսաբանվում պտղաբուծության, ինչպես նաև անասնաբուծության զարգացման հարցերը:

Դեռ անբավարար են լուսաբանվում ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հեռանկարային հարցերը՝ կապված առանձին շրջանների առանձնահատկությունների, նրանց բնակլիմայական պայմանների, եղած ռեզերվների օգտագործման հետ: Մեր մամուլում դեպքից-դեպք են արծարծվում գյուղատնտեսական արտադրության էկոնոմիկայի, արտադրության ծախսերի կրճատման, ինքնարժեքի իջեցման, կոլտնտեսություններում աշխատանքային ու դրամանյութական միջոցները խնայողությամբ ծախսելու հարցերը:

Լենինը, բնորոշելով ռևոլյուցիայից առաջ և հետո տարվող կոմունիստական պրոպագանդայի տարբերությունը, նշել է ռևոլյուցիայից հետո տնտեսական շինարարության պայմաններում պրոպագանդայի խնդիրները:

«Հին տիպի պրոպագանդան պատմում է, օրինակներ է տալիս, թե ի՛նչ բան է կոմունիզմը,— գրում է Լենինը: Բայց այդ հին պրոպագանդան ոչ մի բանի պետք չէ, որովհետև հարկավոր է գործնականորեն ցույց տալ, թե ինչպե՛ս պետք է կառուցել սոցիալիզմ: Ամբողջ պրոպագանդան պետք է կառուցվի տնտեսական շինարարության քաղաքական փորձի վրա: Դա մեր ամենագլխավոր խնդիրն է, և եթե որևէ մեկի մտքով անցնի դա հասկանալ բառի հին իմաստով, նա դուրս կգա հետամնաց և չի կարող վարել պրոպագանդայի աշխատանքը գյուղացիների ու բանվորների մասսայի համար: Մեր գլխավոր քաղաքականությունն այժմ պետք է լինի պետության տնտեսական շինարարությունը, որպեսզի ավել փթերով հաց հավաքենք, որպեսզի ավել փթերով

digitised by A.R.A.R.@

ածուխ տանք... ահա թե ո՛րն է մեր քաղաքականությունը: Եվ դրա վրա պետք է կառուցվի ամբողջ ագիտացիան և ամբողջ պրոպագանդան: Հարկավոր է, որ ավելի քիչ ֆրազներ լինեն, որովհետև ֆրազներով դուք չեք բավարարի աշխատավորներին» (Երկեր, հ. 31, էջ 465—466):

Չի կարելի ասել, թե մամուլի աշխատողները տեսականորեն չեն հասկանում պրոպագանդայի ու ագիտացիայի այս պահանջը: Բայց գործնականում նրանք դեռ լիովին չեն արտացոլում կյանքի, տնտեսական շինարարության ակտուալ հարցերը:

Պարտիայի XX համագումարի պատմական որոշումները աշխատանքային ներշնչման աղբյուր են ինչպես սովետական ամբողջ ժողովրդի, այնպես էլ նրա արվեստի և գրականության գործիչների համար: Այդ որոշումները մեր արվեստի և գրականության գործիչներին ստեղծագործական նոր ավյուն ներարկելու հետ միասին զինում են նրանց ժամանակակից իրադրության և միջազգային կյանքի զարգացման հեռանկարների ճիշտ ու խոր ըմբռնմամբ, մի բան, որ մեծապես օգնում է նրանց գաղափարապես հագեցված, բարձրարժեք ստեղծագործություններ տալու գործում: Սովետահայ գրականության և արվեստի աշխատողների ջոկատը և մամուլը մեծ անելիքներ ունեն գեղարվեստական խոսքով օգնելու սովետական ժողովրդի աշխարհաշեն պայքարին, նպաստելու, որպեսզի նա հաջողությամբ լուծի այն մեծ խնդիրները, որ պարտիայի համագումարը դրել է մեր ժողովրդական տնտեսության առջև:

«Գրական թերթ»-ը և «Սովետական գրականություն» ամսագիրը բավականին գործ են կատարել ժողովուրդների բարեկամության հարցերը լուսաբանելու, Սփյուռքի դեմոկրատական գրականության աչքի ընկնող ստեղծագործությունները մասսայականացնելու ուղղությամբ: Գրական մամուլում հաճախ են երևում ակնարկներ, որոնց հեղինակները փորձում են գեղարվեստորեն ցույց տալ մեր կյանքում գոյություն ունեցող հետաքրքրական երևույթները, ինչպես նաև այս կամ այն բնագավառի արատներն ու թերությունները: Սակայն, արդյունաբերության, գյուղատնտեսության և այլ թեմաներով գրված ակնարկներն ամենից առաջ չեն բարձրացնում հուզող, ծանրակշիռ հարցեր, որոնց լուծումն օգներ մեր տնտեսության այս կամ այն բնագավառում տեղ գտած թերության վերացմանը: Այնուհետև, այդ գործերից շատերը չեն փայլում գրական վարպետությամբ և այդ պատճառով էլ չեն մնում հիշողության մեջ: Երբեմն նկատվում է երևույթների գունազարդման, կամ ընդհակառակը, ամեն ինչ սևացնելու, բացասելու արատավոր տենդենց:

«Գրական թերթ»-ում երբեմն տեղ են գտնում նաև գաղափարազուրկ, մեր կյանքը և նվաճումները ծուռ հայելու մեջ ցույց տվող հոդվածներ, ակնարկներ և այլն:

Վերջերս թերթը վիճաբանության առարկա դարձնելով Հ. Հակոբյանի ստեղծագործությանը նվիրված Գ. Սարգսյանի մենագրությունը, թույլ տվեց կոպիտ սխալ, երբ հայ պրոլետարական գրականության վետերանի ստեղծագործության գնահատմանը մոտեցավ միակողմանի՝ էսթետիզմի տեսանկյունով:

Ոչ միայն «Գրական թերթ»-ի, այլև մյուս թերթերի և ամսագրերի առաջնահերթ խնդիրն է՝ ամենօրյա գործունեության ընթացքում հանդես բերել առավել սկզբունքայնություն և պարտիականություն արվեստի ու գրականության հարցերը լուսաբանելիս:

Այստեղ անհրաժեշտ է ընդգծել, որ որոշ թերթեր և ամսագրեր երբեմն



հեռու են սահում կոմունիստական գաղափարայնության բարձունքից և չեն նկատում արվեստի, գրականության բնագավառում դրսևորվող խորթ տրամադրություններն ու սխալները: Այսպես, օրինակ, «Սովետական գրականություն» ամսագրի 1956 թ. № 12-ում տպագրված է բանաստեղծ Գ. Էմինի «Սիրտ իմ, ինչքա՞ն համբերեմ» ոտանավորը: Պոետը զրույցի է բռնվում իր սրտի հետ և կշտամբում վերջինիս, որը սիրում է այն, «ինչ կյանքում չես գտնի բնավ»: Մի՞թե խմբագրությունը չի նկատել, որ այդ սիրտը օժտված է արտառոց հատկություններով: Գ. Էմինի այդ ոտանավորում կարդում ենք.

Նստած ուրախ խնջույքում
Լալիս ես մռայլ
Եվ թաղումի ճանդեսում
Քրքջում ուրախ:

Դժվար չէ կռահել, որ սա համենայն դեպս նորմալ սիրտ չէ:

Հայտնի է, որ մամուլում և գեղարվեստական գրականության մեջ վերջերս լայնորեն քննարկվում է կոլեկտիվի և անհատի փոխհարաբերության բարդ հարցը:

Սովետական գրականության և մամուլի խնդիրն է դաստիարակել մարդու մեջ կոլեկտիվիզմի զգացմունքը, խոր հարգանք դեպի մարդը: Այս բանին կարելի է հասնել ոչ թե մերկապարանոց ագիտացիայով, ճառերով, այս կամ այն դեղատոմսն առաջադրելով, այլ խոր դաստիարակչական աշխատանքով, մարդկային հոգեբանությունը վերափոխող, գաղափարական սիստեմատիկ ներգործությամբ:

«Սովետական գրականություն» ամսագրի 1957 թ. № 3-ում (մարտ ամիս) տպագրվեց բանաստեղծ Պ. Սևակի «Ո՞վ է մեղավոր» պոեմը: Այդ նորություն չէր ընթերցողների համար: Դեռևս անցյալ տարի «Նովի միր» ամսագիրը տպագրել էր այդ աշխատությունը, որը արժանացավ ընթերցողների ուշադրությանը և տաք վեճերի տեղիք տվեց: Թվում էր, թե հեղինակը հաշվի կառներ քննադատությունը, իսկ «Սովետական գրականություն» ամսագրի խմբագրությունը կօգներ Սևակին այդ բանում: Չէ՞ որ նա վերցրել է մի այնպիսի թեմա, որը շոշափում է կոլեկտիվի և անհատի փոխհարաբերության մշակման կարոտ հարցը:

Ընտանիքի և սիրո հարցում կոլեկտիվի ակտիվ վերաբերմունքի նկատմամբ Սևակն այսպես է խորհում.

«Եվ մի՞թե քեզ դատող,
Դատափետող մարդիկ չեն իմանում,
Որ դու...
Հեղո՜ւկ չես դու,
Որ քո ձևը փոխեն այն ամանում,
Ուր քեզ կածեն»:

Այսպիսով, Պ. Սևակը ակներև կերպով հերքում է առհասարակ մարդկանց հոգեբանության և գիտակցության վերափոխման հնարավորությունը: Իսկ դա նշանակում է, մեղմ ասած, անտեսել մեր գաղափարախոսության՝ աշխարհը վերափոխող վիթխարի ուժը:

Հեղինակն իր հերոսի նեղ, անհատապաշտական, հիվանդոտ զգացմունք-

digitised by A.R.A.R.@

ները պաշտպանելու նպատակով, դառը խոսքեր է շպրտում այն մարդկանց հասցեին, որոնք նրա հերոսին իրավամբ մեղադրում են անհատապաշտության, այլոց ընտանիքը քայքայելու մեջ և եզրակացնում է.

«Թող որ ասեն, որ սա
Սովետական մարդուն բնավ սազական չի:
Թող որ ասեն, անգի՞ն,
Որ մեր սերը կյանքում բնավ տիպական չի:
Թող որ այդպես: Սակայն
Չէ՞ որ կյանքում նա կա...»:

Եվ երբ կարդում ես հեղինակի խոսքերը, թե ես գործ ունեմ մարդկանց և ոչ թե նրանց ամեն կարգի խորհուրդների հետ, ես գործ ունեմ միայն սիրո ու սրտի հետ, միայն քեզ հետ, անգին,— զգում ես, որ շնորհակալ թեման՝ (կոլեկտիվի և անհատի փոխհարաբերությունը) արծարծվել է անձնապաշտական տեսակետից: Իր պոեմում հեղինակը երես է թեքում կոլեկտիվից, չի օգնում իր հերոսին թոթափելու նեղ, անձնական նկրտումները և դուրս գալու կյանքի լայն ճանապարհ:

Հայպետհրատը վերջերս լույս է ընծայել Հրաչյա Հովհաննիսյանի «Հրաշալի այգեպան» բանաստեղծությունների ժողովածուն: Տարակույս չկա, որ այս ժողովածուում կան գաղափարապես հասուն և գեղարվեստորեն գողտրիկ բանաստեղծություններ: Այսուհանդերձ, հեղինակի մոտ ակներև են որոշ անհատապաշտական և երբեմն էլ անկումային տրամադրություններ: Դժբախտաբար թախծածոր մոտիվները հեղինակի երկում որոշ որակ են կազմում:

Չգիտես ինչո՞ւ պոետը դեռ նոր կյանք մտած՝ արդեն հոգնել է այլոց և իր խոսքերից (էջ 6), նա իր ջրատար մանկությունն է լալիս (էջ 7): Նրա համար հայրենի բակում ոչինչ չի փոխվել, միայն ինքն է փոխվել: Հեղինակը ինքն է բնորոշում իր ստեղծագործական դեմքը, երբ գրում է.

Նախիրն է դառնում բառաչով տխուր...
Ուռիների տակ ջրաղացը հին
Իմ հուշերի մեջ աղմկում է խուլ (էջ 14):

Իհարկե, պետք է ցավել, երբ նախրի «տխուր» բառաչը, կործանված ջրաղացի հոնդյունը մերթ-ընդմերթ խլացնում են սովետական պոետի քնարից հնչող մեզ հարազատ մեղեդիները:

Չի կարելի «Գրական թերթ»-ին չկշտամբել այն բանի համար, որ իր էջերում զետեղեց Բ. Գեմբարսկու հոդվածը, մի հոդված, որը լեհական ֆեոդալիզմի գովքն անելով՝ մեր ընթերցողներին ճգնում է հավատացնել, թե ֆեոդալական Լեհաստանում կյանքը «խարսխվում էր մարդկային անձնավորությունը հարգելու վրա», որ Լեհաստանը 17—18-րդ դարերում «հայերի համար ամենախանդակաթ մայրն է» եղել, որ նույնիսկ «լեհական պետությունը կովկասյան ծագում ունի» և նման անհարիր բաներ:

Աչքի է զարնում այն, որ «Սովետական արվեստ» ամսագիրը շատ է հրապուրվում պատմական հոբելյանական թեմաներով և աննշան չափով է զբաղվում սովետական արվեստի արդիական հարցերով:

Գրական մամուլում հրապարակված շատ նյութեր չեն տոգորված XX համագումարի որոշումների ոգով: Չկա սիստեմատիկ աշխատանք՝ գեղարվեստական բարձրարժեք գործերով լուսաբանելու ռեսպուբլիկայի բանվորության, կոլտնտեսային գյուղացիության, ինտելիգենցիայի աշխատանքային հերոսապատումը, որոնք կյանքի են վերածում պարտիայի համագումարի պատմական որոշումները: Գրական մամուլի էջերում անբավարար են երևում նաև այն մարդկանց կերպարները, որոնք իրենց մեջ կրում են անցյալի գարշելի մնացուկները և փորձում են արգելակել մեր կյանքի բուռն առաջընթացը:



Պարտիայի համագումարի կողմից առաջադրված խնդիրների լուսաբանման տեսակետից մեծ նշանակություն ունի երգիծանքի զարգացումը, ինչպես «Ոզնի» ամսագրում, այնպես էլ մեր ռեսպուբլիկական ու շրջանային մամուլում: Երգիծանքը կոչված է անխնա խարազանելու մեր կյանքում դեռ գոյություն ունեցող վատն ու թերին, կարյերիզմն ու բյուրոկրատիզմը, գողությունն ու խաբեությունը:

Ինչպես ռեսպուբլիկական, այնպես էլ շրջանային մամուլի էջերում տպագրվում են մի շարք հաջող ֆելյետոններ: Ուշադրության արժանի են «Ոզնի» ամսագրի մի քանի համարները և ծաղրանկարներից շատերը: Սակայն երգիծանքի ժանրը մեզ մոտ դեռ թույլ է զարգանում: «Ոզնի» ամսագրի քննադատության շրջանակները չափազանց նեղ են: Կոլտնտեսության վարչության նախագահներ, գիտության, գրականության և առևտրի մարդիկ — ահա այն թեմաները, որոնցից ոչ մի կերպ չի ուզում հեռանալ «Ոզնին»: Ամսագրի էջերում քիչ է լուսաբանվում արդյունաբերական թեման, եղած նյութերն էլ առանձին հետաքրքրություն չեն ներկայացնում:

Նշենք, որ մեր հրատարակչությունները թուլացրել են իրենց պահանջկոտությունը հեղինակների նկատմամբ, որի հետևանքով երբեմն լույս են տեսնում գործեր, որոնք պարունակում են սոցիալիստական ռեալիզմին խորթ տարրեր: Գրականագիտության, պատմագրության և հայագիտության առանձին գործերում երբեմն անտեսվում են գրականության պարտիականության լենինյան սկզբունքները:

Բանգյուղթղթակիցների վերջին համագումարում սրությամբ դրվեցին մեր թերթերի կուլտուրայի բարձրացման և լեզվի հարցերը: Կրուպսկայայի և Կարպինսկու հիշողություններից տեսնում ենք, թե ինչպես էր Վլադիմիր Իլյիչը խմբագրում թերթը, ինչպես էր նա յուրաքանչյուր հոդվածում, ֆրազում, խոսքում անցկացնում կոմունիստական գաղափարներ, ինչպես էր թերթը դարձնում կոմունիզմի համար պայքարի զենք: Պլեխանովի և մյուսների հետ Լենինը ժամերով քննարկում էր ոչ միայն թեման, այլև յուրաքանչյուր նյութի տեղը: Լենինը շատ էր մտահոգվում լեզվի մաքրության, հստակության, պատկերավորության, ժողովրդայնության համար: Նա մատիտը ձեռքին հաշվում էր, թե ո՞ր շրիֆտով, քանի՞ տառ կտեղավորվի վերնագրում, նա խիստ վրդովվում էր, երբ շռայլվում էր թերթի էջը, աշխատում էր քամել այս կամ այն նյութի ջուրը, կուռ դարձնել այն:

Լենինը թերթի ձևավորումն արվեստ էր համարում, բարձր էր գնահատում գրաշարի, էջկապի, սրբագրիչի աշխատանքը:

Այժմ լայն հնարավորություններ կան բարձր կուլտուրայով թերթ տալու համար: Բայց մենք հաճախ վատ ենք օգտագործում այդ հնարավորությունները: Դրա համար էլ թերթերի, ամսագրերի շատ համարներ տխուր տպավորություն են թողնում, ձևավորված են անշնորհք, ամենուրեք տիրապետում է շաբլոնը: Մի շարք շրջանային թերթեր լի են լեզվական ու ոճական

digitised by A.R.A.R.@

թերություններով։ Կուլտուրական թերթը չի կարող ետ մնալ կյանքից։ Նա ոչ միայն լավ արտաքին պետք է ունենա, գրվի գրագետ լեզվով, այլև լինի նպատակասլաց և ճշմարտացի։

Ի՞նչ խոսք, որ թերթի կուլտուրան բարձրացնողները ժուռնալիստներն ու թղթակիցներն են, իսկ նրանք դեռևս քիչ են մտածում իրենց շնորհակալ գործում կատարելագործվելու մասին։

Մեր մամուլի ուժը պարտիական ղեկավարության մեջ է։ Այս հանրահայտ ճշմարտության դեմ ոչ ոք չի վիճում։ Սովետական մամուլի երկարամյա փորձը ցույց է տվել, որ երբ պարտիական կազմակերպությունները լավ են ղեկավարում իրենց տպագիր օրգանը, նա զորեղ ուժ է դառնում մասսաների կոմունիստական դաստիարակության գործում։ Քսաներորդ համագումարից հետո պարտիայի քաղաքային և շրջանային կոմիտեները զգալիորեն բարելավել են ղեկավարությունը մամուլի նկատմամբ։ Նրանք իրենց բյուրոներում ավելի հաճախակի են քննում թերթին և ստորին մամուլին վերաբերող հարցերը։ Սակայն մենք չենք կարող ասել, թե ամեն ինչ լավ է, սխալներ ու թերություններ չկան։ Ավելին։ Մի քանի շրջկոմներ դեռևս թերթի ղեկավարման գործը թողել են երեսի վրա։

Պարտիայի առանձին շրջկոմներ քիչ են ուշադրություն դարձնում իրենց տպագիր օրգանների աշխատանքի բարելավման վրա։ Այսպես, Վեդու շրջանային «Կոմունիզմի ուղիով» թերթը դժգույն է ոչ միայն իր արտաքին ձևավորմամբ, այլև ներքին բովանդակությամբ։ Նյութերը անմշակ են, միակերպ, կան թափթփվածություն, տպագիր խոսքի նկատմամբ անպատասխանատվության երևույթներ։ Նյութերի մի զգալի մասը հաշվետվությունների, զեկուցագրերի բնույթ ունեն, թույլ է քննադատական խոսքը թերթի էջերում։ Այդ վերաբերում է հավասարապես նաև Մեղրու շրջանային թերթին։

Կարելի է նկատել այսպիսի փաստ, երբ թերթերի սուղ էջերը լցվում են պաշտոնական, երկրորդական նյութերով՝ ի հաշիվ տեղական կյանքի կարևոր, ակտուալ հարցերի։ Ղափանի «Պղնձի համար» թերթում շատ են ընդհանուր բնույթ կրող, մակերեսային հոդվածները, ինչպես նաև տեղական կյանքին չվերաբերող բազմաթիվ նյութեր։

Շրջկոմը ղեկավարում, ուղղություն է տալիս թերթին։ Նա պետք է մտահոգվի, որ թերթը կանգնած լինի իր կոչման բարձրության վրա, խոր, բազմակողմանի լուսաբանի շրջանի կյանքը, օգնի սկզբնական պարտկազմակերպություններին, կոլտնտեսություններին՝ հաջողությամբ կատարելու իրենց առաջադրանքները։

Ներկայումս, երբ պարտիան կազմակերպում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի նոր, հզոր վերելք, մեծ ու պատասխանատու պարտականություններ են դրվում մամուլի աշխատողների, բանգյուղթղթակիցների բանակի վրա։ Շարունակելով Սովետական Միության Կոմունիստական պարտիայի քսաներորդ համագումարի որոշումների պրոպագանդան՝ նա պետք է իր սուր գրիչն ու կազմակերպական ամբողջ կարողությունն ի սպաս դնի նախ և առաջ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի պլանների կատարմանը, քաղաքի և գյուղի առաջավոր մարդկանց լավագույն փորձի մասսայականացմանն ու արմատավորմանը։

Ելնելով լենինյան դրույթներից այժմ առաջ են քաշվում տնտեսության ղեկավարման և առաջին հերթին արդյունաբերության և շինարարության ղե-



կավարման կատարելագործման հարցերը։ Ընդլայնվում են միութենական ռեսպուբլիկաների իրավունքները, բարձրացվում է տեղական Սովետների դերը տնտեսական և կուլտուրական շինարարության հարցերի վճռման մեջ, էլ ավելի է ծաղկում ու զարգանում սովետական դեմոկրատիզմը։ Այս և այլ հարցեր մամուլի և ռադիոյի աշխատողներից պահանջում են ավելի բազմազան, ավելի գունեղ ու հետաքրքրական ձևով լուսաբանել արդյունաբերության և շինարարության հարցերը։

Ամենուրեք հանդես գալով որպես սկզբունքային քննադատության ծավալման բանիմաց նախահարձակներ՝ բանգյուղթղթակիցները և մամուլի աշխատողները կոչված են իրենց անաչառ գրչով մեր մամուլում վեր հանելու ոչ միայն նվաճումները, այլև մեր կյանքի ստվերոտ կողմերը, թերությունները։

Մեր ժողովրդի տնտեսական ու կուլտուրական վերելքի գործում խոշոր դեր են խաղում գործարանային բազմատիրաժ լրագրերն ու ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, ՄՏ կայանների, սովետական տնտեսությունների ու հիմնարկությունների պատի թերթերը։ Մեր մամուլի այս կարևոր օղակն այն անսպառ աղբյուրն է, որտեղից առաջ են գալիս և աճում բանգյուղթղթակիցները։ Ժողովրդի ծոցից դուրս եկած հարյուրավոր գրողներ իրենց գրական կարյերան սկսել են ստորին մամուլից։ Այս առումով պետք է նշել, որ ամենուրեք չէ, որ պարտիական կոմիտեները սիստեմատիկ զբաղվում են բանգյուղթղթակիցների աճման ու դաստիարակման հարցերով։ Մինչդեռ սովետական մամուլի կադրերը պետք է այսուհետև նշանակալից չափով համալրվեն ստորին մամուլից եկող թղթակիցներով։

Անհրաժեշտ է, որպեսզի շրջանային, ինչպես նաև ռեսպուբլիկական թերթերն ու ամսագրերը սիստեմատիկ և ամենօրյա օգնություն ցույց տան ստորին մամուլին։ Այսպես, օրինակ, որքան լավ կլիներ, եթե «Սովետական մանկավարժ» ամսագիրը պարբերաբար ստորին մամուլի տեսությունների միջոցով հրապարակ բերեր հարյուրավոր դպրոցների պատի թերթերի լավագույն օրինակները։ Ի՞նչու «Հայաստանի կոլտնտեսական» ամսագիրը բնավ չի անդրադառնում այս կամ այն կոլտնտեսության, ՄՏ կայանի, սովետական տնտեսության պատի թերթի աշխատանքներին։ Չէ՞ որ սոցիալիստական գյուղատնտեսության տասնյակ հազարավոր աշխատողներն ամենից շատ գրում են ստորին մամուլում։

Մեր երկիրը նախապատրաստվում է նշելու Մեծ Հոկտեմբերի 40-ամյակը քաղաքական և արտադրական վերելքի նոր պայմաններում։ Թերթերի և ռադիոյի խնդիրն է՝ սիստեմատիկաբար պրոպագանդիստական նյութեր տպագրել և հաղորդել համաժողովրդական մեծ տոնի մասին, ցույց տալ Կոմունիստական պարտիայի կազմակերպող և ղեկավարող դերը մեր հասարակության կյանքում, կոնկրետ օրինակներով ցույց տալ պարտիայի լենինյան ազգային քաղաքականության մեծագույն հաղթանակը, ժողովուրդների մեծ ու անխախտ բարեկամությունը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 40-ամյակի պատվին ծավալվող մրցության լուսաբանումը մամուլի էջերում և ռադիոհաղորդումներում պետք է նպաստի տնտեսական շինարարության 1957 թվականի խնդիրները հաջողությամբ լուծելուն։

Մեր մամուլի կենսական խնդիրն է սիստեմատիկ պայքար մղել իդեոլոգիական բնագավառում երևան եկող հակամարքսիստական բոլոր կարգի տրամադրությունների դեմ։ Այն կոչված է պայքարելու մեր նվաճումների թերա-

digitised by A.R.A.R.@

*գնահատման և անտեսման փորձերի դեմ, ավելի լայն չափով ծավալելու մեր թերությունների քննադատությունը, օգնելու մարդկանց՝ լիովին հաղթահարելու անիծյալ կապիտալիզմի մնացուկները նրանց գիտակցության մեջ։*

*Շարունակելով աշխատանքը հայ ժողովրդի անցյալի կուլտուրական գանձերի գնահատման ուղղությամբ՝ պետք է անհաշտ կռիվ մղել ազգայնական գրքերից արվող այն փորձերի դեմ, որոնք «ազգային կուլտուրայի» հարցերին մոտենում են ո՛չ լենինյան, ո՛չ դասակարգային դիրքերից։*

*Իդեոլոգիական ֆրոնտի աշխատողների կայուն մեկնակետը պետք է լինի լենինյան այն դրույթը, որ «... մենք յուրաքանչյուր ազգային կուլտուրայից վերցնում ենք միայն նրա դեմոկրատական և նրա սոցիալիստական տարրերը, վերցնում ենք դրանք միայն և անպայման իբրև հակակշիռ յուրաքանչյուր ազգի բուրժուական կուլտուրայի, բուրժուական նացիոնալիզմի» (հատոր 20, էջ 10)։*

*Լենինիզմի վեհ գաղափարներով զինված, պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, բանգյուղթղթակիցները և մամուլի աշխատողները այսուհետև պետք է ավելի խորը թափանցեն մեր բազմաբովանդակ կյանքի մեջ և պայքարեն հաջողությամբ լուծելու Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության կողմից մեր ռեսպուբլիկայի առջև դրված բոլոր խնդիրները։*

---

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ

## Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ

*Սովետական մարդիկ հսկայական հետաքրքրությամբ ընդունեցին ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը՝ «Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին» ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման թեզիսները համաժողովրդական քննարկման դնելու վերաբերյալ։*

*Մեր պետության դեմոկրատական սկզբունքներին միանգամայն համապատասխան՝ ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը աշխատավորության ամենալայն մասսաներին կոչ արեցին ակտիվորեն մասնակցել այդ թեզիսների քննարկմանը և միջոցառումներ ու առաջարկություններ մշակել արդյունաբերության ու շինարարության կառավարումը վերակառուցելու ուղղությամբ, որոնց իրականացումը նոր հեռանկարներ և անսահման ասպարեզ կբացի մեր սոցիալիստական Հայրենիքի համակողմանի զարգացման համար։*

*Ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման թեզիսներում ընդհանրացված է ՍՍՌՄ տնտեսական զարգացման, սոցիալիզմի կառուցման մեծահարուստ փորձը, տրված է ժողովրդական տնտեսության ղեկավարման կազմակերպական ձևերի ու մեթոդների խոր վերլուծությունը, նշված են արդյունաբերության և շինարարության ղեկավարման մակարդակի հետագա բարձրացման ուղիները։*

*Ելնելով ՍՄԿՊ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումից՝ մեր պարտիայի Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը արդյունաբերության և շինարարության կառավարումն է՛լ ավելի կատարելագործելու հարցը մտցնում են ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջիկա սեսիան։*

*Այդ պատմական որոշումը՝ տնտեսության ղեկավարման մեջ դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի ստեղծագործական զարգացումն է ժամանակակից պայմաններում։ Դեմոկրատական ցենտրալիզմը տնտեսավարության սոցիալիստական սկզբունքների հիմքն է, նրա մեջ զուգակցվում են անխզելիորեն իրար հետ կապված երկու հիմնական գծեր՝ էկոնոմիկայի պլանային, կենտրոնացված ղեկավարումը և ժողովրդական լայն նախաձեռնության վրա հենվող սոցիալիստական դեմոկրատիզմը։*

*ՍՄԿՊ XX համագումարն ընդգծեց միութենական ռեսպուբլիկաների, տեղական պարտիական, սովետական ու տնտեսական օրգանների իրավունքների է՛լ ավելի ընդլայնման անհրաժեշտությունը, որը հնարավորություն կտա ավելի հետևողականորեն իրականացնելու լենինյան ազգային քաղաքականությունը տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառում, ավելի բազմակողմանիորեն հաշվի առնելու յուրաքանչյուր ռեսպուբլիկայի ազգային*

digitised by A.R.A.R.@

առանձնահատկություններն ու տեղական ռեսուրսները։ Դա կնպաստի միութենական ռեսպուբլիկաների էկոնոմիկայի է՛լ ավելի զարգացմանը և Սովետական Միության ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդմանը։

Սովետական իշխանության տարիներին տեղական, ռեսպուբլիկական օրգանների և ձեռնարկությունների իրավունքների ընդլայնման համար հաստատուն հիմք է ստեղծվել։ Տեղերում ինդուստրիալ-տեխնիկական հզոր բազայի զարգացման հետ մեկտեղ, աճել են հարյուր հազարավոր փորձված, բարձրորակ մասնագետներ, տնտեսության կազմակերպիչներ, ձեռնարկությունների լավ պատրաստված ղեկավարներ։ Այդ են վկայում 1956 թվականի՝ վեցերորդ հնգամյակի առաջին տարվա պլանի կատարման արդյունքները։ Մեր ռեսպուբլիկայում արդյունաբերության արտադրանքի թողարկման պլանն ամբողջությամբ վերցրած կատարված է 104 տոկոսով, այդ թվում միութենական ենթակայության ձեռնարկություններում՝ 101 տոկոսով, իսկ Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին ենթակա արդյունաբերության մեջ՝ 105 տոկոսով։ Հայկական ՍՍՌ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1955 թվականի համեմատությամբ ավելացավ 10 տոկոսով, ընդ որում ավելի բարձր տեմպերով շարունակում է զարգանալ մեր ծանր ինդուստրիան, մասնավորապես նրա այնպիսի կարևոր ճյուղերը, ինչպիսիք են՝ մեքենաշինությունը, էլեկտրատեխնիկական և քիմիական արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան։ Պլանային սոցիալիստական սիստեմի առավելություններն ավելի լրիվ կդրսևորվեն այն դեպքում, եթե տեղերը իրենց տնտեսական ռեսուրսները մոբիլիզացնելու և օգտագործելու ասպարեզում լայն նախաձեռնություն ունենան։

Դրա օրինակ կարող է ծառայել «Պոլիվինիլացետատ» գործարանը, որը անօգտաբեր ձեռնարկությունների թվից անցել է եկամտաբեր ձեռնարկությունների շարքը։ Այդ անցումը հետևանք է տվյալ ձեռնարկության ամբողջ կոլեկտիվի և ինժեներա-տեխնիկական աշխատողների ստեղծագործական աշխատանքի, ինչպես նաև այն բանի, որ կենսագործելով ՍՄԿՊ Կենտկոմի 1955 թվականի Հուլիսյան պլենումի որոշումը, այդ ձեռնարկությունում մթերային հումքը փոխարինվեց սինթետիկ հումքով, իսկ դա հնարավորություն տվեց կատարելագործելու տեխնոլոգիան և ինտենսիֆիկացնելու արտադրության միջոցները։ Դրա հետևանքով 1954 թվականի համեմատությամբ համախառն արտադրանքը 1956 թվականին ավելացավ 114 տոկոսով։ Եթե 1954 թվականին ձեռնարկությունն ունեցել է 13,6 մլն. ռուբլի վնաս, ապա 1956 թվականին գործարանն արդեն տվեց 2 մլն. 787 հազ. ռուբլի շահույթ։ Սինթետիկ հումքի կիրառումը հնարավորություն տվեց ամեն տարի մեր ժողովրդական տնտեսության համար ազատել մի քանի միլիոն փութ սննդամթերք։ Չնայած այդ միջոցառումների ակնհայտ առավելություններին՝ դրանց արմատավորումն արտադրության մեջ երկար ժամանակ կասեցվում էր գերատեսչական պատնեշների պատճառով, որոնց մասին մենք կխոսենք ստորև։

Ներկայումս առանձնապես կարևոր է, որ արտադրության աճման և շինարարության բարձր տեմպերը ձեռք բերվեն ոչ միայն կապիտալ ներդրումների հաշվին, այլ գերազանցապես բոլոր ռեսուրսների ռացիոնալ և տնտեսապես էֆեկտիվ օգտագործելու միջոցով։ Իսկ այդ անհնարին է առանց տեղերի նախաձեռնության, առանց ձեռնարկությունների կոլեկտիվների ստեղծագործական ակտիվության բարձրացման։



Երկրի արտադրողական ուժերի աճը տանում է դեպի արտադրության ավելի ու ավելի խոր մասնագիտացում։ Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացումը ուղեկցվում է արդյունաբերության ու տեխնիկայի նորանոր ճյուղերի ստեղծումով։ Դրան առնչվում են այն նոր գիտա-տեխնիկական նվաճումները, որոնք զգալի փոփոխություն են առաջ բերում արդյունաբերական արտադրության կազմակերպման գործում։

ՍՄԿՊ Կենտկոմի Փետրվարյան պլենումը ցույց տվեց, որ արդյունաբերության ու շինարարության կառավարման գոյություն ունեցող ստրուկտուրան չի համապատասխանում մեր աճած պահանջներին, նա սահմանափակում է տնտեսության սոցիալիստական սիստեմի ընձեռնած ռեզերվների լրիվ օգտագործման հնարավորությունները։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը նշեց տնտեսության կառավարման վերակառուցման այնպիսի ուղիներ, որոնք լիովին հնարավորություն են տալիս տնտեսական առանձին շրջանների կոնկրետ և օպերատիվ ղեկավարությունը զուգորդել կենտրոնացած պլանային սկզբունքի պահպանման հետ ամբողջ երկրի մասշտաբով։

Տերիտորիալ առումով, այսինքն՝ ըստ տնտեսական շրջանների կատարվող պլանավորումը պարտիան սկսել էր մշակել դեռ 1920 թվականից, մեր ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հեռանկարային պլանի՝ ԳՈԷԼՌՈ-ի պլանի մշակման ժամանակվանից։ Այդ պլանում հիմնավորված էր երկիրը տնտեսական շրջանների բաժանելու անհրաժեշտությունը և որոշված էին այդ շրջանների մասնագիտացման ու կոմպլեքսային զարգացման խնդիրները։ ԳՈԷԼՌՈ-ի պլանի համաձայն ամբողջ երկիրը բաժանվել էր 8 տնտեսական շրջանների։

Տնտեսական շրջանացումը իր հետագա զարգացումը գտավ հնգամյա պլաններում։ Առաջին հնգամյա պլանը մշակվել էր 24 շրջանի համար և նախատեսում էր դրանց մասնագիտացման խորացում, աշխատանքի ռացիոնալ բաշխում նրանց միջև։ Ըստ շրջանների պլանը կազմվել էր Կոմունիստական պարտիայի XV համագումարի այն դիրեկտիվներին համապատասխան, որոնք վերաբերում էին ազգային հետամնաց շրջանների տնտեսության վճռական վերելքին, նրանց էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման ավելի արագ տեմպերին։ Երկրի տնտեսական շրջանացման բարելավման խնդրի վրա շատ ավելի մեծ ուշադրություն դարձրեց պարտիայի XVI համագումարը։ «Երկրի տնտեսական շրջանացման լրիվ ավարտումը,— ասված է համագումարի բանաձևերում,— նշանակալի չափով արագացնում է նախկինում հետամնաց շրջանների, ծայրամասերի և ազգային ռեսպուբլիկաների ինդուստրացումը, այնտեղ ստեղծում է արդյունաբերական ու պրոլետարական նոր կենտրոններ և հեշտացնում է արդյունաբերության ու գյուղատնտեսության ավելի ճիշտ ու նպատակահարմար տեղաբաշխումը ՍՍՌՄ ամբողջ տերիտորիայում»։

Երկրորդ հնգամյա պլանը նախատեսում էր արտադրողական ուժերը տեղաբաշխել գլխավորապես երկրի Արևելքում։

Երրորդ հնգամյա պլանը կազմվել էր ՌՍՖՍՌ 9 հիմնական տնտեսական շրջանների և 10 միութենական ռեսպուբլիկաների համար։ Երրորդ հնգամյա պլանի վերաբերյալ Կոմունիստական պարտիայի XVIII համագումարի որոշման մեջ դրված էր տնտեսական հիմնական շրջանների տնտեսության կոմպլեքսային զարգացման խնդիրը։ Համագումարը ցուցումներ տվեց կազմակեր-

digitised by A.R.A.R.@

պել վառելանյութի, ցեմենտի, ապակու, ալեբաստրի, քիմիական պատրաստանյութերի, թեթև և սննդի արդյունաբերության մասսայական ապրանքների արտադրությունը բոլոր հիմնական տնտեսական շրջաններում այնպիսի չափերով, որպիսիք լիովին բավարարեն նրանց պահանջմունքները: Իսկ ինչ վերաբերում է պարենային ապրանքներին, հագուստեղենին ու գալանտերիային, կահույքին և տեղական շինանյութերին, ապա դրանք, ինչպես նշում էր համագումարը, պետք է բավարար քանակությամբ արտադրվեն յուրաքանչյուր ռեսպուբլիկայում:

Պատերազմի ավարտումից հետո ընդունված չորրորդ հնգամյա պլանում խնդիր էր դրված՝ վերականգնել երկրի տուժած շրջանները և ապահովել ՍՍՌՄ ամբողջ ժողովրդական տնտեսության հետագա զարգացումը:

Հետևողականորեն կենսագործելով արտադրողական ուժերի տեղաբաշխման սոցիալիստական սկզբունքները՝ Կոմունիստական պարտիան, սովետական ժողովուրդը մեծ հաջողությունների հասան ժողովրդական տնտեսության նոր հզոր վերելքի, ծանր ինդուստրիայի հետագա զարգացման և նրա բազայի վրա գյուղատնտեսության, թեթև ու սննդի արդյունաբերության նոր վերելքի կազմակերպման գործում: Արդյունաբերական արտադրության մակարդակը մոտավորապես 70 տոկոսով բարձրացնելու վերաբերյալ հինգերորդ հնգամյա պլանի առաջադրանքները կատարվեցին ժամկետից շուտ՝ չորս տարում և չորս ամսում, իսկ արդյունաբերական արտադրության ծավալը 1950 թվականի համեմատությամբ 1955 թվականին ավելացավ 85 տոկոսով: 1951—1955 թվականներին արդյունաբերության մեջ կապիտալ ներդրումների ծավալը գրեթե 2 անգամ գերազանցեց 1946—1950 թվականների կապիտալ ներդրումների ծավալին:

Վեցերորդ հնգամյակի առաջին տարում սոցիալիստական արդյունաբերության ձեռք բերած հաջողությունը մի նոր քայլ է կոմունիզմի նյութականտեխնիկական բազայի ստեղծման ճանապարհին: Սովետական երկիրն է՛լ ավելի ուժեղացավ, աճեց նրա տնտեսական ու պաշտպանական հզորությունը, բարձրացավ ժողովրդի նյութական բարեկեցությունը:

Ստեղծագործաբար զարգացնելով սոցիալիստական տնտեսավարման լենինյան սկզբունքները՝ մեր պարտիան վերջին տարիների ընթացքում մի շարք միջոցառումներ կիրառեց ժողովրդական տնտեսության կառավարումը բարելավելու ուղղությամբ: Ընդ որում պարտիան ելնում էր և ելնում է այն հիմնական դրույթից, որ տնտեսական շինարարության կառավարման կազմակերպումը պետք է համապատասխանի արտադրության կոնկրետ պայմաններին, նրա զարգացման յուրաքանչյուր տվյալ էտապում արտադրողական ուժերի անշեղ աճման պահանջներին:

Հայտնի է, որ դեռ սովետական իշխանության առաջին տարիներին ստեղծվել էին տնտեսական կառավարման այնպիսի օրգաններ, ինչպիսիք էին Ժողովրդական Տնտեսության Գերագույն Խորհուրդը և տեղական ժողտնտխորհները, Պետպլանը և տեղական պլանային օրգանները: Զարգացման նոր էտապում, երբ պարտիան երկրի սոցիալիստական ինդուստրացման կուրսն էր վերցրել, ժողովրդական տնտեսության կարևորագույն ճյուղերի գծով ստեղծվեցին մասնագիտացված ժողկոմատներ ու գլխավոր վարչություններ, իսկ հետո էլ՝ մինիստրություններ ու գերատեսչություններ: Այդ կազմակերպական ձևերի շնորհիվ պարտիան և պետությունը կարողացան իրենց ջանքերը կենտ-



րոնացնել ծանր ինդուստրիայի վճռական ճյուղերի զարգացման և դրանց համար որակյալ կադրեր դաստիարակելու վրա և այդ ասպարեզում վիթխարի հաջողությունների հասան:

Տնտեսական շինարարության, մեր արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման, սոցիալիստական պետության հզորության ամրապնդման և ժողովրդի բարեկեցության անշեղ վերելքի, արտադրության կազմակերպման ու ժողովրդական տնտեսության կառավարման ձևերի կատարելագործման խնդիրները, ինչպես նշված է ՍՄԿՊ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշման մեջ, միշտ էլ գտնվել են և գտնվում են Կոմունիստական պարտիայի ուշադրության կենտրոնում: Դեռևս 1921 թվականին, երբ մեր ժողովուրդը ձեռնամուխ էր լինում խաղաղ շինարարության, Վ. Ի. Լենինն ասում էր, որ մենք միջազգային դեպքերի զարգացման վրա ներգործում ենք գլխավորապես մեր տնտեսական քաղաքականությամբ: «Պայքարը,— շեշտել է Վ. Ի. Լենինը,— այդ ասպարեզն է փոխադրվել համաշխարհային մասշտաբով: Կլուծենք այդ խնդիրը և այն ժամանակ մենք կշահենք միջազգային մասշտաբով հաստատապես և վերջնականապես: Այդ պատճառով տնտեսական շինարարության հարցերը մեզ համար միանգամայն բացառիկ նշանակություն են ստանում»:

Կյանքը դնում է տնտեսական ղեկավարման կազմակերպական ձևերի հետագա կատարելագործման նորանոր հասունացած հարցեր:

ՍՄԿՊ Կենտկոմի Փետրվարյան պլենումի հսկայական նշանակությունն այն է, որ տնտեսական շինարարության կուտակած հարուստ փորձի խոր վերլուծությամբ նա սահմանեց արդյունաբերության ու շինարարության բոլոր օղակների կառավարման կազմակերպական ձևերի է՛լ ավելի կատարելագործման նոր ուղղությունը:

Այդ պատճառով էլ ՍՄԿՊ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը և ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման թեզիսներն ընդունվեցին հսկայական հետաքրքրությամբ և արժանացան ընդհանուր հավանության: Քննելով արդյունաբերության ու շինարարության կառավարման կատարելագործման հարցերը՝ ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների և շինարարության կոլեկտիվները բացահայտում են մեզ մոտ եղած թերությունները և արժեքավոր առաջարկություններ են անում դրանց վերացման համար:

Արտադրողական ուժերի զարգացման ճանապարհին լուրջ արգելքներից մեկը գերատեսչությունն է արդյունաբերության ու շինարարության ղեկավարման գործում: Դա խախտում է տնտեսական միևնույն շրջանում տեղավորված արդյունաբերության տարբեր ճյուղերին պատկանող ձեռնարկությունների նորմալ տերիտորիալ կապը, հաճախ խանգարում է արտադրության ռեզերվների օգտագործմանը, նրա մասնագիտացմանը և կոոպերացմանը:

Հետպատերազմյան հնգամյակների տարիներին մեր ռեսպուբլիկայում մեծ չափով զարգացավ մեքենաշինությունը: Մեքենաշինության հիմքը ձուլման պրոցեսներն են: Մեքենաների մասերի 60—80 տոկոսը (կշռային տեսակետից) արտադրվում է ձուլման մեթոդով: Սակայն ռեսպուբլիկայի մետաղամշակման 20 ձեռնարկությունները ենթարկվում են 12 տարբեր մինիստրությունների: Դրա հետևանքով էլ տեխնոլոգիական ընդհանուր խնդիրները տարբեր ձեռնարկություններում տեխնիկական տարբեր մակարդակով և տարբեր ինտենսիվությամբ են լուծվում, իսկ արտադրության կոոպերացման ու մաս-



digitised by A.R.A.R.@

նագիտացման հարցը գերատեսչական դիմադրության է հանդիպում։ Գերատեսչական արգելքների պատճառով մինչև այժմ էլ չի լուծված ռեսպուբլիկայի մեքենաշինական և մետաղամշակման ձեռնարկությունների համար ձուլման կենտրոնական գործարանի (Ցենտրոլիտ) շինարարության հարցը։ Մինչդեռ ռեսպուբլիկայի շուրջ քսան ձեռնարկություն ունեն ձուլման արտադրություն, ընդ որում դրանց մեծամասնությունը բավականաչափ մեքենայացված չէ, տալիս է ցածր որակի և բարձր ինքնարժեք ունեցող ձուլվածք։ Ռեսպուբլիկայի գործարաններում չի կիրառվում ոչ կոկիլային ձուլումը, ոչ էլ կենտրոնախույս կամ ճնշման տակ կատարվող ձուլումը, բացառություն է կազմում Հայէլեկտրագործարանը։ Ձուլվածքի մեկ տոննայի արժեքը տարբեր ձեռնարկություններում տատանվում է 1200 ռուբլուց մինչև 2500 ռուբլի։ Հայէլեկտրագործարանը կարող է ավելի էժան գնով բավարարել Երևանի բոլոր ձեռնարկությունների ձուլման պահանջը։ Սակայն գերատեսչական պատնեշները խանգարում են նույնիսկ այդպիսի ժամանակավոր միջոցառման իրականացմանը։ Միացյալ մասնագիտացված «Ցենտրոլիտ» ստեղծելու դեպքում հնարավոր կլինի լիովին մեքենայացնել աշխատատար պրոցեսները, իջեցնել ինքնարժեքը, բարձրացնել ձուլվածքի որակը և ձուլվածքով ապահովել ռեսպուբլիկայի բոլոր ձեռնարկությունները։

Քիչ չեն այն փաստերը, երբ գերատեսչական անձկությունը և սահմանափակությունը խանգարում են տնտեսական հարցերը համապետական դիրքերից լուծելուն, իսկ դա էլ խանգարում է պատրաստի արտադրանքը կամ հումքը տեղում օգտագործելուն, ինչպես պահանջում է գործի շահը։ Այսպես, օրինակ, Ալավերդու պղնձաձուլական և քիմիական գործարանները պատկանում են տարբեր մինիստրությունների։ Այդ գործարանների ղեկավարությունը, ինչպես նաև մինիստրությունները երկար ժամանակ է, որ չեն կարողանում մի ընդհանուր լեզու գտնել հումքի՝ պղնձի կոնցենտրատի ռացիոնալ օգտագործման հարցում։ Տեխնոլոգիայի համաձայն, կոնցենտրատը սկզբում պետք է վերամշակվի քիմիական գործարանում ծծումբ ստանալու նպատակով՝ ծծմբաթթվի արտադրության համար, բայց կոնցենտրատը ստացվում է Գունավոր մետալուրգիայի մինիստրության ձեռնարկություններից, որին և պատկանում է Ալավերդու պղնձաձուլական գործարանը։ Նեղ-գերատեսչական մոտեցման հետևանքով պղնձաձուլական գործարանը հաճախ կոնցենտրատի մի մասը օգտագործում է ձուլման համար, շրջանցելով քիմիական գործարանը։ Դրա հետևանքով էլ հօդս է ցնդում մեծ քանակությամբ քիմիական արժեքավոր նյութը, իսկ քիմիական գործարանն էլ չի կատարում պետական պլանը։

Գերատեսչական մոտեցման հետևանքով կենդանի գործը փոխարինվում է գրասենյակային բյուրոկրատական գրագրությամբ, իսկ դա կասեցնում է հարցերի օպերատիվ լուծումը։ Արդեն մի քանի տարի է, ինչ գրագրություն է տեղի ունենում Քիմիական արդյունաբերության մինիստրության և Գունավոր մետալուրգիայի մինիստրության միջև Ալավերդու պղնձաձուլական գործարանից հեռացող գազերի լրիվ օգտագործման համար համատեղ միջոցառումներ ընդունելու հարցի շուրջը։ Սակայն այդ հարցի լուծումը ձգձգվում է։

Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Քիմիայի ինստիտուտը մշակել է ալյումինի արտադրության համար կավահողի ստացման նոր մեթոդ նեֆելինային սիենիտներից, որոնց պաշարները Ախտայի շրջանում անսպառ են։ Կավահողի հետ մեկտեղ ստացվում է պորտլանդ-ցեմենտ, նատրիումի



մետասիլիկատ, որը կարող է կիրառվել գործվածքների հարդարման համար, ինչպես և որպես լվացող միջոց, կալցիումի մետասիլիկատ, կալցիումային սոդա, պոտաշ, բյուրեղապակի, կերամիկա և այլն ստանալու համար։

Գիտական կազմակերպությունները և մինիստրությունները հավանություն են տվել այդ մեթոդին, բոլորն էլ ընդունում են այդպիսի արտադրություն կազմակերպելու նպատակահարմարությունը։ Բայց քանի որ կոմբինատի արտադրանքն իր պրոֆիլով պատկանում է երեք մինիստրությունների՝ Գունավոր մետալուրգիայի, Քիմիական արդյունաբերության և Շինանյութերի արդյունաբերության մինիստրություններին, ապա դրանցից ոչ մեկն էլ չի կամենում պատասխանատվությունը վերցնել իր վրա։ Այսպիսի գերատեսչական տարընթացության պատճառով էլ այդ հարցը մինչև այժմ վերջնական, պրակտիկ լուծում չի ստացել։

Հարցերի լուծմանը գերատեսչական մոտեցում ցուցաբերելը լրջորեն արգելակում է նաև տեխնիկական պրոգրեսին։

Արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցումը գիտության աշխատողներին հնարավորություն կտա ավելի ակտիվորեն մասնակցելու տեխնիկական պրոգրեսի հարցերի գործնական լուծմանը, ամրապնդելու իրենց կապը արտադրության հետ, մշակվող գիտական պրոբլեմները էլ ավելի մոտեցնելու ժողովրդական տնտեսության կարիքներին։

Ներկայումս տեխնիկայի զարգացման հիմնական ուղղություններն են արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը, արտադրական պրոցեսների էլեկտրիֆիկացումը, քիմիայի լայն կիրառումը արտադրության մեջ, ատոմային էներգիայի օգտագործումը խաղաղ նպատակներով։ Այդ ուղղությունները արտացոլում են տեխնիկայի զարգացման նորագույն տենդենցները և ապահովում են արտադրության ինտենսիֆիկացումը։

Տեխնիկական պրոգրեսն արտահայտվում է արտադրության մեջ նորագույն, բարձր արտադրողականություն ունեցող մեքենաների ու սարքավորումների արմատավորումով։ Դրա հետ մեկտեղ տեխնիկական պրոգրեսն արտահայտվում է արդեն գործող սարքավորումների կատարելագործումով, պրոգրեսիվ տեխնոլոգիայի կիրառումով։

Այդ խնդիրները լուծելուն կոչված է նաև մեր ռեսպուբլիկայում ստեղծված գիտական հիմնարկների և բուհերի գիտական գործունեության կոորդինացման խորհուրդը, Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ Վ. Համբարձումյանի նախագահությամբ։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը և ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման թեզիսներում առաջ քաշված հարցերը լայն հնարավորություններ են բացում սոցիալիստական արտադրության վերելքի համար։ Որքան որ աճում է տեղերի ու ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնությունը, դրանց կենտրոնացված ղեկավարությունը պետք է իրականացվի այնպիսի տնտեսական լծակների ավելի ընդարձակ օգտագործման միջոցով, ինչպիսիք են նյութական ու ֆինանսական միջոցների համապատասխան բաշխումը, գինը, ինքնարժեքը, շահույթը, աշխատանքի վարձատրման սիստեմը և այլ հարցեր։

ՍՄԿԿ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումները բարձր պատասխանատվություն են դնում տնտեսական ղեկավարների վրա։ Ձեռնարկությունների ղեկավարների կազմակերպչական գործունեությունը, ծագող հարցերը ճիշտ լուծելու, դժվարություններն արագորեն հաղթահարելու ու թերություն-

digitised by A.R.A.R.@

ները վերացնելու, արտադրության մեջ նոր ու պրոգրեսիվ տեխնիկան օպերատիվ արմատավորելու նրանց հմտությունը մեծապես կնպաստի սովետական միլիոնավոր մարդկանց գործադրած ջանքերի հաջողությանը, որոնք պարտիայի կոչով ձեռնամուխ են եղել սոցիալիստական էկոնոմիկայի վերելքի պատմական նոր խնդիրների կենսագործմանը:

Սոցիալիստական արտադրության մասշտաբներն անընդհատ աճում են, կյանքը մեր ձեռնարկությունների առջև միշտ էլ դնում է տեխնիկական ու կազմակերպական նոր հարցեր: Ուստի, տնտեսական ղեկավարությունը պետք է համապատասխանի ժամանակակից գիտության, արտադրության կազմակերպման տեխնիկայի մակարդակին: Իսկ դրա համար տնտեսական ղեկավարները պետք է մշտապես հարստացնեն իրենց գիտելիքներն ու փորձը: Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ չպետք է բավարարվել նախկին փորձով ձեռք բերած հմտությամբ, այլ պետք է ավելի հեռուն գնալ, ավելի մեծ բանի ձգտել, ավելի հեշտ խնդիրներից անցնել ավելի դժվարներին: Առանց դրան ընդհանրապես անհնարին է որևէ պրոգրես, անհնարին է նաև սոցիալիստական շինարարության պրոգրեսը:

Արդյունաբերության և շինարարության կառավարման նախատեսվող վերակառուցումն ըստ տնտեսական շրջանների, անհամեմատ ավելի է բարձրացնում պարտիական կազմակերպությունների պատասխանատվությունը տնտեսության զարգացման ասպարեզում, պահանջում է՝ է՛լ ավելի խորամուխ լինել արտադրության տեխնիկայի և էկոնոմիկայի մեջ, ուժեղացնել մասսաների մեջ տարվող քաղաքական աշխատանքը, բանվորներին, ծառայողներին և ինժեներա-տեխնիկական աշխատողներին ավելի լայնորեն ներգրավել ձեռնարկության կյանքի բոլոր հարցերը լուծելու գործում:

Արդյունաբերական ձեռնարկությունների և շինարարական օբյեկտների սկզբնական պարտիական կազմակերպությունները այժմ պետք է ոչ միայն վերլուծեն, ուսումնասիրեն, քննեն ձեռնարկությունների արտադրական գործունեության առանձին հարցերը, այլև նրանք պետք է վերահսկողություն իրականացնեն, օպերատիվ կերպով զբաղվեն արտադրության կառավարման հարցերով, հետևապես և՝ լիովին պատասխանատու լինեն պետական պլանների կատարման համար: Այդ նշանակալի չափով բարձրացնում է ինչպես արտադրության մեջ եղած պարտիական աշխատողների, այնպես էլ շրջկոմների, քաղկոմների ապարատի դերը: Պարտիական ապարատի աշխատանքի կատարելագործումն այն մեծ խնդիրների լուծման կարևորագույն պայմաններից մեկն է, որ մեր առջև դրել են պարտիայի XX համագումարը և Կենտկոմի Փետրվարյան պլենումը:

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության նոր միջոցառումների նպատակն է ավելի լայն ասպարեզ բացել տնտեսության սոցիալիստական սիստեմի հսկայական ռեզերվների ու առավելությունների ավելի լավ օգտագործման համար, ամեն կերպ զարգացնել աշխատավորների լայն մասսաների ստեղծագործական նախաձեռնությունն ու ակտիվությունը, ապահովել սովետական ժողովրդի բարեկեցության հետագա վերելքը:

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ

## *Ս. ՄՈՎՍԻՍՅԱՆ*

Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը, սոցիալիզմի հաղթանակը ՍՍՌՄ-ում աննախընթաց պայմաններ և լայն հնարավորություններ ստեղծեցին բոլոր միութենական ռեսպուբլիկաների, մեր անծայրածիր Հայրենիքի բոլոր ժողովուրդների, այդ թվում նաև հայ ժողովրդի, Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և կուլտուրայի բարգավաճման համար:

Հաջողությամբ ավարտելով հինգերորդ հնգամյակը, մեր ռեսպուբլիկայի, ինչպես և ամբողջ Սովետական Միության աշխատավորությունը ձեռնամուխ է եղել ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թ. թ. վեցերորդ հնգամյա պլանով նախատեսած հոյակապ խնդիրների իրականացմանը:

Զինված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի պատմական որոշումներով, ռեսպուբլիկայի պարտիական, սովետական ու տնտեսական կազմակերպությունները օրեցօր բարելավում են ժողովրդական տնտեսության և կուլտուրայի ղեկավարումը, բացահայտելով ու վերացնելով այն բոլոր թերությունները, որոնք խանգարում են մեր առաջընթացին:

ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան և Փետրվարյան պլենումների որոշումները մեզ համար նշեցին ավելի լավ տնտեսավարության, ժողովրդական տնտեսության կառավարումն է՛լ ավելի կատարելագործելու ուղիներ, սոցիալիզմի մեծագույն առավելությունների առավել լրիվ օգտագործման, երկրի էկոնոմիկայի նոր, ավելի հզոր վերելքի կազմակերպման, ժողովրդական հարստության բազմապատկման և այդ հիման վրա՝ ժողովրդի բարեկեցության նոր վերելքի ուղիներ:

Սովետական իշխանության տարիներին հայ ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հիրավի հսկայական նվաճումներ ձեռք բերեց էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման բնագավառում, իր երկիրը ցարական Ռուսաստանի տնտեսապես հետամնաց ծայրամասից դարձրեց սոցիալիստական ինդուստրիալ ռեսպուբլիկա, որն ունի նաև զարգացած կոլեկտիվ գյուղատնտեսություն:

Բավական է հիշատակել միայն մի քանի փաստեր: Նախառևոլյուցիոն Հայաստանի ամբողջ արդյունաբերությունը բաղկացած էր Ղափանի, Ալավերդու և Սխիմադանի պղնձահանքերից իրենց պրիմիտիվ պղնձաձուլական վառարաններով, գինու-կոնյակի և պահածոների փոքր գործարաններից, Երևանի երկու փոքր էլեկտրակայաններից, գարեջրի ու օճառի գործարաններից,

digitised by A.R.A.R.@

կաշվի, բամբակի մշակման տնայնագործական ձեռնարկություններից, Երևա-
նում ու Ալեքսանդրոպոլում (Լենինական) եղած երկու մեխանիկական ար-
հեստանոցներից և մի քանի այլ մանր ձեռնարկություններից։

Այսօր Սովետական Հայաստանի արդյունաբերությունը ներառնում է
ավելի քան 650 ձեռնարկություն (չհաշված փոքրերը), որոնք հագեցված են
ժամանակակից տեխնիկայով և թողարկում են ամենաբազմազան արտադրանք։

Արմատապես վերափոխվել է գունավոր մետալուրգիան, եթե առաջներում
նա արտադրում էր միայն չմշակված պղինձ, ապա այժմ այդ ճյուղի ձեռնար-
կությունները էլեկտրոլիզային պղնձի հետ մեկտեղ արտադրում են ալյումին,
մոլիբդենի, կապարի և ցինկի կոնցենտրատներ, ոսկի և արծաթ։

Ստեղծված է հզոր քիմիական արդյունաբերություն, որը տեղական հում-
քի բազայի վրա թողարկում է այնպիսի արժեքավոր նյութեր, ինչպիսին են
կալցիումի կարբիդը և սրա բազայի վրա էլ՝ սինթետիկ կաուչուկը, ռետինա-
տեխնիկական իրեր, զանազան տեսակի պարարտանյութեր և թունաքիմիկատ-
ներ գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների ու հիվանդությունների
դեմ պայքարելու համար, ինչպես նաև զուգընթացաբար կաուստիկ սոդա,
աղաթթու, քլորբենզոլ և այլ նյութեր։

Պղնձարդյունաբերության ավելորդ գազերն ու կիսաֆաբրիկատները օգ-
տագործվում են ծծմբաթթվի և պղնձարջասպի արտադրության համար։

Նախառևոլյուցիոն Հայաստանում խոսք անգամ լինել չէր կարող մեքենա-
շինության մասին։ Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկայում
ստեղծված մեքենաշինական ձեռնարկությունները ժամանակակից տեխնիկայի
մակարդակին լիովին համապատասխան թողարկում են մետաղահատ հաս-
տոցներ, կոմպրեսորներ, գեներատորներ, տրանսֆորմատորներ, շրջիկ էլեկ-
տրակայաններ, էլեկտրական մոտոռներ, կաբել, էլեկտրալամպեր, պահեստի
ավտոմասեր և հեծանիվներ, ժամացույցներ, ճշգրիտ էլեկտրաչափիչ գործիքներ
և շատ այլ մեքենաներ ու գործիքներ։

Արագ տեմպերով ընդարձակվեց և այժմ էլ այդպես շարունակում է ըն-
դարձակվել շինանյութերի արդյունաբերությունը, որպիսին սովետական իշխա-
նության հաստատումից առաջ բաղկացած էր միայն մի քանի պրիմիտիվ կրի
վառարաններից, աղյուսի ձեռնարկություններից ու քարհանքերից։ Այժմ
ժողովրդական տնտեսության այս կարևոր ճյուղը շինարարական քարի, պեմ-
զայի և ավազի արդյունահանման մեքենայացված հանքերի հետ մեկտեղ
միավորում է կրի, ցեմենտի, հրակայուն նյութերի, ապակու, երկաթ-բետոնի
և այլ գործարաններ։

Սովետական Հայաստանի թեթև արդյունաբերությունը, թողարկելով բամ-
բակի, բրդե և մետաքսե գործվածքեղեն, տրիկոտաժ, հագուստեղեն և չուլքի-
գուլպաներ, կոշկեղեն, գորգեր, կահույք, մետաղե և այլ ամանեղեն և ժո-
ղովրդական սպառման բազմաթիվ այլ արդյունաբերական ապրանքներ, ոչ
միայն հիմնականում ապահովում է բնակչության պահանջմունքները, այլև իր
արտադրանքի մի մասը արտահանում է Սովետական Միության մյուս ռես-
պուբլիկաներն ու մարզերը։

Հսկայական հաջողություններ է ձեռք բերել ռեսպուբլիկայի սննդի արդյու-
նաբերությունը. ստեղծված է հացի գործարանների, պանրագործարանների,
մսի կոմբինատների, գինու-կոնյակի և պահածոների գործարանների մի խիտ
ցանց, գործում են այնպիսի խոշոր ձեռնարկություններ, ինչպիսին են Ջեթ-



օճառ կոմբինատը, շաքարի գործարանը, ծխախոտի, մակարոնի, հրուշակե-
ղենի ֆաբրիկաները, գարեջրի-լիմոնադի գործարանները, հանքային ջրերի
ձեռնարկությունները և այլն։

Արագ տեմպերով է աճում էներգետիկ արդյունաբերությունը, որը վճռա-
կան նշանակություն ունի յուրաքանչյուր երկրի էկոնոմիկայի զարգացման
համար։ Ռեսպուբլիկայի էլեկտրակայանները այսօր արտադրում են մի ոչ լրիվ
օրում ավելի շատ էլեկտրաէներգիա, քան ամբողջ 1913 թվականին։ Էլեկտրի-
ֆիկացիայի բնագավառում սովետական իշխանության տարած հսկայական
աշխատանքի հետևանքով Հայաստանը 1955 թվականի տվյալներով բնակչու-
թյան մեկ շնչին հասած էլեկտրաէներգիայի չափով առաջ է անցել այնպիսի
առաջավոր կապիտալիստական երկրներից, ինչպիսին են Ֆրանսիան, Բելգիան,
և մեկ շնչին հաշված արտադրում է 76 տոկոսով ավելի շատ էլեկտրաէներգիա,
քան Իտալիան, 80 տոկոսով ավելի՝ քան Ճապոնիան և 21 անգամ ավելի քան
Թյուրքիան։

Դժվար է թվարկել արդյունաբերության զարգացման բնագավառում ռես-
պուբլիկայի ձեռք բերած բոլոր նվաճումները, բայց բավական պերճախոս է
թեկուզ այն, որ Սովետական Հայաստանի ամբողջ արդյունաբերության հա-
մախառն արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ ավելացել է
45 անգամ։

Արդյունաբերությունը նշանակալի հաջողություններ ձեռք բերեց նաև
անցած հնգամյակում։ Արդյունաբերական արտադրության ծավալը 1955 թվա-
կանին 4,7 անգամ գերազանցեց 1940 թվականի մակարդակը, իսկ 1950 թվա-
կանի համեմատությամբ ավելացավ 90 տոկոսով։ Ընդսմին ավելի արագ
տեմպերով շարունակում է աճել ծանր ինդուստրիան, որի առանձին ճյուղերը
առաջատար դեր են խաղում ռեսպուբլիկայի էկոնոմիկայում։ Այսպես, օրինակ,
անցած հնգամյակում գունավոր մետալուրգիայի և քիմիական արդյունաբե-
րության արտադրանքը ավելացավ մի քանի անգամ, մեքենաշինությանը՝ 3,6
անգամ, էլեկտրաէներգիայինը՝ 2,3 անգամ։

Արդյունաբերության զարգացման բարձր տեմպերը ամբողջապես վերա-
փոխեցին Սովետական Հայաստանը. արդյունաբերության աճման, նոր գոր-
ծարանների ու ֆաբրիկաների կառուցման հետ զուգընթաց զարգանում են
մեր քաղաքներն ու բանավանները, առաջանում են նոր բնակավայրեր։ Ան-
ճանաչելի փոխվել ու բարեկարգվել են Լենինական, Կիրովական, Ալավերդի
և Ղափան քաղաքները։ Սովետական իշխանության տարիներին առաջացան
այնպիսի նոր քաղաքներ ու բանավաններ, ինչպես, օրինակ, Արարատն ու
Թումանյանը, Արթիկն ու Անի-Պեմզան, Քաջարանը, Դաստակերտն ու Լուսա-
վանը իրենց նորակառույց բազմահարկ բնակելի շենքերով ու կոմունալ օբյեկտ-
ներով, իրենց թատրոններով, ակումբներով և կուլտուր-կենցաղային այլ հիմ-
նարկներով։ Տարեց-տարի աճում ու զարգանում, ավելի ու ավելի գեղեցկա-
նում է Հայկական ՍՍՌ մայրաքաղաք Երևանը։

Արդյունաբերության զարգացման, ռեսպուբլիկայի ամբողջ էկոնոմիկայի
վերելքին զուգընթաց աճում ու բազմապատկվում է բանվորների և ինժեներա-
տեխնիկական աշխատողների բանակը, զարգանում է գիտությունը, ծաղկում
է հայ ժողովրդի կուլտուրան, անշեղորեն բարձրանում է նրա նյութական բա-
րեկեցությունը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը

digitised by A.R.A.R.@

մեր Հայրենիքի տնտեսության հետագա զարգացման համար դրեց նոր հոյակապ խնդիրներ, այն է՝ ծանր արդյունաբերության առավելագույն զարգացման, անընդհատ տեխնիկական պրոգրեսի և աշխատանքի արտադրողականության բարձրացման բազայի վրա ապահովել վեցերորդ հնգամյակում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա զարգացումը, իրականացնել գյուղատնտեսական արտադրության շեշտակի վերելքը և այդ հիման վրա զգալիորեն բարձրացնել սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունն ու կուլտուրական մակարդակը։

Անհրաժեշտ է տնտեսական խաղաղ մրցակցության ասպարեզում պատմական կարճատև ժամկետներում լուծել ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդիրը՝ հասնել և անցնել առավել զարգացած կապիտալիստական երկրներին բնակչության մեկ շնչին հասնող արտադրանքի արտադրության գծով։

Ելնելով այդ խնդիրներից, նախատեսված է վեցերորդ հնգամյակում արդյունաբերական արտադրանքի թողարկումը Հայկական ՍՍՌ-ում ավելացնել մոտ 1,7 անգամ։ Ինչպես առաջներում, այնպես էլ հիմա ավելի արագ տեմպերով կզարգանան ծանր ինդուստրիայի ճյուղերը։

Վեցերորդ հնգամյակում պլանով նախատեսված արտադրանքի աճը զգալի չափով ձեռք կբերվի արտադրության ավելի լավ կազմակերպման և եղած արտադրական կարողությունների օգտագործման, կոմպլեքսային մեքենայացման և արտադրության ավտոմատացման, նոր տեխնիկայի և գիտության նվաճումների արմատավորման, հնացած սարքավորման մոդեռնացման, արդյունաբերության բոլոր ճյուղերի լայն կոոպերացման ու մասնագիտացման, աշխատանքի արտադրողականության անընդհատ բարձրացման միջոցով։ Դրան զուգընթաց կկառուցվեն ու շահագործման կհանձնվեն նոր գործարաններ ու ֆաբրիկաներ, կստեղծվեն արդյունաբերության նոր ճյուղեր։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության հիմնական ճյուղերի զարգացումը վեցերորդ հնգամյակում, իսկ մի քանի պրոբլեմների գծով առաջիկա 5—10 տարում կունենա հետևյալ հեռանկարները.

**Էներգետիկա:** Վեցերորդ հնգամյակի համար նախատեսված է ռեսպուբլիկայի էներգետիկ տնտեսության հետագա զարգացման մեծ ծրագիր։ Հիմնականում կավարտվի Սևան-Հրազդան կասկադի հիդրոէլեկտրակայանների շինարարությունը։ Ինչպես հայտնի է կասկադն ունի 8 էլեկտրակայան։ Անցած հնգամյակներում կառուցված են երեքը՝ Քանաքեռի, Սևանի և Գյումուշի էլեկտրակայանները։ Անցյալ տարվա վերջում և ընթացիկ տարվա սկզբին շահագործման հանձնվեցին Արզնիգէսի բոլոր երեք ագրեգատները, կառուցվում են Աթարբեկյանի և Երևանի հիդրոէլեկտրակայանները, որոնք շահագործման կհանձնվեն ընթացիկ հնգամյակի վերջում։

Այդ երկու և վերևում արդեն նշված գործող չորս հիդրոկայանները արտադրելու են Սևան-Հրազդանի կասկադի էլեկտրաէներգիայի 88 տոկոսը։ Հետագա տարիներում կկառուցվեն մնացած երկու՝ Արգավանդի և Նորագավթի սեզոնային հիդրոէլեկտրակայանները։

Հաջորդ էտապում նախատեսվում է կառուցել Որոտանի կասկադի հիդրոէլեկտրակայանները դարձյալ 8 աստիճանով, որոնցից հինգը նախատեսվում է կառուցել Հայաստանի տերիտորիայում, իսկ երեքը եղբայրական Ադրբեջանական ՍՍՌ հարևան շրջաններում։ Ներկայումս կազմվում է Որոտանի կասկադի ամենահզոր հիդրոէլեկտրակայանի՝ Տաթևի հիդրոկայանի (կասկադի



ամբողջ էլեկտրաէներգիայի 46 տոկոսը) նախագիծը։ Այդ հիդրոէլեկտրակայանը իր հզորությամբ լինելու է երկրորդը Հայկական ՍՍՌ-ում՝ Գյումուշից հետո։

Տաթևի հիդրոէլեկտրակայանը կկառուցվի ընթացիկ հնգամյակի վերջում և յոթերորդ հնգամյակի առաջին կեսում։

Խոշոր հիդրոէլեկտրակայանների հետ մեկտեղ ռեսպուբլիկայի տարբեր շրջաններում կառուցվում են նաև մի շարք փոքր հիդրոկայաններ։ Ընթացիկ տարում կավարտվեն և շահագործման կհանձնվեն Այրումի և Ջերմուկի (երկրորդ հերթի) հիդրոկայանները։ Նախատեսված ծրագրի կենսագործումից հետո ռեսպուբլիկայի հիդրոէլեկտրակայանների հզորությունը 1960 թվականին կավելանա գրեթե 2 անգամ։

Արդյունաբերության, գյուղատնտեսության, ինչպես նաև քաղաքների և գյուղերի էներգիայի մատակարարումը բարելավելու նպատակով վեցերորդ հնգամյակում կկառուցվեն նաև Գյումուշգէս—Տաթև—Քաջարան, Երևան—Արարատ, Երևան—Հոկտեմբերյան, Ձորագէս—Ալավերդի, Այրումգէս—Նոյեմբերյան, Ազատեկգէս—Միկոյան, Բայազետ—Մարտունի—Բասարգեչար, Հոկտեմբերյան—Թալին և մի քանի այլ էլեկտրահաղորդման բարձրավոլտ գծեր։

Ձեռք են առնված միջոցներ մոտ ապագայում էլեկտրաէներգիայի արտադրությունը ավելի քան կրկնապատկելու։

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունը վառելանյութով ապահովելու բնագավառում լուրջ միջոցառում կհանդիսանա Ստավրոպոլ—Թբիլիսի—Երևան գազամուղի կառուցումը վեցերորդ հնգամյակում։

**Գունավոր մետալուրգիա:** Վեցերորդ հնգամյակում նախատեսվում է տեղական հանքային ռեսուրսների բազայի վրա էլ ավելի զարգացնել գունավոր մետալուրգիան և լեռնահանքային արդյունաբերությունը։ Պղնձի, մոլիբդենի, կապարի և ցինկի կոնցենտրատների արտադրությունը նախատեսվում է ավելացնել 2,5 անգամ։ Համապատասխանորեն կավելանա ազնիվ մետաղների՝ ոսկու և արծաթի թողարկումը, որոնք ստացվում են վերոհիշյալ մետաղների հետ զուգընթաց պղնձի, մոլիբդենի և բազմամետաղ հանքանյութերից։

Գունավոր մետաղների արտադրությունը կաճի գործող ձեռնարկություններում՝ Ղափանի և Շամլուղի պղնձի հանքերում, Քաջարանի և Դաստակերտի պղնձի-մոլիբդենի կոմբինատներում, Ախթալայի բազմամետաղ հանքարանում՝ հանքահանույթը և հանքամշակումն ընդլայնելու միջոցով։ Դրա հետ մեկտեղ կկառուցվեն և շահագործման կհանձնվեն գունավոր մետալուրգիայի նոր ձեռնարկություններ, այդ թվում Ագարակի պղնձի-մոլիբդենի կոմբինատը։

Կարևոր միջոցառումներ կկիրագործվեն նաև ալյումինի արդյունաբերության բնագավառում, որոնց հետևանքով արտադրվող մետաղը այլևս որպես կիսաֆաբրիկատ դուրս չի բերվի ռեսպուբլիկայից, այլ հենց տեղում կդառնա պատրաստի իրեր՝ կաբել և փայլաթիթեղ։

Հաջողությամբ է ընթանում ռեսպուբլիկայի ժողովրդա-տնտեսական կարևորագույն պրոբլեմներից մեկի լուծումը, այն է՝ Ախտայի շրջանի նեֆելինային սիենիտների, տեղական այդ հումքի կոմպլեքսային արդյունաբերական օգտագործումը ալյումին և, դրա հետ մեկտեղ, մի ամբողջ շարք կարևոր նյութեր՝ պորտլանդ-ցեմենտ, նատրիումի և կալցիումի մետասիլիկատներ, ամորֆ կայծաքարահող, պոտաշ և այլ նյութեր ստանալու համար։

Լրացուցիչ կարգով ստացվող այդ նյութերի արժեքի մասին կարելի է

digitised by A.R.A.R.@

դատել թեկուզ հենց նրանից, որ, օրինակ, նատրիումի մետասիլիկատը կարելի է օգտագործել գունավոր մետաղների հանքանյութի հարստացման համար, այնուհետև որպես լվացող միջոց, որպես հումք բյուրեղապակու արտադրության համար։ Կալցիումի մետասիլիկատը կարևոր դեր է խաղում ռետինա-տեխնիկական իրերի, սպիտակ ներկերի, ջնարակի արտադրության մեջ։

Այսպիսով, նեֆելինային սիենիտների արդյունաբերական օգտագործման տնտեսական նշանակությունը ամենևին էլ չի սպառվում ալյումինի հումքով, այլ իրենից ներկայացնում է ժողովրդա-տնտեսական մեծ նշանակություն ունեցող պրոբլեմ։ Դրա լուծումը կապահովի Քանաքեռի ալյումինի գործարանը տեղական հումքով, ինչպես նաև, էներգետիկ բազայի աճման հետ մեկտեղ, հնարավոր կդարձնի ալյումինի արտադրության հետագա ընդլայնումը։ Լրացուցիչ կարգով ստացվող նյութերը, բացի իրենց ուղղակի կիրառումից ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում, հնարավորություն կտան ընդլայնել (օգտագործելով պեմզայի պես հիանալի նյութը) բետոնե և երկաթբետոնե հավաքովի շինարարական մասերի թողարկումը, կազմակերպել բյուրեղապակու, թափանցիկ ապակու, ջնարակի և այլ նյութերի արտադրությունը։

Ընթացիկ տարում աշխատանքներ են տարվելու նեֆելինային սիենիտների կոմպլեքսային օգտագործման նպատակով կառուցվող Ախտայի լեռնաքիմիական կոմբինատի շինարարության նախագիծը կազմելու համար։

**Քիմիական արդյունաբերություն:** Ծանր ինդուստրիայի այս ճյուղը, որը նշանակալի դեր է խաղում մեր ռեսպուբլիկայի էկոնոմիկայում, իր արտադրանքի թողարկումը վեցերորդ հնգամյակում կավելացնի մոտավորապես 2 անգամ։ Նշանակալի չափով կընդարձակվի ավտոդողերի, ռետինա-տեխնիկական իրերի, ծծմբաթթվի, պղնձարջասպի, պարարտանյութերի, քիմիական զանազան նյութերի արտադրությունը Կիրովի անվան և Պոլիվինիլացետատ գործարաններում, ինչպես նաև Կիրովականի քիմկոմբինատում։ Կալցիումի կարբիդից ստացվող նյութերի արտադրությունը կավելանա նշանակալի չափով հիմնական հումքի՝ կարբիդի տեսակարար կշռի հետագա կրճատման հաշվին։ Դրա հետ մեկտեղ կկազմակերպվեն նոր ճյուղեր՝ Կիրովականում կկազմակերպվի ացետիլ-ցելյուլոզայի և ացետատային մետաքսի, կորունդի, բարձրորակ ներկերի արտադրության մեջ օգտագործվող մելամինի թողարկումը, Երևանում՝ ռետինա-տեխնիկական և այլ իրերի թողարկումը։

Ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության հետագա զարգացման համար խոշոր նշանակություն ունի նաև Երևանի աղային ավազանը, որտեղ հայտնագործված են աղի մոտ 50 միլիարդ տոննա պաշարներ։ Այստեղ կարելի է զարգացնել կալցինացված սոդայի, կաուստիկ սոդայի և, դրանց հետ մեկտեղ, քլորի ու ջրածնի, ինչպես նաև մետաղե նատրիումի արտադրությունը։ Ջրածնի բազայի վրա կարելի է արտադրել ամիակ, իսկ քլորի բազայի վրա՝ քլորբենզոլ, քլորակիր և այլ ածանցյալ նյութեր։ Աղահանքերի պաշարները չեն սպառվում Երևանի ավազանով։ Հետախուզությունները ցույց են տվել, որ Հոկտեմբերյանի շրջանում կան շուրջ 285 մետր հաստությամբ աղահանքի շերտեր։

**Շինարարական նյութերի արդյունաբերություն:** Բնությունը Հայաստանին տվել է ամենաբազմազան տեսակի բնական շինարարական նյութեր և հումք շինանյութերի արդյունաբերության ծավալման համար։ Մի ժամանակ Հայաստանի տերիտորիայում գործող հրաբուխները երկիրը հարստացրել են իրենց



շինարարական հատկություններով ուշագրավ այնպիսի բազմատեսակ շինանյութերով, ինչպիսին են բազմատեսակ տուֆը, բազալտը, անդեզիտ-բազալտը, պեմզան, խարամները, պերլիտները և այլն։ Այդ ռեսուրսների ժողովրդատնտեսական վիթխարի նշանակությունը հանրահայտ է։ Դրանց բազայի վրա հիմնված են մի շարք ձեռնարկություններ, որոնց արտադրանքը օգտագործվում է ոչ միայն Հայաստանում, այլև Սովետական Միության մյուս ռեսպուբլիկաներում ու մարզերում։

Վեցերորդ հնգամյակում այս ճյուղը ավելի քան երկու անգամ կավելացնի իր արտադրանքը։ Բնական շինարարական նյութերի արտադրության ընդարձակման հետ զուգընթաց զգալիորեն կավելանա ցեմենտի, շիֆերի, կրի, ալեբաստրի, մարմարի թողարկումը։ Նախատեսվում է 5 անգամ ավելացնել երկաթ-բետոնե շինարարական կոնստրուկցիաների արտադրությունը, որի համար կառուցվում են և կկառուցվեն մի շարք գործարաններ ու պոլիգոններ Երևանում, Լուսավանում, Լենինականում, Կիրովականում, Ալավերդում և այլ տեղերում։

Մեծ ուշադրություն է դարձվում սիլիկատային արդյունաբերության վրա. առաջիկայում եռապատկվելու է Արզնու ապակե տարայի գործարանի կարողությունը։ Վերակառուցված և ընդարձակված են Լենինականի ու Երևանի ապակու գործարանները և սկսված է ապակե տարայի մի խոշոր գործարանի շինարարությունը Ջերմուկ կուրորտի մերձակայքում, որը կապահովի հանքային ջրերի լցումը շշերի մեջ։ Բնակելի շենքերի շինարարության և բնակչության պահանջմունքները բավարարելու համար ընդարձակվում է Երևանի Հախճապակու գործարանը, բացի այդ կառուցվում է մի նոր այդպիսի գործարան։

Նշանակալի չափով կաճի հրակայուն աղյուսների արտադրությունը Թումանյանի գործարանում։ Արդյունաբերության այս ճյուղի հետագա զարգացումը կապված է մի շատ կարևոր տնտեսական պրոբլեմի լուծման հետ, այն է՝ Սևան լճի հյուսիս-արևելյան ափերի, մասնավորապես Շորժայի մասիվի հիմնական հանքատեսակների կոմպլեքսային օգտագործման հետ։ Հայկական երկրաբանական վարչության կողմից վերջին տարիներում կատարած հետազոտությունները ցույց են տվել, որ այդ հանքատեսակներից ու դրանց հետ առնչված մագնեզիտային հումքից կարելի է արտադրել ֆորստերիտային բարձրորակ հրակայուն իրեր, զուգընթացաբար նրանցից ստանալով քրոմ, նիկել, կոբալտ, սնդիկ և ազբեստ։ Այս խնդրի հաջող և դրական լուծմանը նպաստելու է Ախտայի երկաթուղին մինչև Սևան հասցնելը և Երևան—Սևան երկաթուղագծի էլեկտրիֆիկացումը։

**Մեքենաշինություն:** Ընթացիկ հնգամյակում նախատեսվում է է՛լ ավելի զարգացնել մեքենաշինությունը, որը ռեսպուբլիկայի էկոնոմիկայում առանձնապես կարևոր նշանակություն ունի ոչ միայն այն պատճառով, որ նա հիմք է հանդիսանում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական պրոգրեսի համար, այլև այն կապակցությամբ, որ այդ ճյուղն իր մեջ ավելի շատ է ընդգրկում միջնակարգ դպրոցներն ավարտող երիտասարդությանը և նպաստում է բնակչության արտադրական և ընդհանուր կուլտուրայի հետագա արագ աճմանը։

Եթե ամբողջ արդյունաբերական արտադրանքը ավելանալու է 70 տոկոսով, ապա հաստոցաշինության, մեքենաշինության ու գործիքաշինության, ինչպես նաև էլեկտրա և ռադիոտեխնիկական արդյունաբերության ձեռնարկություն-

digitised by A.R.A.R.@

ները վեցերորդ հնգամյակում մոտ 3,5 անգամ կավելացնեն իրենց արտադրանքը։

Գործող ձեռնարկություններում մետաղահատ հաստոցների թողարկման, դրանց կոնստրուկցիաների կատարելագործման ու արտադրողականության բարձրացման հետ միաժամանակ, ընթացիկ հնգամյակում կկառուցվեն հաստոցաշինական արդյունաբերության երեք նոր ձեռնարկություններ, այդ թվում Լուսավանի գործիքային խոշոր գործարանը (Ախտայի շրջանում), որի շինարարությունը սկսվել է այս տարի։

Էլեկտրա և ռադիոտեխնիկական արդյունաբերությունը նույնպես նոր ձեռնարկություններ կստանա Երևանում և Լենինականում, զուգընթացաբար ավելացնելով գործող ձեռնարկությունների կարողությունները։ Հայէլեկտրո գործարանը, որն արտադրում է տրանսֆորմատորներ, գեներատորներ և շրջիկ էլեկտրակայաններ, իր արտադրանքը կավելացնի 2,8 անգամ, այլ ձեռնարկություններում կավելացվի էլեկտրամոտորների թողարկումը, Երևանի էլեկտրալամպերի գործարանը 19 միլիոն լամպից կանցնի տարեկան 70 միլիոն լամպի արտադրության։ Կկազմակերպվի պոկետային անջատիչների, ռելեների, լյումինեսցենցիալ լամպերի և այլ իրերի արտադրությունը։

Ընդհանուր մեքենաշինության և ավտոմասերի ձեռնարկությունները կյուրացնեն նոր տեսակի արտադրանքի թողարկումը, իրենց համախառն արտադրանքը հնգամյակի ընթացքում ավելացնելով 2,5 անգամ։

Բուռն կերպով է աճում Սովետական Հայաստանի արդյունաբերության նորաստեղծ ճյուղերից մեկը՝ գործիքաշինությունը, որը 1960 թվականին իր արտադրության ծավալի տեսակետից կգերազանցի 1955 թվականի մակարդակը 5 անգամ։

Անցյալ տարի՝ վեցերորդ հնգամյակի առաջին տարում, հիմնադրվեցին նոր գործիքաշինական գործարաններ Երևանում, Լենինականում և Կիրովականում։ Այդ գործարանները մոտ ժամանակներում կսկսեն արտադրել ո՛չ միայն արդյունաբերության մեջ կիրառվող գործիքներ, այլև քիմիական արդյունաբերության ու մետալուրգիայի արտադրական պրոցեսների ավտոմատացման համար անհրաժեշտ գործիքներ։

Տարեց-տարի ընդարձակում են իրենց արտադրանքի ծավալը Երևանի ժամացույցի գործարանը և էլեկտրական ճշգրիտ գործիքների գործարանը։ Ստեղծվում է գործիքաշինության գիտա-տեխնիկական բազա։ Անցյալ տարվա վերջում Երևանում կազմակերպվեց մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտ, Կիրովականում՝ քիմիական արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի արտադրական պրոցեսների ավտոմատացման գիտա-հետազոտական ինստիտուտ իր փորձնական բազաներով։ Այդ ինստիտուտները, ինչպես նաև Լենինականի և Կիրովականի ինքնուրույն կոնստրուկտորական բյուրոները արդեն ձեռնամուխ են եղել մի շարք կարևոր պրոբլեմների լուծմանը. նախատեսվում է ընթացիկ տարում Երևանում գործարկել առաջին էլեկտրոնային հաշվիչ մաթեմատիկական մեքենան։

Սրանք են Հայկական ՍՍՌ ծանր ինդուստրիայի գլխավոր ճյուղերի զարգացման մոտակա հեռանկարները ընդհանուր գծերով։ Այդ հեռանկարները վկայում են այն մասին, որ արտադրանքի աճման բարձր տեմպերի հետ մեկտեղ ընթացիկ հնգամյակում հիմք է դրվում գունավոր մետալուրգիայի,



էներգետիկական և քիմիական արդյունաբերության, մեքենաշինության և շինանյութերի արդյունաբերության հետագա, ավելի արագ աճմանը։

**Թեթև արդյունաբերություն։** Վեցերորդ հնգամյակում նախատեսվում է է՛լ ավելի զարգացնել թեթև արդյունաբերության առանձին ճյուղերը։ Մասնավորապես պլանավորված է բամբակե գործվածքների թողարկումն ավելացնել 35 տոկոսով, մետաքսե գործվածքներինը՝ 55 տոկոսով, բրդե գործվածքներինը՝ ավելի քան 2 անգամ։ Կաշվե կոշկեղենի արտադրությունը 1960 թվականին կհասնի շուրջ 5 միլիոն զույգի, 1955 թվականի 2,9 մլն. զույգի դիմաց։ Հնգամյակի վերջում կարտադրվի մոտ 35 միլիոն զույգ շուլքի-գուլպա, 24 մլն. տրիկոտաժե գործվածքներ, գրեթե 500 միլիոն ռուբլու հագուստեղեն։ Զգալիորեն կավելացվի գորգերի, հախճապակե և մետաղե ամանեղենի, տնային գործածության առարկաների արտադրությունը։

Թեթև արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալը վեցերորդ հնգամյակում կավելանա 1,5 անգամ։ Քանակական աճման հետ մեկտեղ կընդարձակվի և կբարելավվի ասորտիմենտը, ավելի մեծ չափով կթողարկվեն բնակչության մեջ մեծ պահանջարկ վայելող ապրանքները։

Ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերությունն իր կարողությունները կավելացնի ամենից առաջ գործող ձեռնարկությունների, մասնավորապես Լենինականի տեքստիլ կոմբինատի, Շահումյանի մետաքսագործական և Երևանի Նուրբ մահուդի կոմբինատների, տրիկոտաժի, հագուստեղենի, կոշկեղենի և այլ ձեռնարկությունների ընդարձակման ու վերակառուցման հաշվին։

Դրա հետ մեկտեղ կկառուցվեն նոր արտադրական ձեռնարկություններ և կյուրացվի նոր ապրանքների արտադրությունը։ Այդ ձեռնարկությունների թվին են պատկանում, ամենից առաջ, Կիրովականի ացետատային մետաքսի գործարանը, որի նախագծումն արդեն սկսված է։ Այդ ձեռնարկությունը խոշոր նշանակություն է ունենալու ռեսպուբլիկայի տեքստիլ-տրիկոտաժի արդյունաբերության զարգացման համար։ Բավական է ասել, որ մեկ տարում նրա արտադրած արհեստական թելից կարելի է գործել մոտ 20 մլն. մետր մետաքսե գործվածքներ։ Անցյալ տարում մեր ռեսպուբլիկայում արտադրվել էր մոտ 5 մլն. մետր մետաքսե գործվածք։ Զաքրախում կառուցվում է տրիկոտաժե ձեռնոցների ֆաբրիկա տարեկան 7 մլն. զույգ կարողությամբ։ Նախատեսվում է կազմակերպել գորգերի, ինչպես նաև տեքստիլ-գալանտերիային ապրանքների գործարանային արտադրությունը։

Ռեսպուբլիկայի կահույքի ձեռնարկությունները իրենց արտադրանքի որակի բարելավման և ասորտիմենտի ընդլայնման հետ զուգընթացաբար 65 տոկոսով կավելացնեն կահույքի արտադրությունը։ Հնգամյակի վերջում Երևանում շահագործման կհանձնվի դաշնամուրների հավաքման ֆաբրիկան։

**Սննդի արդյունաբերություն։** Նախատեսվում է գյուղատնտեսական արտադրության աճման հիման վրա վեցերորդ հնգամյակում մոտ 1,5 անգամ ավելացնել սննդամթերքների թողարկումը։ Շաքարավազի արտադրությունը կավելանա 55 տոկոսով, հրուշակեղենինը՝ 80 տոկոսով, պահածոներինը՝ մոտ 2 անգամ, մսեղենինը՝ 40 տոկոսով, կաթնամթերքներինը՝ 2,5 անգամ, խաղողի գինունը՝ 40 տոկոսով, հանքային ջրերինը՝ ավելի քան 2 անգամ։ Կավելանա նաև պանրի, յուղի, մարգարինի, օճառի, գարեջրի ոչ-ոգելից խմիչքների, ծխախոտի և այլ սննդամթերքների արտադրությունը։

Սննդարդյունաբերության գործող ձեռնարկությունների ընդլայնման ու

digitised by A.R.A.R.@

վերակառուցման, ինչպես նաև նոր ձեռնարկությունների կառուցման և նոր
առաջավոր տեխնիկայի արմատավորման միջոցով է՛լ ավելի կավելանա այդ
կարևոր ճյուղի արտադրական կարողությունը։ Առանձնահատուկ ուշադրու-
թյուն է դարձվելու խաղողի և բանջարեղենի նախնական վերամշակման ձեռ-
նարկությունների ցանցի ընդլայնման վրա։

Շահագործման են հանձնվելու հացի նոր գործարաններ Երևանում, Լենի-
նականում և այլ բնակավայրերում, բիսկվիտի ֆաբրիկա, շամպայն գինիների
գործարան Կոտայքում, պահածոների գործարան Այրումում, հանքային ջրերի
լցման գործարան Ջերմուկում և մի շարք այլ ձեռնարկություններ։

Մսի-կաթնեղենի արդյունաբերության օբյեկտների շարքում կարելի է
թվարկել ընթացիկ հնգամյակում շահագործման հանձնվող նոր մսի կոմբի-
նատը և կաթի գործարանը Երևանում, յուղի և պանրի գործարանները ռես-
պուբլիկայի մի քանի շրջաններում։

Ավարտվում է Ավանի աղահանքերի շինարարության աշխատանքը։ Այդ
ձեռնարկությունը շահագործման հանձնելուց հետո Հայաստանի արդյունաբե-
րությունը, գյուղատնտեսությունը և բնակչությունը կստանան տեղական ար-
տադրության աղ։

Հնգամյա պլանը նախատեսում է է՛լ ավելի ընդլայնել տեղական քաղա-
քային և շրջանային, ինչպես նաև կոոպերատիվ արդյունաբերությունը, որոնք
արտադրում են լայն սպառման ու կենցաղային գործածության տարբեր
առարկաներ, տեղական շինանյութեր, գյուղատնտեսական գործիքներ և այլն։
Այս ճյուղերի արտադրանքը հինգ տարվա ընթացքում կավելանա մոտավորա-
պես 75 տոկոսով։

Արտադրության աճման բարձր տեմպերի, աշխատանքի արտադրողակա-
նության բարձրացման և թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման
հետ միասին վեցերորդ հնգամյակում ավելի կբարելավվի արդյունաբերական
նոր ձեռնարկությունների աշխարհագրական տեղաբաշխման գործը, որի ժա-
մանակ անհրաժեշտորեն հաշվի է առնվելու արդյունաբերության մոտեցումը
հումքի աղբյուրներին, արդյունաբերության նոր ճյուղերի զարգացումը ռես-
պուբլիկայի առանձին վայրերում։

Ելնելով նոր շինարարության ծրագրից, ինչպես արդյունաբերության մեջ,
այնպես էլ ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում կապիտալ ներ-
դրումները վեցերորդ հնգամյակում ավելանալու են հինգերորդ հնգամյակի
մակարդակի համեմատությամբ շուրջ 45 տոկոսով։ Ընդ որում հատուկ ուշա-
դրություն է դարձվում բնակարանային շինարարության վրա։ 1956—1960
թվականներին պետական կազմակերպությունների և տեղական Սովետների
կողմից կառուցվելու են 2,3 անգամ ավելի բնակելի տարածությամբ շենքեր,
քան կառուցվել էին 1951—1955 թվականներին։

Արդյունաբերության զարգացման վեցերորդ հնգամյակի հոյակապ ծրա-
գրի կենսագործումը կհանդիսանա Սովետական Հայաստանի ամբողջ էկոնո-
միկայի և կուլտուրայի հետագա վերելքի վճռական գործոններից մեկը, որը
ավելի կբարելավի ռեսպուբլիկայի բնակչության նյութական բարեկեցությունը։

1956 թվականի, վեցերորդ հնգամյակի առաջին տարվա արդյունքները
վկայում են այն մասին, որ արդյունաբերական զարգացման նոր ծրագիրը ոչ
միայն միանգամայն ռեալ է, այլև որ նա կարող է կատարվել ժամկետից
շուտ։ Հայկական ՍՍՌ արդյունաբերությունը անցյալ տարի թողարկեց 10



տոկոսով ավելի արտադրանք, քան 1955 թվականին, կատարելով տարեկան
պլանը 103,5 տոկոսով։

Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների բանվորները,
ինժեներա-տեխնիկական աշխատողները և ծառայողները, մտնելով Հոկտեմ-
բերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասնամյա հոբելյանի պատ-
վին ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ, ցույց
են տալիս աշխատանքային արիության նոր օրինակներ։ Ընթացիկ տարվա
առաջին եռամսյակում ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերությունն իր ար-
տադրական պլանը կատարեց 101,2 տոկոսով, արտադրանքի ծավալը անցյալ
տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացնե-
լով 8,8 տոկոսով։

***

Ոչ մի տարակույս չկա, որ Սովետական Հայաստանի աշխատավորները
Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հաջողությամբ կկատարեն և
կգերակատարեն ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման
վեցերորդ հնգամյա պլանը։ Դրան մեծապես կնպաստեն կազմակերպական
այն նոր մեծ ձեռնարկումները, որ պարտիան և կառավարությունը իրակա-
նացնում են արդյունաբերության ու շինարարության կառավարումն է՛լ ավելի
կատարելագործելու ասպարեզում։

Սոցիալիստական տնտեսության անընդհատ զարգացումը պահանջում է
մշտապես բարելավել ժողովրդական տնտեսության կառավարման, ինչպես
նաև պլանավորման կազմակերպական ձևերն ու մեթոդները։

ՍՄԿԿ Կենտկոմի Փետրվարյան պլենումը, խոր վերլուծության ենթար-
կելով տնտեսական շինարարության կուտակած մեծ փորձը, նշեց արդյունա-
բերության ու շինարարության բոլոր օղակների կառավարման կազմակերպա-
կան ձևերի հետագա կատարելագործման ուղիները։ ՍՍՌՄ Գերագույն Սովե-
տի առաջիկա սեսիայում ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցումում, ինչպես և պլենու-
մի նախատեսած վերակառուցումը կապահովի էկոնոմիկայի այնպիսի
կառավարումը, որի դեպքում տնտեսության կոնկրետ ու օպերատիվ ղեկավա-
րությունը տեղերում լիովին կզուգորդվի ամբողջ Սովետական Միության
մասշտաբով կենտրոնացված պլանային սկզբունքի խստիվ պահպանման հետ։
Արդյունաբերության օպերատիվ կառավարման ծանրության կենտրոնը կտե-
ղափոխվի դեպի տեղերը։ Առանձին տնտեսական վարչական շրջաններում
ժողտնտխորհների ստեղծումը, միութենական ռեսպուբլիկաների ու տեղական
օրգանների իրավունքների ընդլայնումը հնարավորություն կտան կառավարումն
ընդհուպ մոտեցնել արդյունաբերական ձեռնարկություններին և շինարարու-
թյուններին։ Դա ժողովրդական տնտեսության ղեկավարման գործում է՛լ ավե-
լի կամրապնդի դեմոկրատական ցենտրալիզմի և պլանային կառավարման
լենինյան սկզբունքը։

Սովետական Հայաստանի, ինչպես և ամբողջ Սովետական Միության աշ-
խատավորությունը քաջ գիտենալով, որ ժողովրդական տնտեսության կարևորա-
գույն ճյուղերի կառավարման վերակառուցումը բխում է մեր երկրի կենսական
շահերից, կոմունիստական շինարարության խնդիրների հաջող լուծման շահե-
րից, ջերմորեն արձագանքեց ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի
կոչին և ակտիվորեն մասնակցում է այդ հարցի համաժողովրդական քննարկ-

digitised by A.R.A.R.@

*մանը։ Հավանություն տալով ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման թեզիսներին, աշխատավորներն իրենց արժեքավոր առաջարկություններն են մտցնում մեր երկրի, մասնավորապես Սովետական Հայաստանի սոցիալիստական տնտեսության կառավարման մեթոդների հետագա կատարելագործման ուղղությամբ։*

*ՍՄԿԿ XX համագումարից հետո երկրի տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում միութենական ռեսպուբլիկաների դերը բարձրացնելու համար, Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության ձեռնարկած միջոցառումները նորից փայլուն կերպով ապացուցեցին լենինյան ազգային քաղաքականության հետևողական կենսագործումը։ Այդ միջոցառումները հնարավորություն են տալիս բազմակողմանիորեն հաշվի առնել ազգային առանձնահատկություններն ու տեղական ռեսուրսները, նպաստում են միութենական ռեսպուբլիկաների տնտեսության և Սովետական Միության ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը։*

*Միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնումը բարենպաստ պայմաններ է ստեղծում տնտեսական ու կուլտուրական շինարարության պլանների ավելի հաջող կատարման համար։ Միաժամանակ այն միութենական ռեսպուբլիկաների Մինիստրների Սովետների և Կոմպարտիաների կենտկոմների, տեղական պարտիական, պրոֆմիութենական և տնտեսական կազմակերպությունների վրա մեծ պատասխանատվություն է դնում տնտեսության և կուլտուրայի ղեկավարումը բարելավելու, ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում պետական առաջադրանքները կատարելու ու գերակատարելու համար աշխատավոր մասսաներին մոբիլիզացնելու գործում։*

---

# ԱՎԵԼԻ ՇԱՏ ԼԱՅՆ ՍՊԱՌՄԱՆ ԱՌԱՐԿԱՆԵՐ ՄԱՍՍԱՆԵՐԻՆ

Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

*Վերջին հնգամյակների ընթացքում մեր երկրում զգալիորեն աճեց բնակչության համար թողարկվող լայն սպառման արդյունաբերական ու պարենային ապրանքների արտադրությունը։ Այդ գործում նշանակալի դեր խաղաց տեղական արդյունաբերությունը, որը հանդիսանում է միութենական արդյունաբերության մի կարևոր մասը։*

*Ներկայումս Հայկական ՍՍՌ տեղական արդյունաբերության սիստեմում կա 86 ձեռնարկություն, որոնց տեխնիկական հագեցվածությունը վերջին տարիներում զգալիորեն աճել է մետաղահատ հաստոցներ, դարբնոցա-մամլակային սարքավորում, փայտ մշակող հաստոցներ, ռետինա-տեխնիկական և այլ սարքավորում ձեռք բերելու հաշվին։ Ռեսպուբլիկայի տեղական արդյունաբերության ձեռնարկությունները 1956 թվականին տվեցին ավելի քան 400 միլիոն ռուբլու զանազան ապրանքներ, համախառն արտադրանքի պլանը կատարելով 103,2 տոկոսով։*

*Սակայն, արտադրանքի մի շարք այլ տեսակների գծով տեղական արտադրության ձեռնարկությունները թերակատարեցին իրենց առաջադրանքները, որի հետևանքով էլ 1955 թվականի համեմատությամբ, 1956 թվականին կաշվե կոշկեղենի արտադրությունը իջավ 45,7 հազար զույգով, մանկական կոշկեղենինը՝ 10,1 հազար զույգով, ներկերինը՝ 74,3 տոննայով, նաիրոլ օլիֆինը՝ 194,8 տոննայով, խողովակների ձևավորված մասերինը՝ 285,7 տոննայով։*

*Ռեսպուբլիկայի տեղական արդյունաբերության աշխատանքում գլխավոր թերությունն այն է, որ ձեռնարկությունները սիստեմատիկաբար չեն կատարում նոմենկլատուրային ապրանքների թողարկման առաջադրանքները։ Այսպես, օրինակ, 1956 թվականին կերոսինկաների թողարկման առաջադրանքները կատարեցին 87,9 տոկոսով, էմալապատ ամանեղենինը՝ 83,9, մահճակալներինը՝ 86,7, աշտարակային կռունկներինը՝ 65,0, կայմային ամբարձիչներինը՝ 79,0, կահույքինը՝ 96,6, պարկետինը՝ 62,0, քարի հանույթը՝ 97,7, գաջինը՝ 65,5, երեսպատման սալիկներինը՝ 68,2 տոկոսով։ Այդ թերության հիմնական պատճառը արտադրության վատ կազմակերպումն է և նյութական-տեխնիկական մատակարարման բնագավառում եղած սիստեմատիկ խախտումները։*

*Արդյունաբերական և պարենային ապրանքների պետական մանրածախ գների բազմակի իջեցումները, ինչպես և աշխատավորության բարեկեցության ընդհանուր վերելքը մեր երկրում ավելացրին բնակչության պահանջարկը այդ ապրանքների նկատմամբ։ Բնակչությունն այժմ պահանջում է ամենաբազմազան ասորտիմենտի և բարձր որակի ապրանքներ։ Տեղական արդյունաբե-*



digitised by A.R.A.R.@

րությունն ունի բոլոր անհրաժեշտ պայմանները բնակչության այդ պահանջները լիկապես բարելավելու համար։ Սոցիալիստական արդյունաբերությունն ունի արտադրական հսկայական կարողություններ, բանվորների, ինժեներների և տեխնիկների հիանալի կադրեր։ Այս ամենը հնարավորություն է տալիս մի նոր խոշոր քայլ կատարելու բնակչության համար լայն սպառման ապրանքների թողարկումն է՛լ ավելի ընդլայնելու գործում։ Այդ պատվավոր խնդիրը հաջողությամբ լուծելու համար Տեղական արդյունաբերության մինիստրությունը լայն միջոցներ է ձեռք առել ռեսպուբլիկական, քաղաքային արդյունաբերությունն ամրացնելու, շրջանային արդյունաբերությունը առավելագույն չափով ընդլայնելու ուղղությամբ։ Այդ կատարվելու է գործող ձեռնարկությունների ամրացնելու, ինչպես նաև նոր ձեռնարկություններ կազմակերպելու միջոցով։ Առանձնապես մեծ ուշադրություն է հատկացվում շրջանային արդյունաբերության զարգացման վրա։ Շրջանային արդյունաբերության ձեռնարկությունների ցանցի հետագա ընդլայնումը հնարավորություն կտա լայն սպառման ապրանքների արտադրության մեջ օգտագործել տեղական հումքը և ռեսուրսները։

Ելնելով պարտիայի ու կառավարության ցուցումներից, այժմ լուրջ միջոցներ են մշակվում տեղական հումքային ռեսուրսների և արդյունաբերական արտադրության մնացորդների բազայի վրա լայն սպառման առարկաների արտադրության ծավալման նպատակով։ Դա տեղական արդյունաբերության բոլոր աշխատողների հիմնական խնդիրներից մեկն է։

Լուծելով լայն սպառման ապրանքների թողարկման հետագա ընդլայնման խնդիրը, նախատեսվում է ընթացիկ տարում ավելացնել տեղական հումքից պատրաստվող այնպիսի ապրանքների արտադրությունը, ինչպիսին է կահույքը, աղյուսը, կղմինդրը, կիրը, քարը, գաջը և այլն։ Բանն այն է, որ կահույք պատրաստող ձեռնարկությունները դեռևս լրիվ չեն օգտագործում իրենց արտադրական կարողությունները և չեն ընդլայնում կահույքի ասորտիմենտը։ Ֆաբրիկաները հաճախ թողարկում են անխնամ մշակված ու վատ հղկված կահույք։ Պետք է վերջ տալ դրան և հասնել այն բանին, որ մեզ մոտ մեծ չափով զարգացվի կորացրած կահույքի, ֆաների, կահույքի նախանյութերի, սղոցանյութերի և նման այլ առարկաների արտադրությունը։ Որոշ աշխատանք է կատարվում հախճապակե իրերի արտադրությունն ավելացնելու, նրանց որակը բարելավելու և ասորտիմենտն ընդլայնելու ուղղությամբ։ Արդեն որոշ հաջողություններ ձեռք են բերվել այդ գործում, բայց և այնպես հախճապակու արտադրությունը ետ է մնում բնակչության աճող պահանջմունքներից։ Հախճապակե իրերի արտադրությունն ավելացնելու համար ներկայումս գործող ձեռնարկությունը ավելի է ընդլայնվում։

Աշխատավորության աճած պահանջմունքները հաշվի առնելով՝ կազմակերպված է հատուկ մի ձեռնարկություն՝ երկաթե բարձրորակ իրեր արտադրելու համար։

Ռեսպուբլիկայի տեղական արդյունաբերության բոլոր ձեռնարկություններում արտադրանքի որակի բարձրացման հարցերը, որպես պետական կարևոր նշանակություն ունեցող հարցեր, մնում են ուշադրության կենտրոնում։ Սակայն մինչև այժմ էլ մի շարք ձեռնարկություններ, ինչպես օրինակ, Ցինկապատ ամանեղենի գործարանը, Մետաղակոնստրուկցիաների, Թերթավոր գլանվածքի և այլ գործարանները շարունակում են թողարկել ցածրորակ արտադրանք։



Տեղական արդյունաբերության բոլոր ձեռնարկությունների ղեկավարները պետք է անշեղորեն պահպանեն լայն սպառման ապրանքների արտադրության սահմանված տեխնիկական պայմանները և ոչ մի շեղում թույլ չտան գոյություն ունեցող ստանդարտներից։ Տեղական Սովետները ևս իրենց հերթին պետք է ուժեղացնեն վերահսկողությունը տեղական նշանակություն ունեցող ձեռնարկությունների թողարկած ապրանքների որակի և ասորտիմենտի նկատմամբ, ամեն կերպ օգնեն ձեռնարկություններին արտադրությունն ընդլայնելու, ապրանքների ասորտիմենտը և որակը բարելավելու գործում։

Լայն սպառման ապրանքների թողարկումն ավելացնելու հետ միասին, ներկայումս տեղական արդյունաբերության սիստեմում սիստեմատիկ զբաղվում են նաև կոշկեղենի, հագուստեղենի, կահույքի, ամանեղենի և այլ առարկաների վերանորոգման գործը կազմակերպելու հարցերով։

Լայն սպառման ապրանքների արտադրության հետագա աճման կարևոր պայմաններից մեկը տեղական արդյունաբերության պլանավորման գործի բարելավումն է։ Պարտիան և կառավարությունը պահանջում են, որ պլանները լինեն ռեալ, իրագործելի, ելնեն միջին պրոգրեսիվ նորմաներից, արտադրության առաջավորների փորձից։ Ձեռնարկություններում բոլոր բանվորներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին և ծառայողներին պետք է մոբիլիզացնել պայքարելու հանուն պլանի հաջող կատարման, հանուն նոր առաջընթացի և նոր վերելքի ապահովման։

Արտադրության հետագա ընդլայնման համար պլաններում պետք է լիովին հաշվի առնվեն եղած ռեզերվները։ Սակայն տեղական արդյունաբերության պլանավորման պրակտիկայում հաճախ խախտվում են սոցիալիստական պլանավորման այս սկզբունքները։ Կան փաստեր, որոնք վկայում են, որ առանձին ձեռնարկությունների համար սահմանվում են արտադրանքի թողարկման ավելացման բոլոր հնարավորությունները հաշվի չառնող, իջեցված պլաններ։ Այսպես, օրինակ, Լաքերի ու ներկերի գործարանը, Դերմատինի-մոմլաթի ֆաբրիկան և մի քանի այլ ձեռնարկություններ ունեն արտադրությունն ավելացնելու մեծ հնարավորություններ, սակայն նրանք լիովին ապահովված չեն պլանավորվող հումքով և նյութերով, այդ պատճառով էլ ռեսպուբլիկայի Պետպլանը հարկադրված է այդ ձեռնարկությունների համար սիստեմատիկաբար նախատեսել արտադրանքի թողարկման իջեցված պլաններ։

Հայկական ՍՍՌ Տեղական արդյունաբերության մինիստրությունը, ելնելով ՍՄԿՊ Կենտկոմի 1956 թվականի Դեկտեմբերյան պլենումի որոշումներից, ձեռք է առել բոլոր միջոցները՝ պլանավորման դրվածքը բարելավելու, եղած թերությունները մինչև վերջ վերացնելու ուղղությամբ։ Այդ կհանդիսանա լայն սպառման ապրանքների արտադրության ավելի արագ տեմպերի ապահովման կարևոր պայմաններից մեկը։

Այս գործում մեծ դեր ունի կատարելու Պետպլանը, որը տարեկան պլանների նախապատրաստման պրոցեսում պետք է քննադատաբար ու օբյեկտիվորեն քննի տեղական արդյունաբերության պլանները, հաշվի առնի լայն սպառման ապրանքների արտադրության հետագա աճման բոլոր հնարավորությունները՝ ամենից առաջ արտադրական կարողությունների օգտագործումը բարելավելու, ձեռնարկությունների աշխատանքի հերթափոխությունների ավելացնելու, առաջավոր ձեռնարկությունների փորձն արմատավորելու և տեղական հումքի ու արդյունաբերական մնացորդների օգտագործման միջոցով։

digitised by A.R.A.R.@

Ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում կան վայրի աճող, ինչպես և այգիներում աճող մեծ քանակությամբ պտղի, հատապտղի, բանջարների պաշարներ, որոնք անհրաժեշտ պայմաններ են ստեղծում շրջարդկոմբինատներում չոր մրգերի, թթվի և այլ մթերքների արտադրության կազմակերպման ու ընդլայնման գծով: Արտաշատի և Ազիզբեկովի շրջաններում այդ ուղղությամբ կիրառած փորձերի առաջին արդյունքները դրական են:

Լայն սպառման ապրանքների թողարկումն ավելացնելու համար կարևոր նշանակություն ունի նաև հումքի ու նյութերի սեփական արտադրության ընդլայնումը բուն իսկ ձեռնարկություններում: Վերջին շրջանում սեփական հումքային բազայի ամրապնդման ու ընդլայնման բնագավառում զգալի աշխատանք է կատարված: 1955 թվականի սկզբին շահագործման է հանձնվել Թերթավոր գլանվածքի գործարանը՝ փոքր մետալուրգիայի այդ առաջնեկը ռեսպուբլիկայում, որը արտադրում է նուրբ թերթավոր պողպատ հետագայում անկյունաձև երկաթեղեն ու խողովակներ պատրաստելու համար, որպիսիք օգտագործվում են մահճակալների արտադրության մեջ: Ընթացիկ տարում գործարանն արդեն յուրացրել է տարբեր չափի ձեղունային երկաթեղենի արտադրությունը: Այժմ մեծ նշանակություն է ձեռք բերել կաշվի փոխարինողների արտադրությունը: Արդեն յուրացված է և մասսայաբար արտադրվում է տեքստավինիտ, դերմատին, մոմլաթ, թերթավոր ռետին, մանրածակոտկեն ռետին և այլն: Նախապատրաստվում է մի քանի նոր փոխարինիչների, ինչպես նաև լինոլեումի արտադրությունը: Կաշվի փոխարինիչների արտադրության զարգացումը հնարավորություն կտա ավելացնելու նաև ռետինե կոշկեղենի և գալանտերիայի արտադրությունը:

Ռեսպուբլիկայի որոշ ձեռնարկություններում թույլ են տրվում հումքի և նյութերի, այդ թվում՝ դեֆիցիտային նյութերի գերածախսեր, չեն պահպանվում դրանց ծախսման սահմանված նորմաները: Այդ ոչ միայն իջեցնում է արտադրանքի թողարկումը, այլև խիստ բացասական ազդեցություն է ունենում ձեռնարկությունների աշխատանքի տնտեսական ցուցանիշների վրա: Նյութերի սիստեմատիկ գերածախսեր են թույլ տրվում էջմիածնի մեխանիկական գործարանում, Երևանի Մյասնիկյանի անվան մեխանիկական գործարանում, էլեկտրալուսավորական արմատուրայի գործարանում և այլ ձեռնարկություններում: Այսպես, օրինակ, ընթացիկ տարվա հունվար և փետրվար ամիսներին էջմիածնի մեխանիկական գործարանում գերածախսեր են թույլ տրվել հետևյալ չափերով. թերթավոր պողպատ՝ 2,8 տոննա, կլոր պողպատ՝ 1,6 տոննա, չուգունի ձույլեր և լոմ՝ 16 տոննա: էլեկտրալուսավորական արմատուրայի գործարանում այդ նույն ժամանակամիջոցում թույլ են տրված գերածախսեր հետևյալ չափերով. թերթավոր պողպատ՝ 2,2 տոննա, անկյունային պողպատ՝ 3,9 տոննա, մետաղալար՝ 1,6 տոննա, լաք՝ 2,6 տոննա:

Նյութերի գերածախսեր են լինում նաև կահույքի արտադրության մեջ, որտեղ հաճախ ավելորդ ծախսվում են շելլաք, նիտրոլաք, սպիրտ, սոսինձ և այլ նյութեր: Տեղական արդյունաբերության սիստեմի աշխատողների անհետաձգելի գործերից մեկը նյութերի ծախսման կարգավորումն է ձեռնարկություններում: Հումքի և նյութերի խնայողական ծախսումը կհանդիսանա արտադրանքի թողարկման հետագա ավելացման և ձեռնարկության աշխատանքի որակական ցուցանիշների բարելավման կարևոր գործոն:

Վերջին տարիներում տեղական արդյունաբերության ձեռնարկություններում իրենց կիրառումն են գտել աշխատանքի կազմակերպման առաջավոր մեթոդները, իրականացվել են ռացիոնալիզատորական և գյուտարարական բազմաթիվ միջոցառումներ, որոնք բարձրացրել են արտադրության կուլտուրան: Երևանի մեխանիկական գործարանում արմատավորված է կանալիզացիոն չուգունե միացուցիչ դետալների կոկիլային ձուլումը՝ նախկինում կիրառվող հողային կաղապարներով կատարվող ձուլման փոխարեն: Կիրառվում է մեխանիկական կաղապարումը պնևմատիկ մեքենաներով: Արմատավորված է ձուլված մանր դետալների (ֆիտինգների, արմատուրայի և այլնի) մեխանիկական մշակման առաջավոր մեթոդը հատուկ տիպի հաստոցների վրա, որոնք պատրաստվել էին հին ֆրեզերային գնդերիթային հաստոցներից և ճախարակահաստոցներից:

Ցինկապատ ամանեղենի գործարանում մեքենայացված են արտադրության բոլոր հիմնական պրոցեսները (կտրումը, գլանումը, ծռումը, եզրածալումը և այլն):

Տեղական արդյունաբերության շատ ձեռնարկություններում ստեղծված են գործիքային արհեստանոցներ, որոնք տվյալ ձեռնարկություններին մատակարարում են անհրաժեշտ շտամպներ, հարմարանքներ և տեխնոլոգիական այլ միջոցներ: Գործիքային արհեստանոցները սարքավորված են ժամանակակից մետաղահատ հաստոցներով:

Մետաղե իրերի գործարանում այժմ արդեն շահագործման է հանձնվում ավտոմատիկ նոր հաստոց՝ մետաղալարի բազմակի ոլորման համար: Այդպիսի մեկ հաստոցը փոխարինում է ոլորման հին 6 թմբուկներին, որոնցով մինչև այդ կատարվում էր մետաղալարի արտադրությունը:

Ռետինա-տեխնիկական իրերի գործարանում մոդեռնացված են արտադրվող առարկաների բազմահարկ մամլման հիդրավլիկ սեղմակները, որով մամլակի արտադրողականությունը ավելացել է 2—3 անգամ: Սարքավորված է ունիվերսալ նոր կալանդր թերթավոր ռետինի համար, որը հնարավորություն է տալիս զգալիորեն ավելացնել թողարկվող արտադրանքի ասորտիմենտը և բարելավել որակը: Նա արտադրողականությունը բարձրացնում է երկու անգամ:

Սակայն այս ամենը դեռ գոհացուցիչ չեն: Դեռևս ձեռնարկություններում չկա արտադրության պատշաճ կուլտուրա, դեռ ցածր է արտադրության տեխնիկական մակարդակը: Ո՛չ բոլոր ձեռնարկություններում են լուծված աշխատանքի մեքենայացման հարցերը, իսկ որոշ հիմնական գործողություններ էլ կատարվում են ձեռքով: Մեր խնդիրն է՝ ամեն կերպ ընդլայնել աշխատանքի պրոցեսների մեքենայացումը և այդ բանը կատարել ամենից առաջ հենց ձեռնարկությունների ուժերով ու միջոցներով:

Լայն սպառման ապրանքների արտադրության արագ աճման համար շատ կարևոր նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացումը: Հայաստանի տեղական արդյունաբերությունը այդ բնագավառում զգալի արդյունքների է հասել: Ձեռնարկությունները կատարել են աշխատանքի արտադրողականության աճման առաջադրանքները: Մեկ բանվորի արտադրանքի թողարկումը 1956 թվականին կազմել է ռեսպուբլիկական ենթակայության ձեռնարկություններում 106,7 տոկոս, շրջանային ձեռնարկություններում՝ 102,7 տոկոս, իսկ ամբողջ մինիստրությունում 104,2 տոկոս: Բայց պետք է նշել, որ մի շարք ձեռնարկություններում չեն կատարվում աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքները: Առանձին ձեռնարկու-



digitised by A.R.A.R.@

*թյուններում աշխատանքի արտադրողականության ցածր մակարդակի պատճառը արտադրության կազմակերպման գործում եղած լուրջ թերություններն են, որոնք առանձին տեղերում պարապուրդների տեղիք են տալիս։*

*Ձեռնարկություններում նոր տեխնիկա արմատավորելու, տեխնոլոգիական հիմնական պրոցեսները մեքենայացնելու միջոցով ռեսպուբլիկայում դրական արդյունքներ կան աշխատանքի կազմակերպման և նրա արտադրողականության բարձրացման բնագավառում. այսպես, օրինակ՝ Բասարգեչարի տորֆահանքերում շահագործման է հանձնված նոր ագրեգատ՝ տորֆի չերտավոր հանույթի համար։ Նոր ագրեգատի կիրառումը հնարավորություն է տալիս նույն աշխատանքը կատարել առանց 14 մարդու մասնակցության, երկու անգամ իջեցնում է տորֆի ինքնարժեքը։ Ստացված և սարքավորված է նաև նոր բագերա-էլևատորային ագրեգատ՝ տորֆի հանույթի համար, որը արտադրողականությունն ավելացնում է 1,5 անգամ և ազատում է 25 բանվոր։*

*Դպրոցական պիտույքների ֆաբրիկայում պատրաստված և շահագործման է հանձնված աշակերտական գրչակոթների հղկման ու ներկման ավտոմատ։ Ստացված է 3 կողմանի կտրող մեքենա՝ աշակերտական տետրեր կտրելու համար։ Նոր մեքենայի արտադրողականությունը 2,5 անգամ ավելի է նախկին մեքենաների արտադրողականությունից և մեկ մեքենան լիովին ապահովում է ֆաբրիկայի տարեկան արտադրական պլանի կատարումը։*

*Լենինականի կահույքի ֆաբրիկայում շահագործման է հանձնված մի սարքավորում, որը բարձր ջերմաստիճանի միջոցով արագ չորացնում է ալոցանյութը և պարկետը պետրալատումում, որ 7—10 անգամ արագացնում է չորացման պրոցեսը, բարելավում որակը, 30 տոկոսով իջեցնում է ինքնարժեքը։*

*Շահումյանի շրջանի գուլպա-տրիկոտաժի արտկոմբինատի սպիտակեղեն-տրիկոտաժի ցեխում շահագործման է հանձնված 2 կոնվեյեր։ Կատարելագործումներ են մտցված տրիկոտաժի և գուլպաներ արտադրող մեքենաներում, որոնք հնարավորություն են տալիս 15 տոկոսով բարձրացնել արտադրողականությունը և ընդլայնել ապրանքների տեսականին։*

*Տեղական արդյունաբերության սիստեմին պատկանող շատ ձեռնարկություններում մեքենայացված են ներգործարանային տրանսպորտային մի շարք գործողություններ, առավելապես կիսաֆաբրիկատները՝ պահեստներից դեպի ցեխ և պատրաստի արտադրանքը ցեխերից դեպի պահեստ փոխադրելու բնագավառում։ 1956 թվականին մեքենայացված տրանսպորտային գործողությունների ծավալը աճեց 15 տոկոսով։ Արտադրության տեխնիկական մակարդակը բարձրացնելու նպատակով մետաղամշակման, փայտամշակման և քիմիական խոշոր ձեռնարկություններում կազմակերպված են կոնստրուկտորա-տեխնոլոգիական խմբեր, որոնք նպաստում են արտադրության մեջ նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի արմատավորմանը, ինչպես նաև վերահսկողություն են իրականացնում տեխնիկական ռեժիմի պահպանման և ապրանքների նոր տեսակների յուրացման նկատմամբ։ Տեղական արդյունաբերության խոշոր ձեռնարկություններում կազմակերպված են նաև փորձնական բաղաներ (արհեստանոցներ), որոնք ունեն բարձրորակ, փորձված բանվորներ ու վարպետներ։*

*Տեխնիկական հետագա պրոգրեսն իրականացնելու և ձեռնարկություններում արտադրության կուլտուրան բարձրացնելու նպատակով Տեղական արդյունաբերության մինիստրությունը 1957 թվականի համար նախատեսել է մի շարք*



*միջոցառումներ, որոնց կենսագործումը, անշուշտ, կնպաստի բարձրորակ ապրանքների թողարկման ընդլայնմանը։*

*Նախատեսված է 1957 թվականին մոդեռնացնել մետաղամշակման տարբեր ձեռնարկություններում եղած մետաղահատ հաստոցները, 7 դարբնոցամամլակային սարքավորումը, մի բան, որ արտադրողականությունը 7 տոկոսից կբարձրացնի մինչև 25 տոկոս։ Մետաղե իրերի գործարանում նախատեսված է շահագործման հանձնել պտուտօղակներ հանող ու պատրաստող ավտոմատներ՝ 12 մմ. ակոսներ ունեցող պտուտօղակների համար։ Նախատեսված է նաև արմատավորել նոր ավտոմատիկ հաստոցներ՝ 6-ից մինչև 1 մմ. տրամագիծ ունեցող մետաղալարի բազմակի ոլորման համար։ Այդ նույն գործարանում պետք է սարքավորվեն նոր ավտոմատներ ակոսափորման և պտուտակների պատրաստման համար, որը 3 անգամ կբարձրացնի արտադրողականությունը։*

*Ռետինա-տեխնիկական իրերի գործարանում պետք է արմատավորվի հատուկ ագրեգատի վրա ինֆրակարմիր ճառագայթների օգնությամբ ռետինապատ գործվածքների անընդհատ վուլկանիզացիայի առաջավոր մեթոդը, որը 5 անգամ կբարձրացնի արտադրողականությունը։ Քիմիական գործարանում կյուրացվի քլորակրի արտադրության նոր մեթոդը, որպիսին առաջարկել է այդ նույն գործարանի գլխավոր ինժեներ ընկ. Խաչատրյանը։ Այդ նոր մեթոդը ավելի քան 10 անգամ կավելացնի արտադրողականությունը։*

*Երևանի կահույքի երկու ֆաբրիկաներում արտադրության հիմնական պրոցեսներում կարմատավորվի մեքենայացված հարահոս մեթոդը, որը 30 տոկոսով կբարձրացնի արտադրողականությունը։ Կահույքի դետալների հղկումը մեքենայացվելու է Երևանի և Լենինականի կահույքի ֆաբրիկաներում։*

*Տեղական արդյունաբերության առջև ծառացած խնդիրների հաջող կատարման գործում կարևոր տեղ է գրավում ձեռնարկությունների նյութատեխնիկական մատակարարման հարցը։ Պետք է ուղղակի ասել, որ այնպիսի պայմաններում, երբ տեղական արդյունաբերության համախառն արտադրանքը 1957 թվականին հսկայական ծավալ է ընդունելու, հասնելու է շուրջ 480 մլն. ռուբլու, դեռևս 1936 թվականին հաստատված կառուցվածք ու հաստիքներ ունեցող մատակարարող կազմակերպությունը ոչ մի կերպ չի կարող ապահովել տեղական արդյունաբերության մատակարարման նորմալ ու անխափան աշխատանքը։ Մեր անհետաձգելի խնդիրն է՝ ստեղծել տեխնիկական մատակարարման ավելի հզոր ու ճկուն ապարատ։ Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը պետք է պրակտիկ օգնություն ցույց տա այդ գործում Տեղական արդյունաբերության մինիստրությանը և ամենամոտ ժամանակներում դրականորեն լուծի այդ հարցը։*

*Առանձնապես վատ է դրված պլանավորվող նյութերի մատակարարման գործը։ Ամենամեծ բացն այն է, որ Մինիստրությունը նախորոք չգիտե, թե ինչ նյութեր են առանձնացված իր համար և ինչ քանակությամբ։ Դա խիստ դժվարացնում է ձեռնարկությունների աշխատանքը։ Անհրաժեշտ է նշել, որ Հայմատարը միայն դեպքից դեպք է փոխադրում պլանավորվող նյութերը։ Այդ կազմակերպության ղեկավարները իրենց պատասխանատու չեն զգում ռեսպուբլիկական բոլոր գերատեսչությունների պլանների, մասնավորապես տեղական արդյունաբերության պլանների կատարման համար, որի հետևանքով 1956 թվականին շատ նյութեր մնացին չյուրացված։ Անհրաժեշտ է, որ Հայ-*

digitised by A.R.A.R.@

*մատարի աշխատողները արմատապես վերակառուցեն իրենց աշխատանքը և հասկանան, որ իրենց լավ ու օպերատիվ աշխատանքից է կախված տեղական արդյունաբերության ամբողջ սիստեմի հաջողությունը։*

*Տեղական արդյունաբերության ձեռնարկությունների արդեն հունվար ամսից վատ են սկսել տնտեսական նոր տարին։ Այդ բացատրվում է նրանով, որ 1956 թվականը փակելիս ձեռնարկություններն ապահովված չեն եղել հումքի և նյութերի փոխանցիկ պաշարներով՝ թեկուզ մեկ ամսվա համար։*

*Լայն սպառման ապրանքների թողարկումն ամեն կերպ ընդլայնելու խնդիրները հաջող կատարելու համար անհրաժեշտ է լուրջ ուշադրություն դարձնել ետ մնացող ձեռնարկություններն ամրացնելու և նրանց ֆինանսական տնտեսության մեջ կարգ ու կանոն հաստատելու վրա։ Ձեռնարկությունների կազմակերպական-տնտեսական ամրապնդումը, նրանց արտադրական ու հումքային բազայի ամրապնդումը, որակյալ բանվորներով ապահովելը — ահա սրանք են տեղական արդյունաբերության հետագա վերելքի վճռական լծակները։ Տեղական արդյունաբերության հետագա վերելքի խնդիրները պահանջում են բարելավել կադրերի ընտրության ու պատրաստման գործը։*

*Ներկայումս սովետական ամբողջ ժողովուրդը մեծ խանդավառությամբ քննարկում է «Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին» ընկեր Ն. Ս. Խրուշչևի զեկուցման թեզիսները, որը քննության է դրվելու ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայում։ Համաժողովրդական քննարկման ընթացքում կարծիքների լայն փոխանակման, եղած փորձի բազմակողմանի հաշվառման հիման վրա կմշակվեն երկրի ժողովրդական տնտեսության կառավարման առավել նպատակահարմար ձևեր։*

*Մեր ռեսպուբլիկայի տեղական արդյունաբերության ձեռնարկությունների բանվորների, ինժեներա-տեխնիկական անձնակազմի առաջնահերթ խնդիրներից է՝ խորն ուսումնասիրել և ակտիվորեն մասնակցել այդ կարևորագույն քաղաքական փաստաթղթի քննարկմանը, գործնական առաջարկություններով օգնել ժողովրդական տնտեսության կառավարման առավել ճիշտ ձևեր ընտրելու, ճշտորեն կազմակերպել արտադրության պրոցեսները, ավելացնել լայն սպառման ապրանքների թողարկումը և բարելավել որակը։*

*Տարակույս չկա, որ ռեսպուբլիկայի տեղական արդյունաբերության աշխատողները սովետական ամբողջ ժողովրդի հետ միասին հաջողությամբ կկատարեն լայն սպառման ապրանքների արտադրության ընդլայնման և որակի բարելավման խնդիրները և դրանով իսկ իրենց ավանդը կմուծեն մեր երկրում կոմունիստական հասարակության կառուցման ընդհանուր գործում։*

---

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԱՐԵՎԵԼՔԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՇԱՐԺՄԱՆ ՄԱՍԻՆ

## Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*XX դարի առաջին իսկ տարիները համաշխարհային պատմության նոր ժամանակաշրջանի հիմք դրին, բացելով բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիաների և ազգային-ազատագրական պատերազմների դարաշրջանը ճնշված Արևելքի բազմադարյան կյանքում։*

*Ռևոլյուցիոն և ազատագրական շարժումների հետևանքով Ասիայի շատ երկրներ այժմ ձեռք են բերել ազգային և պետական անկախություն։ Եվ այժմ, երբ հետամնաց Արևելքի երկրներում տեղի են ունենում պատմական խոր փոփոխություններ, նոր ուժով են հնչում Վ. Ի. Լենինի նշանավոր, իսկապես մարգարեական խոսքերը կախյալ և գաղութային երկրների ռևոլյուցիոն շարժման մասին։*

*Այն քաղաքական ու ռևոլյուցիոն իրադարձությունները, որոնք տեղի էին ունենում գաղութային աշխարհում, միշտ էլ եղել են Վ. Ի. Լենինի ուշադրության կենտրոնում։ Արևելքի վերաբերյալ իր աշխատություններում, բազմաթիվ հոդվածներում և արտահայտություններում նա տվել է Ասիայի երկրներում տարվող իմպերիալիստական քաղաքականության բազմակողմանի գիտական վերլուծությունը և մատնանշել այդ երկրների ճնշված ժողովուրդների պայքարի իսկական ուղին։ Վ. Ի. Լենինը ցույց է տվել, որ իմպերիալիզմի դարաշրջանում ուժեղանում է ազգային-գաղութային ճնշումը, սրվում է ռևոլյուցիոն ճգնաժամը գաղութներում և կախյալ երկրներում, աճում է զայրույթը օտարերկրյա կապիտալի կողոպտչական քաղաքականության դեմ և լայնանում է իմպերիալիզմի դեմ մղվող ազատագրական պայքարի թափը։*

*Վ. Ի. Լենինը հավատում էր Արևելքի ժողովուրդների անսպառ պոտենցիալ հնարավորություններին և այդ ուժերն անվանում էր «դյուրավառ նյութ», որը, պայթելով, պետք է ջարդուփշուր անի գաղութային ստրկության շղթաները և ոչնչացնի իմպերիալիստական տիրապետության սիստեմը Ասիայի երկրներում։ 1908 թվականին Վ. Ի. Լենինը «Դյուրավառ նյութը համաշխարհային քաղաքականության մեջ» հոդվածում գրել է, որ սկսվում է պրոլետարիատի միջազգային պայքարի նոր էտապ, ռևոլյուցիոն շարժման հրդեհը արագությամբ ընդգրկում է Ասիայի պետությունների մեծ մասը, որ եվրոպական առաջավոր բանվորն «արդեն ասիական ընկերներ ունի, և այդ ընկերների թիվը կաճի ոչ թե օրերով, այլ ժամերով» (Երկեր, հատ. 15, էջ 219)։*

*Վ. Ի. Լենինը մեծ հետաքրքրությամբ և մեծագույն սիրով ուսումնասիրում էր Ասիայի ճնշված ժողովուրդների կյանքն ու պայքարը։ Բացառիկ նշանա-*

Государственная БИБЛИОТЕКА СССР им. В. И. Ленина

digitised by A.R.A.R.@

կություն տալով գաղութների և կախյալ երկրների աշխատավոր մասսաների դեմոկրատական շարժմանը, նա ժամանակին անդրադառնում էր այն իրադարձություններին, որոնք տեղի էին ունենում Չինաստանում, Հնդկաստանում, Կորեայում, Ինդոնեզիայում, Թյուրքիայում, Իրանում և Ասիայի մյուս երկրներում։ Բարձր գնահատելով Արևելքի ժողովրդական շարժման ղեկավարների երախտիքը՝ Վ. Ի. Լենինը Սուն Յաթ-սենին (Չինաստան), Թիլաքին (Հնդկաստան) և մյուսներին բնութագրում էր որպես «ռևոլյուցիոն դեմոկրատների», իսկ Սաթթարին (Իրան) անվանում էր «պարսկական ռևոլյուցիոն զորքերի առաջնորդ»։

Ամփոփելով իմպերիալիզմի դարաշրջանում դասակարգային պայքարի և ժողովրդական ռևոլյուցիաների հարուստ փորձը՝ Վ. Ի. Լենինը մշակեց ազգային-գաղութային հարցի վերաբերյալ կարևոր դրույթները և տվեց հայացքների մի ներդաշնակ սիստեմ Արևելքի ժողովուրդների՝ դեպի սոցիալիզմը զարգացման ուղիների մասին։

«Վլադիմիր Իլյիչի գործունեության մեջ,— ասում էր Ս. Մ. Կիրովը,— պետք է նշել նրա հետաքրքրությունը Արևելքի ճնշված ազգությունների նկատմամբ։ Եվ ճնշված ազգությունների հարցում Իլյիչը մեզ պակաս հայտնագործություններ չի տվել, քան մյուս բնագավառներում։

Եթե ռուս մուժիկը Լենինին անվանում է հայր, ապա դեղին, սև և բոլոր ռասաների մարդիկ ոչ պակաս իրավունքով նրան նույնպես հայր էին անվանում։ Սոցիալիզմի համար մղվող համաշխարհային մասշտաբի պայքարում նա հաշվի էր առնում Արևելքի վիթխարի բանակը։

Մենք տեսնում ենք այն հսկայական շարժումը, որ կատարվում է Արևելքի երկրներում, որտեղ կապիտալիզմը նոր է միայն զարգանում։ Միայն հանճարեղ Իլյիչը կարող էր նախատեսել, որ Արևելքը կարող է դառնալ ռևոլյուցիոն։ Դրանում է նրա հսկայական երախտիքը» (С. М. Киров, Избр. статьи и речи, 1939, стр. 181)։

Ազգային և սոցիալական ազատագրության համար մղած պայքարում գաղութային Արևելքի աշխատավոր ու շահագործվող մասսաների հերոսությամբ հիացած՝ Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ ամբողջ Ասիայում, որը դեռ երեկ քնած էր խոր քնով, աճում և ամրապնդվում է դեմոկրատական շարժումը, հարյուր միլիոնավոր մարդիկ բարձրանում են նոր կյանքի, նոր պայքարի հանուն «մարդու տարրական իրավունքների»։ «Ինչպիսի՜ հիացմունք է առաջ բերում այս համաշխարհային շարժումն այն բոլոր գիտակից բանվորների սրտերում, որոնք գիտեն, թե դեպի կոլեկտիվիզմ տանող ուղին ընկած է դեմոկրատիայի միջով. որպիսի՜ համակրանքով են տոգորված բոլոր ազնիվ դեմոկրատները երիտասարդ Ասիայի հանդեպ» (Երկեր, հատ. 19, էջ 101)։

Ռևոլյուցիոն և ազգային-ազատագրական շարժումը Արևելքի երկրներում հզոր ազդակ ստացավ և զարգացման նոր էտապի մեջ մտավ ռուսական առաջին ռևոլյուցիայից հետո, որը ցնցեց համաշխարհային իմպերիալիզմի սիստեմը և Արևելքի ժողովուրդներին գիտակցական քաղաքական պայքարի արթնացրեց։

Ռուսական 1905—1907 թթ. ռևոլյուցիան արթնացող Արևելքի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումները և Արևմուտքի բանվոր դասակարգի պայքարը մի ընդհանուր հոսանքի մեջ միավորելու հիմքը դրեց ընդդեմ նրանց ընդհանուր թշնամու՝ իմպերիալիզմի, դրանով իսկ հող նախապատրաստելով գաղութների և կիսագաղութների՝ իմպերիալիզմի ռեզերվից նրա խորտակման ակտիվ ուժ դառնալու համար։



Ասիայի երկրների ռևոլյուցիոն շարժումների վրա ռուսական ռևոլյուցիայի ազդեցության ուժն ու ներգործությունը պայմանավորվեց նրանով, որ Ռուսաստանը դեռ վաղուց Արևելքի երկրների հետ պահպանում էր առևտրական և տնտեսական, քաղաքական և կուլտուրական սերտ կապեր, որ Ռուսաստանը XX դարի սկզբում դարձել էր համաշխարհային ռևոլյուցիոն շարժումների կենտրոնը, իսկ ռուսական բանվոր դասակարգը՝ միջազգային պրոլետարիատի ավանգարդը։

Ռուսական ռևոլյուցիան անմիջական և բարերար ազդեցություն թողեց դեմոկրատական շարժման վրա Արևելքի երկրներում, ուր դասակարգային պայքարն ու սոցիալական հակասությունները հասել էին իրենց ծայրահեղ կետին։

Ռուսաստանի 1905 թվականի ռևոլյուցիայից հետո բուրժուական ռևոլյուցիաներ և ազգային-ազատագրական շարժումներ սկսվեցին Իրանում (1905—1911 թթ. ռևոլյուցիան), Հնդկաստանում (1906—1908 թթ. ռևոլյուցիոն վերելքը), Թյուրքիայում (1908 թ. Երիտասարդ թյուրքերի ռևոլյուցիան), Կորեայում (1910—1911թթ. ազգային-ազատագրական շարժումը), Չինաստանում (1911—1912 թթ. բուրժուական ռևոլյուցիան), ազատագրական պայքար էր տեղի ունենում Մոնղոլիայում, Ինդոնեզիայում, Հնդկաչինում և անծայրածիր Արևելքի մյուս երկրներում։

Վ. Ի. Լենինը Արևելքի այդ վիթխարի ռևոլյուցիոն ալիքը անվանեց «Ասիայի զարթոնք» և մեծ նշանակություն տվեց նրան։

Տալով Ասիայի երկրների ռևոլյուցիոն-դեմոկրատական շարժման մեջ դասակարգային ուժերի տեղադրման խոր վերլուծությունը՝ Վ. Ի. Լենինը մոբիլիզացրեց ռուսական և միջազգային բանվոր դասակարգի ուշադրությունը Արևելքում ռևոլյուցիաների հարցի նկատմամբ և օգնեց բոլոր երկրների պրոլետարներին՝ ըմբռնելու «ասիական ռևոլյուցիաների» մեծագույն նշանակությունը։

Արևելքում ազգային-ազատագրական շարժման և բուրժուական ռևոլյուցիաների մասին Վ. Ի. Լենինը գրել է հետևյալ հոդվածներում՝ «Ասիայի զարթոնքը», «Դյուրավառ նյութը միջազգային քաղաքականության մեջ», «Իրադարձությունները Բալկաններում և Պարսկաստանում», «Հետամնաց Եվրոպան և առաջավոր Ասիան», «Կարլ Մարքսի ուսմունքի պատմական ճակատագիրը», «Դեմոկրատիան և նարոդնիկությունը Չինաստանում», «Զեկուցում 1905 թվականի ռևոլյուցիայի մասին» և այլն։ Այդ բազմաթիվ հոդվածներում Վ. Ի. Լենինը բացահայտեց գաղութային սիստեմի էությունը և ցույց տվեց, որ հետամնաց գաղութային ժողովուրդների «քաղաքակրթության» վերաբերյալ խոսակցությունների քողի տակ իրականում կենսագործվում է այդ ժողովուրդների կողոպտման քաղաքականություն, ամեն կերպ արգելակվում է նրանց տնտեսական առաջադիմությունը, կասեցվում է կուլտուրական զարգացումը, անց է կացվում հափշտակած երկրները վաճառահանման շուկաների և կապիտալի ներդրման ոլորտների վերածելու քաղաքականություն։ Մերկացնելով միջազգային իմպերիալիզմի նողկալի, ռեակցիոն քաղաքականությունը՝ Վ. Ի. Լենինը գրել է, որ Արևելքի երկրներում իմպերիալիստների ամբողջ ռեակցիոն գործողությունների էությունն այն է, «որ ստեղծվում է եվրոպական պետություն-

digitised by A.R.A.R.@

ների կոնտրռևոլյուցիոն կոալիցիա ընդդեմ Ասիայում աճող դեմոկրատիզմի» (Երկեր, հատ. 15, էջ 267)։

Ստոլիպինյան ռեակցիայի և առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Վ. Ի. Լենինը, գտնվելով բոլշևիկյան ընդհատակում, արտասահմանում, մեծ ուշադրությամբ հետևում էր դեմոկրատական շարժմանն Արևելքում, վերլուծելով քաղաքական իրադարձությունները և կանխատեսելով ռևոլյուցիայի ընթացքը։

Խոսելով անգլո-ռուսական իմպերիալիզմի ռեակցիոն գործողությունների մասին Իրանում՝ Վ. Ի. Լենինը ընդգծում էր. «Անգլիական լիբերալ բուրժուաները, ջղայնացած բանվորական շարժման աճմամբ իրենց սեփական տանը, ահաբեկված ռևոլյուցիոն կովի վերելքից Հնդկաստանում, ավելի ու ավելի հաճախ, ավելի բացահայտ, ավելի ցայտուն կերպով են ցույց տալիս, թե ինչպիսի գազաններ են դառնում ամենա«քաղաքակրթված», կոնստիտուցիոնալիզմի ամենաբարձր դպրոցն անցած եվրոպական քաղաքական «գործիչները», երբ բանը հասնում է մասսաների պայքարի արթնացմանն ընդդեմ կապիտալի, ընդդեմ կապիտալիստական գաղութային սիստեմի, այսինքն՝ընդդեմ ստրկացման, կողոպուտի և բռնության սիստեմի» (Երկեր, հատ. 15, էջ 216)։

«Հետամնաց Եվրոպան և առաջավոր Ասիան» հոդվածում Վ. Ի. Լենինը բացահայտում է եվրոպական բուրժուաների ֆինանսա-տնտեսական քաղաքականության ռեակցիոն էությունը Չինաստանում։ Նա մատնանշում է, որ չինական նոր փոխառությունը կնքված է ընդդեմ չինական դեմոկրատիայի, հօգուտ ռազմական դեմոկրատիայի։

«Իսկ եթե չին ժողովուրդը փոխառությունը չճանաչի՞։ Չէ՞ որ Չինաստանում ռեսպուբլիկա է, և պառլամենտում մեծամասնությունը դեմ է փոխառությանը։

Օ՜, այն ժամանակ «առաջավոր» Եվրոպան աղաղակ կբարձրացնի «քաղաքակրթության», «կարգի», «կուլտուրայի» ու «հայրենիքի» մասին։ Այն ժամանակ նա առաջ կշարժի թնդանոթները ու կխեղդի «հետամնաց» Ասիայի ռեսպուբլիկան՝ դաշնակցած ավանտյուրիստ, դավաճան ու ռեակցիայի բարեկամ Յուան Շի-կայի հետ» (Երկեր, հատ. 19, էջ 101—102)։

Վ. Ի. Լենինը և բոլշևիկները ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատիային, ռուսական և համաշխարհային պրոլետարիատին կոչ էին անում գաղափարական և պրակտիկ օգնություն ցույց տալ Արևելքի մարտնչող ժողովուրդներին, դրա մեջ տեսնելով բոլոր երկրների բանվոր դասակարգի ինտերնացիոնալ խնդիրների իրականացումը և միջազգային պրոլետարական համերաշխությունը։

Դեռևս Շտուտգարդի կոնգրեսում 1907 թվականին ռուսական սոցիալ-դեմոկրատները, Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, խիստ կերպով հանդես գալով գաղութային քաղաքականության դեմ՝ եվրոպական իմպերիալիզմին մեղադրում էին ուրիշ ժողովուրդներ ու երկրները կողոպուտի, բռնության, ճնշման ենթարկելու համար։ Ակտիվ մասնակցություն ունենալով II Ինտերնացիոնալի Կոպենհագենի աշխատանքներին՝ Վ. Ի. Լենինը անհաշտ պայքար էր մղում օպորտունիստների ու ցենտրիստների դեմ, առաջադրելով Արևելքի ռևոլյուցիոն շարժումների համաշխարհային պաշտպանության թեզիսը։

Այն ժամանակաշրջանում, երբ միջազգային կապիտալիստական ռեակցիան Արևելքի երկրներում խեղդում էր ռևոլյուցիաներն ու ազատագրական շարժումները, ռուսական պրոլետարիատը, հանձին բոլշևիկների, իր պարտիայի բողոքի ձայնը բարձրացրեց իմպերիալիստական տերությունների ավազակային քաղաքականության դեմ։ 1912 թվականի հունվարին ՌՍԴԲՊ Պրագայի կոնֆերենցիայում Վ. Ի. Լենինը կազմեց, իսկ կոնֆերենցիան ընդունեց մի հատուկ բանաձև իրանական և չինական ռևոլյուցիաները պաշտպանելու մասին։ Չինաստանի վերաբերյալ բանաձևում ասվում էր. «կոնֆերենցիան... արձանագրում է չին ժողովրդի ռևոլյուցիոն պայքարի համաշխարհային նշանակությունը, պայքար, որը ազատագրություն է բերում Ասիային և խարխլում եվրոպական բուրժուազիայի տիրապետությունը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 17, էջ 599)։



Վ. Ի. Լենինը առաջին համաշխարհային պատերազմի ժամանակաշրջանում հատուկ նշանակություն էր տալիս ազգային-գաղութային հարցին, այն դիտելով որպես սոցիալիստական ռևոլյուցիայի ընդհանուր հարցի անբաժանելի մասը։ Վ. Ի. Լենինը դաժան պայքար էր մղում II Ինտերնացիոնալի պարտիաների լիդերների՝ սոցիալ-շովինիստների դեմ, որոնք դավաճանեցին բանվոր դասակարգի գործին և պաշտպանում էին գաղութների համար մղվող իմպերիալիստների պատերազմը։

Հանդես գալով Կոմինտերնի II կոնգրեսում՝ Վ. Ի. Լենինը ընդգծեց, որ իմպերիալիստական պատերազմն օգնեց ռևոլյուցիային. գաղութներում առաջին անգամ զինվեցին և ռազմական գործում իրոք կոփվեցին հսկայական թվով մարդիկ, որոնք լինելով զանազան երկրներում, առաջին անգամ տեսան իմպերիալիստական աշխարհը իր նողկալի մերկության մեջ։ Իմպերիալիստական պատերազմն ու նրա ծոսկալի հետևանքները լուրջ փոփոխություններ առաջացրին գաղութներում և կախյալ երկրներում, «համաշխարհային պատմության մեջ առնելով կախյալ ժողովուրդներին»։

Մարդկության ամբողջ համաշխարհային պատմության մեջ արմատական շրջադարձի սկիզբը դրեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան։ Նա նոր դարագլուխ բացեց Արևելքի ժողովուրդների կյանքում, հսկայական ազդեցություն թողնելով ազգային-ազատագրական շարժումների ծավալման վրա գաղութներում և կախյալ երկրներում։ Ռուսաստանի սոցիալիստական ռևոլյուցիան առաջին կործանիչ հարվածը հասցրեց իմպերիալիստական գաղութային սիստեմին Արևելքում, որտեղ քաղաքական պայքարի թատերաբեմ դուրս եկան ասիական բանվորներն ու աշխատավոր գյուղացիությունը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ժամանակ Ռուսաստանի աշխատավորները գաղութային ճնշման դեմ մարտնչող ասիական ժողովուրդներին ցույց տվեցին, որ ցարական ինքնակալության դաժան տիրապետության ժամանկաշրջանում բանվոր դասակարգը կարողացավ տապալել այդպիսի ուժեղ իշխանությունը և կառուցել նոր հասարակություն, որի մասին նրանք երազում են։ Այդ մեծագույն պատմական իրադարձությունը, որ տեղի ունեցավ ասիական մայր ցամաքի սահմաններից դուրս, ցնցեց Ասիայի ժողովուրդներին, որոնք պայքար էին մղում ազգային անկախության համար, և ամրապնդեց նրանց վստահությունն այն բանում, որ նրանք էլ վերջ ի վերջո հաղթանակի կհասնեն արդարության համար մղվող պայքարում, եթե նրանք պայքարեն կազմակերպված, ամբողջ համառությամբ։

Մատնանշելով Արևելքի աշխատավորության կազմակերպվածության, համերաշխության և փոխադարձ օգնության անհրաժեշտությունը՝ Վ. Ի. Լենինը հնդկական ռևոլյուցիոն ասոցիացիային ուղղված իր ողջույնի մեջ ասել է.

digitised by A.R.A.R.@

«Միայն այն ժամանակ, երբ հնդկական, չինական, կորեական, ճապոնական,
պարսկական, թյուրքական բանվորն ու գյուղացին իրար ձեռք մեկնեն և միա-
սին ընթանան դեպի ազատագրության ընդհանուր գործը, միայն այն ժամա-
նակ կապահովվի վճռական հաղթանակը շահագործողների դեմ։ Կեցցե՛ ազատ
Ասիան» (Երկեր, հատ. 31, էջ 156)։

Սոցիալիստական Հոկտեմբերը և նրա ծնունդ բանվորների ու գյուղացի-
ների աշխարհում առաջին պետությունը միջազգային նոր հարաբերություննե-
րի անկյունաքարը հանդիսացան, հարաբերություններ, որպիսիք համաշխար-
հային պատմությունը մինչ այդ չէր տեսել։ Երիտասարդ Սովետական ռես-
պուբլիկան ազդարարեց խաղաղության, բարեկամության, Արևմուտքի ու
Արևելքի բոլոր ժողովուրդների իրավահավասարության և սուվերենության
վերաբերյալ իր քաղաքականությունը։ Վ. Ի. Լենինը 1919 թվականին գրել է.
«Մենք ազգերի կամավոր միություն ենք ուզում, այնպիսի միություն... որը
հիմնված լիներ ամենալրիվ վստահության վրա, եղբայրական միասնության
պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա»
(Երկեր, հատ. 30, էջ 369)։

Սովետական կառավարությունը 1919 թվականի գարնանը ճանաչեց Աֆ-
ղանստանի սուվերեն իրավունքը և նրա հետ կնքեց իրավահավասար պայմա-
նագիր։ Նա Իրանից դուրս բերեց զորքերը, վերացրեց այն բոլոր անիրավա-
հավասար պայմանագրերը, որպիսիք կնքել էր ցարական կառավարությունը և
Իրանին վերադարձրեց կոնցեսիաները։ Սովետական Ռուսաստանը դատա-
պարտեց Թյուրքիայում գոյություն ունեցող կապիտուլյացիոն ռեժիմը և հրա-
ժարվեց այն բոլոր իրավունքներից ու արտոնություններից, որ այդ ռեժիմի
հիման վրա տրամադրվում էին օտարերկրյա տերություններին։

Արևելքի բոլոր երկրների պրոգրեսիվ հասարակությունը բարձր գնահա-
տեց ճնշված ժողովուրդների նկատմամբ բարեկամական օգնության և աջակ-
ցության սովետական քաղաքականությունը։ Ուշագրավ են Սովետական երկրի
մասին Ռաբինդրանատ Տագորի այն խոսքերը, որ գրել է նա մի նամակում
մահից առաջ. «Նրա քաղաքականությունն ազատ է դասակարգերի ու ազանդ-
ների միջև թշնամություն ծնող տարբերություններից։ Այն արագ, ապշեցուցիչ
հաջողությունները, որ ձեռք է բերել նա, իմ մեջ առաջ են բերում ուրախու-
թյան, բայց, միաժամանակ, նախանձի զգացմունքներ... Երբ ես տեսնում եմ,
որ, դեռ մի քանի տարի առաջ զարգացման միանգամայն տարբեր աստիճանի
վրա գտնվող մոտ 200 ազգություններով հանդերձ մի այլ երկրում առաջ են
գնում համաշխարհային պրոգրեսի մեջ և բարեկամության մեջ են, և երբ ես
նայում եմ իմ սեփական երկրին ու տեսնում, թե ինչպես բարձր զարգացում
ունեցող և մտածող մարդիկ գլորվում են բարբարոսության քաոսի մեջ, ես չեմ
կարող համադրել կառավարման այդ երկու սիստեմները, որոնցից մեկը հիմ-
նված է համագործակցության, իսկ մյուսը՝ շահագործման վրա»։

Սովետական երկրի արդարացի ազգային քաղաքականությունից ոգևոր-
ված՝ գաղութային ու կախյալ երկրների ժողովուրդները նոր ուժով պայքարի
մեջ մտան հանուն սոցիալական ու ազգային ազատագրության։

1917 թվականի Հոկտեմբերից հետո Արևելքի երկրներում ազգային-ազա-
տագրական շարժումը բարձրացավ որպես մի վիթխարի ցասումնալից ալիք,
որպիսին կանգնեցնել չի կարող աշխարհում և ո՛չ մի ուժ։

1918—1922 թթ. հնդկական ժողովուրդը ռևոլյուցիոն ելույթներ ունեցավ



անգլիական իմպերիալիզմի դեմ։ 1919 թվականին Չինաստանում ծավալվեց
հակաիմպերիալիստական հզոր շարժում, որը նախապատրաստեց 1924—
1927 թթ. ռևոլյուցիան։ Այդ ռևոլյուցիան հսկայական իրադարձություն էր ոչ
միայն չին ժողովրդի պատմության մեջ, այլև ամբողջ աշխարհի ճնշված ժո-
ղովուրդների ռևոլյուցիոն շարժման մեջ։ 1921 թ. ռևոլյուցիա կատարվեց Մոն-
ղոլիայում, որի շնորհիվ ստեղծվեց Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկան։

Ռևոլյուցիաները Թյուրքիայում և Իրանում, ազգային-ազատագրական
շարժումները Եգիպտոսում և Իրաքում, հոլանդական իմպերիալիզմի դեմ
ուղղված խոշոր ապստամբությունը Ինդոնեզիայում, ազատագրական պատե-
րազմը Մարոկկոյում, ապստամբությունները Սիրիայում, Կորեայում, Հնդկա-
չինում և այլ երկրներում՝ ահա գաղութային ու կախյալ երկրների ժողովուրդ-
ների ռևոլյուցիոն ելույթների ոչ լրիվ թվարկումը։

Այդ պայքարի ընթացքում աճեց և կոփվեց բանվոր դասակարգը, առաջա-
ցան առաջին պրոֆմիությունները Արևելքում։ Մի ամբողջ շարք երկրներում
ստեղծվեցին կոմունիստական պարտիաներ։ 1920 թվականին կոմունիստական
պարտիաներ կազմակերպվեցին Ալժիրում, Թունիսում, Մարոկկոյում, Իրանում,
Ինդոնեզիայում, Թյուրքիայում. 1921 թվականին՝ Չինաստանում, Եգիպտո-
սում, կոմպարտիաներ ծագեցին 1930 թվականին՝ Հնդկաչինում, 1931 թվա-
կանին՝ Ֆիլիպիններում և Մալայայում, 1933 թվականին՝ Հնդկաստանում։
Աճեց պրոլետարիատի քաղաքական գիտակցությունը, ուժեղացավ նրա պայ-
քարը ռևոլյուցիայում հեգեմոնիա ձեռք բերելու համար։

Ազգային-ազատագրական շարժումների աճման վրա մեծ ազդեցություն
ունեցան այն փոփոխություններն ու տեղաշարժերը, որոնք տեղի ունեցան
Արևելքի գաղութային և կախյալ երկրների էկոնոմիկայում և սոցիալ-քաղա-
քական հարաբերություններում երկրորդ համաշխարհային պատերազմի ըն-
թացքում և հետպատերազմյան տարիներին։

Չին ժողովրդի հերոսական պայքարն ավարտվեց նրա հաղթանակով մի-
ջազգային ռեակցիայի ուժերի դեմ. 1949 թվականին ստեղծվեց Չինական Ժո-
ղովրդական Ռեսպուբլիկան։

Աշխարհի խոշորագույն երկրներից մեկի՝ Չինաստանի ժողովրդական
ռևոլյուցիայի տրիումֆը ամենաուժգին հարվածը հասցրեց համաշխարհային
իմպերիալիզմի հիմքին և ծանր պարտության մատնեց գաղութային սիստե-
մին։ «Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հրետանային համազարկերը,— նշել է չին
ժողովրդի առաջնորդ Մաո Ցզե-դունը,— մեզ հասցրին մարքսիզմ-լենինիզմը։
Հոկտեմբերյան ռևոլյուցիան աշխարհի և Չինաստանի պրոգրեսիվ տարրերին
օգնեց կիրառելու պրոլետարական աշխարհայացքը՝ երկրի բախտը որոշելու
և իրենց սեփական պրոբլեմները վերանայելու համար։ Ընթանալ ռուսների
ուղիով, այս էր հետևությունը»։

Չինաստանից հետո պետական և ազգային անկախություն նվաճեցին
Հնդկաստանը, Բիրման, Ինդոնեզիան, Լիբանանը, Սուդանը և այլ երկրներ,
որոնք անցյալներում գաղութ են եղել։ Վերջին տասնամյակում գաղութային
կախումից ազատվեցին ավելի քան մեկ միլիարդ երկու հարյուր միլիոն մարդ,
կամ երկրագնդի բնակչության գրեթե կեսը։

Հաստատվեցին Վ. Ի. Լենինի գիտական կանխատեսումներն ու մարգա-
րեական գուշակությունները այն մասին, որ «Պայքարի ելքը վերջին հաշվով
կախված է նրանից, որ Ռուսաստանը, Հնդկաստանը, Չինաստանը և այլն

digitised by A.R.A.R.@

*կազմում են բնակչության հսկայական մեծամասնությունը։ Իսկ բնակչության հենց այդ մեծամասնությունն է, որ վերջին տարիների ընթացքում արտասովոր արագությամբ ներգրավվում է իր ազատագրման պայքարի մեջ, այնպես որ այդ իմաստով կասկածի նշույլ անգամ չի կարող լինել, թե ինչպիսի վերջնական լուծում կունենա համաշխարհային պայքարը։ Այդ իմաստով սոցիալիզմի վերջնական հաղթանակն ապահովված է միանգամայն և անպայման»,— գրել է Լենինը 1923 թվականին (Երկեր, հատ., 33, էջ 595)։*

*Հետպատերազմյան ժամանակաշրջանի համաշխարհային-պատմական իրադարձությունը իմպերիալիզմի գաղութային սիստեմի քայքայումն է։ Եթե XIX դարը Արևելքի ժողովուրդների գաղութային ստրկացման դարն էր, ապա XX դարը դարձավ գաղութարարության սիստեմի ճգնաժամի, անկման և վերացման դարը։ ՍՄԿԿ XX համագումարի բանաձևում ասված է, որ օրակարգի հարց է դարձել գաղութարարության խայտառակ սիստեմի լիակատար վերացման հարցը։ Սկսվեց Հարավ-արևելյան Ասիայի, Արաբական Արևելքի ժողովուրդների քաղաքական և տնտեսական վերելքը, Աֆրիկայի ժողովուրդները զարթոնք են ապրում, ուժեղացել են ազգային-ազատագրական շարժումները Լատինական Ամերիկայի երկրներում։ Ինչպես կանխատեսել էր Վ. Ի. Լենինը, հասավ մարդկության պատմության այն չտեսնված ժամանակաշրջանը, երբ Արևելքի ժողովուրդները ակտիվ մասնակցություն են ունենում ամբողջ աշխարհի բախտը որոշելիս, դարձել են միջազգային հարաբերությունների նոր հզոր գործոններ։*

*Մեծ Լենինը Արևելքի միլիոնավոր աշխատավորների սրտին մոտ է եղել և այդպես էլ մնում է, որովհետև նա կոչ արեց աշխատավոր և շահագործվող մասսաներին՝ ազատագրվել ստրկությունից, գնալ սոցիալիզմի հաղթանակի ուղիով։ Հայտնի չին ռևոլյուցիոներ Սուն Յաթ-սենը Վլադիմիր Իլյիչի մասին իր ելույթում հիանալի արտահայտել է Արևելքի լավագույն մարդկանց վերաբերմունքը Լենինի նկատմամբ, ասելով՝ «Համաշխարհային պատմության շատ հարյուրամյակների ընթացքում հայտնվել են հազարավոր առաջնորդներ և գիտնականներ գեղեցիկ խոստումներով, որպիսիք երբեք չեն կենսագործվել։ Դո՛ւ, Լենին, բացառություն ես։ Դու ոչ միայն ասել ու սովորեցրել ես, այլև քո խոսքերն իրականություն ես դարձրել։ Դու ստեղծեցիր նոր երկիր։ Դու մեզ ցույց տվիր համատեղ պայքարի ուղին։ Դու քո ճանապարհին հազարավոր խոչընդոտների հանդիպեցիր, որպիսիք հանդիպում են նաև իմ ճանապարհին։ Ես ուզում եմ գնալ քո ուղիով, և թեպետ իմ թշնամիները դեմ են դրան, բայց իմ ժողովուրդը դրա համար ինձ կողջունի։ Դու մեռար, երկինքը չերկարացրեց քո կյանքը, բայց ճնշված ժողովուրդների հիշողության մեջ դու կապրես դարերով, ո՛վ մեծ մարդ»։*

*Այն վիթխարի հաղթանակները, որ տարան Արևելքի ժողովուրդները, ամբողջապես արդարացրին Վ. Ի. Լենինի կանխատեսումները և հավատ են ներշնչում, որ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի ճագերի աճող ուժերը, Սովետական Միության և Ժողովրդական Չինաստանի գլխավորությամբ, իրենց շարքերում միացնելով Արևմուտքի և Արևելքի ժողովուրդներին, անպարտելի են։*

---

# ԹԱՆԿԱՐԺԵՔ ԺԱՌԱՆԳՈՒԹՅՈՒՆ

## (Ա. Ի. Գերցենի ծննդյան 145-ամյակի առթիվ)

*Հ. ՍԱԼԱԽՅԱՆ*

*Ալեքսանդր Իվանովիչ Գերցենը ռուսական առաջավոր կուլտուրայի խոշորագույն ներկայացուցիչներից մեկն է։ Նրա բազմակողմանի գործունեությունը հսկայական նշանակություն է ունեցել միջազգային ռևոլյուցիոն շարժման պատմության համար։ Գերցենը հանդես է եկել որպես պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներ, խոր փիլիսոփա, կրքոտ հրապարակախոս, տաղանդավոր գրող։ Գերցենի եռանդուն պայքարը հանուն նոր, ազատ Ռուսաստանի, հանուն աշխատավոր ժողովրդի երջանիկ ապագայի՝ իզուր չանցավ։ «Մեծարելով Գերցենին,— գրել է Վ. Ի. Լենինը 1912 թվականին «Գերցենի հիշատակին» հոդվածում,— պրոլետարիատը նրա օրինակով սովորում է ռևոլյուցիոն թեորիայի մեծ նշանակությունը.— սովորում է հասկանալ, որ ռևոլյուցիային անսահմանորեն նվիրված լինելը և ռևոլյուցիոն քարոզով ժողովրդին դիմելն ապարդյուն չի անցնում նույնիսկ այն ժամանակ, երբ ամբողջ տասնամյակներ բաժանում են ցանքը հնձից...» (Երկեր, հ. 18, էջ 20—21)։*

*Անմահ Վ. Բելինսկու հետ Գերցենը սկիզբ դրեց ռևոլյուցիոն դեմոկրատական շարժմանը Ռուսաստանում. նա պայքարեց ճորտատիրական կարգերի դեմ, իր հուժկու հարվածները հասցրեց այն հասարակական սիստեմին, որի կործանումով սկսվեց նոր դարաշրջան ռուս ժողովրդի պատմության մեջ։ Գերցենը անողոք քննադատության ենթարկեց իդեալիստական փիլիսոփայությունն ու «բուրժուական քաղաքակրթությունը», նա հարստացրեց ռուս գրականությունը գեղարվեստական փայլուն երկերով. Բելինսկու նման նա ևս կարող էր ասել իր մասին՝ «Կյանքում ես մարտիկ եմ»։*

***

*Ա. Ի. Գերցենը ծնվել է Մոսկվայում, 1812 թվականի ապրիլի 6-ին և վախճանվել է Փարիզում, 1871 թվականի հունվարի 21-ին։ Ահա պատմական այս հարուստ ու բուռն ժամանակաշրջանը՝ Հայրենական պատերազմից մինչև Փարիզյան Կոմունայի նախօրյակը—իր վառ արտացոլումն է գտել նրա բազմաթիվ գեղարվեստական և հրապարակախոսական աշխատություններում։ Դեռևս պատանի Գերցենը տեսել և զգացել է ինքնակալական ռեժիմի բիրտ և տմարդի էությունը։ Նրա առաջին ուսուցիչներն ու բարեկամներն են եղել ռուսական և համաշխարհային գրականության լավագույն երկերը։ Գերցենը դաստիարակվել է Ռիլեևի և Պուշկինի, Բայրոնի և Շիլլերի հումանիստական*



digitised by A.R.A.R.@

տրադիցիաների ոգով, նա միշտ հավատարիմ է մնացել ժողովուրդների ազատագրման և բարեկամության վսեմ գաղափարներին։

1825 թվականի դեկտեմբերի 14-ի ապստամբությունը Պետերբուրգում, թնդանոթների որոտը Սենատի հրապարակում խոր արձագանք գտան Գերցենի հոգում։ Այս պատմական դեպքից երեք տարի անց իր ընկեր և զինակից Նիկոլայ Օգարևի հետ միասին նա երդվեց նվիրաբերել իր կյանքը հասարակ մարդկանց բախտին, երդվեց պայքարել ընդդեմ շահագործողների և ճորտատերերի, և երբեք չդավաճանեց իր տված խոսքին։

Գերցենը բարձրացրեց ռևոլյուցիոն դրոշը Ռուսաստանում, չսարսափելով ցարական իշխանության հետապնդումներից, բանտից և աքսորից։

1829 թվականին նա ընդունվեց Մոսկվայի համալսարանը, որը հանդիսանում էր երկրի այն ժամանակվա առաջավոր մտքի կենտրոնը։ Շուտով Գերցենը իր շուրջը համախմբեց ազատամիտ երիտասարդությանը, որին հուզում էին քաղաքական և փիլիսոփայական հրատապ հարցերը։ Արդեն այդ շրջանում Գերցենի համար գիտությունն ու ռևոլյուցիոն պրոպագանդան անքակտելի միասնություն էին կազմում։

1833 թվականին ավարտելով համալսարանը, Գերցենը ծրագրում է հրատարակել պատմական, գրական և փիլիսոփայական ամսագիր, որի հիմնական խնդիրը պետք է լիներ՝ հաղորդակից դարձնել հասարակության լայն խավերը Ռուսաստանի հոգևոր և պրակտիկ կյանքի կարևորագույն կողմերին։ Սակայն նրան չհաջողվեց իրականացնել իր նպատակը. 1834 թ. հուլիսին Գերցենը բանտարկվեց և աքսորվեց Պերմ, ապա Վյատկա ու Վլադիմիր։

Աքսորավայրում Գերցենը էլ ավելի մոտիկից ծանոթացավ ժողովրդի կյանքին, հարստացրեց իր գիտելիքներն ու փորձը, անմիջականորեն շփվեց «բյուրոկրատական աշխարհի» հետ, և նրա քաղաքական համոզմունքները դարձան առավել հստակ և որոշակի։ Գերցենի ատելությունը ցարիզմի նկատմամբ չմարեց. ընդհակառակը, նա հնարավորություն ստացավ սեփական աչքերով տեսնելու, թե ժողովրդի շահագործման ինչպիսի ձևեր և միջոցներ են մշակել «Ռուսաստանի տերերը», թե որքան խորն է ու մեծ գյուղացիության ատելությունը դեպի շահագործողները։ Եվ այդ տարիներին (1834—1839) վերջնականապես ձևավորվեցին Գերցենի ռևոլյուցիոն աշխարհայացքի հիմնական սկզբունքները, որոնք իրենց արտահայտությունը գտան նրա մի շարք երկերում։

1842—1843 թթ. Գերցենը ստեղծեց իր առաջին խոշոր փիլիսոփայական աշխատությունը՝ «Դիլետանտիզմը գիտության մեջ»։ Այս գործի պաթոսը, չնայած նրանում տեղ գտած որոշ իդեալիստական սահմանումների, իր էությամբ մատերիալիստական է։ Գերցենը առանձնապես շեշտում է գիտական աշխարհայացքի մշակման կենսական անհրաժեշտությունը և ելնելով այս սկզբունքից համարձակ քննադատության է ենթարկում իդեալիստական, սուբյեկտիվիստական փիլիսոփայությունը, դիլետանտ մտածողներին, որոնք ժխտում էին գիտության օրենքների օբյեկտիվ նշանակությունն ու բնույթը։ Գիտությունը, ըստ Գերցենի, պիտի դառնա ժողովրդական զանգվածների սեփականություն, միայն այդ դեպքում նա կկատարի իր ակտիվ և վերափոխիչ դերը կյանքում։

Իր «Բնության ուսումնասիրման վերաբերյալ նամակներ» (1844—1846 թթ.) աշխատության մեջ Գերցենը քննարկում է փիլիսոփայության և բնագիտության փոխհարաբերության հարցը։ Ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, «Բնության ուսումնասիրման վերաբերյալ նամակներ»-ից առաջինը,— «էմպիրիա և իդեալիզմ»,— որը գրված է 1844 թվականին, ցույց է տալիս մեզ մի մտածող, որը, մինչև իսկ այժմ, մեկ գլխով բարձր է ժամանակակից անթիվ-անհամար բնախույզ-էմպիրիկներից և ներկայիս բյուր-բյուրավոր փիլիսոփաներից, իդեալիստներից ու կիսաիդեալիստներից։ Գերցենը ընդհուպ մոտեցավ դիալեկտիկական մատերիալիզմին և կանգ առավ պատմական մատերիալիզմի առաջ» (Երկեր, հ. 18, էջ 13)։

Գերցենը մատերիալիստորեն է լուծում փիլիսոփայության հիմնական հարցը, ընդունելով նյութի առաջնայնությունը, աշխարհի օբյեկտիվ ռեալականությունը, կեցության և գիտակցության միասնությունը։ Ըստ Գերցենի բնությունը գոյություն ունի գիտակցությունից անկախ, և դրանում համոզվելու համար անհրաժեշտ է բնությունն ուսումնասիրել իր զարգացման ընթացքում։ Մեծ մտածողը հերքում է իդեալիստական փիլիսոփայության սկզբունքները, քանի որ նրանք չեն նպաստում իրականության արմատական վերափոխմանը, հակադիր են իսկական գիտությանը և, ի վերջո, հանգում են կրոնին։ Գերցենի համար մատերիալիստական սիստեմը իրավացի և ճշմարիտ է հենց այն պատճառով, որ հենվում է կյանքի կոնկրետ փաստերի և երևույթների վերլուծության և գնահատման վրա։

Քառասունական թվականներին Գերցենը գրում է իր լավագույն գեղարվեստական երկերը՝ «Ո՞վ է մեղավոր» (1841—1846 թթ.), «Գող-կաչաղակը» (1846 թ.), «Բժիշկ Կրուպովը» (1846 թ.) և այլն։

«Մտքի հզորությունը,— նրա տաղանդի գլխավոր ուժն է»,—գրել է Գերցենի մասին Բելինսկին։ Եվ հիրավի, Գերցենի յուրաքանչյուր ստեղծագործություն ներծծված է հումանիստական բարձր գաղափարով, այն հուզում է ընթերցողին, շարժում նրա միտքը, սեր ու կարեկցանք առաջացնում դեպի հասարակ, աշխատավոր մարդը։ Գերցենի «մտքի հզորությունը» պայմանավորել է նրա վեպերի և վիպակների ներգործող ուժը, ակտիվ բնույթը, ապահովել է նրանց հարատևությունը ռուս գրականության մեջ։ Պատահական չէ, որ Լև Տոլստոյը իր կյանքի վերջին տարիներին անդրադարձել է Գերցենի ստեղծագործություններին և խորհուրդ է տվել ընթերցել Գերցենին և սովորել նրանից ճշմարտացիորեն պատկերել կյանքը։ Ավելին, նույն Տոլստոյը «Հարություն» վեպում որոշակիորեն օգտագործել է Գերցենի ստեղծագործական սկզբունքներից շատերը, նախ և առաջ այն բարձր «հրապարակախոսական ոգին», որը բնորոշ է «Ո՞վ է մեղավոր», «Գող կաչաղակը», ինչպես նաև Գերցենի այլ երկերին։

Ո՞րն է Գերցենի նշված գործերի պատմական և գեղարվեստական նշանակությունը։

Հիշենք «Ո՞վ է մեղավոր» վեպը։ Այստեղ արծարծված են բազմաթիվ թեմաներ՝ սիրո և ընտանիքի, ռուսական ինտելիգենցիայի ճակատագրի, «ավելորդ մարդու» և ռազնոչին-դեմոկրատի, կնոջ ազատագրման և անձի իրավունքների։ Սակայն ամենակարևորը և ամենաէականը՝ ճորտատիրական կարգերի հակաժողովրդական էության պրոբլեմն է, որը վեպի բուն բովանդակությունն է կազմում։ Ռուս գրականության լավագույն ստեղծագործու-



digitised by A.R.A.R.@

թյունների մեջ՝ սկսած Ռադիշչևից մինչև Լև Տոլստոյը՝ ճշմարտացիորեն պատկերվել են այդ կարգերը, խարազանվել կալվածատերերի դաժանությունները ու վայրագությունները: Անցյալ դարի քառասունական թվականներին Գերցենը առաջիններից մեկն էր, որ բարձրացրեց իր կրքոտ ձայնը ի պաշտպանություն ժողովրդի, որին նա սիրում էր իր հոգու ամբողջ ուժով: Ընթերցելով վեպը մենք ծանոթանում ենք Դունյա Բարբաշի, Սոֆիի և ապա՝ Լյուբոնկայի, Կրուցիֆերսկու, Բելտովի և այլ հերոսների ողբերգական ճակատագրին: Մեր առաջ հառնում է ճորտատիրական իրավակարգի զզվելի պատկերը, մենք զգում ենք, որ հեղինակի խոսքերը ոչ թե առանձին այլանդակությունների, այլ՝ ողջ սիստեմի անարդարության մասին է: Այստեղ է, որ Գերցենի գիրքը սկզբունքորեն տարբերվում է ռուս այլ գրողների՝ այդ թվում նաև Գոգոլի և Տուրգենևի գրքից: Գերցենը չի ընդունում գյուղացիների և կալվածատերերի միջև հաշտության որևէ հնարավորություն: Ամենայն սրությամբ նա բարձրացնում է ճորտատիրական կարգերի ոչնչացման անհրաժեշտության հարցը ռևոլյուցիայի միջոցով: Կալվածատերերը և գյուղացիները՝ անհաշտ և հակամարտ ուժեր են — սա է Գերցենի համոզմունքը: Եվ իսկապես կարո՞ղ է արդյոք գոյություն ունենալ ընդհանրության որևէ եզր Նեգրովի, Կարպ Կոնդրատևիչի և նրանց նման «գազան-ճորտատերերի» ու շահագործվող ժողովրդի միջև: Չէ՞ որ այդ դաժան կալվածատերերը ճմլում են մարդկային արժանապատվությունը, այլանդակում մարդու հոգին, ոչնչացնում այն ամենը, ինչ ազնիվ է, բարի ու գեղեցիկ: Նեգրովի կերպարի մեջ մարմնացած են կալվածատերերի տիպական գծերը, նրա «փիլիսոփայությունը»՝ ճորտատիրական դասակարգի «փիլիսոփայությունն» է, նրա շահագործման ու ոտնահարման միջոցներն ու ձևերը՝ նիկոլաևյան էպոխայի և այժմյան ամերիկյան պլանտատորների շահագործման միջոցներն ու ձևերն են: Նեգրովների նմանները դժբախտացնում են բազմաթիվ հասարակ և ազնիվ մարդկանց, որոնք դառնում են բիրտ կալվածատիրոջ խաղալիքը և դեն են շպրտվում, երբ Նեգրովը այդ կամենում է:

«Ո՞վ է մեղավոր» վեպում զգալի տեղ է գրավում «ավելորդ մարդու»՝ Բելտովի կերպարը: Անհրաժեշտ է նշել, որ ռուս գրականությունը մինչև Գերցենը արդեն անդրադարձել էր այս տիպի հերոսների ստեղծմանը: Պուշկինի Եվգենի Օնեգինը, Լերմոնտովի Պեչորինը «բարձր հասարակության» կողմից մերժված այն տաղանդավոր անձնավորություններն էին, որոնք չէին ցանկանում մերվել «արիստոկրատական ամբոխին», չէին ընդունում վերջինիս շատ և շատ «բարոյական» սկզբունքները, թեև, միաժամանակ, անզոր էին ամբողջովին խզելու իրենց կապերը նույն այդ հասարակության հետ: Հետագա տասնամյակներում «ավելորդ մարդու» կենսագրությունը հարստանում և կերպարանափոխվում է ռուս դասական հեղինակներ՝ Տուրգենևի, Գոնչարովի, Շչեդրինի երկերում: Գերցենի Բելտովը, այդ գալերեայի ամենացայտուն ներկայացուցիչներից մեկն է: Հեղինակը առանձնապես շեշտում է իր հերոսի ողբերգական էությունը, ցույց տալով, թե ինչպես ժամանակը, կյանքի աղավաղված պայմանները կործանում են փայլուն ընդունակությունների տեր Բելտովին: Ստանալով հումանիտար կրթություն, ոգևորվելով 18-րդ դարի լուսավորական փիլիսոփայության ազնիվ գաղափարներով, Բելտովը աշխատելու անհագուրդ պահանջ է զգում, ցանկանում է պիտանի գործ կատարել հարա-



զատ երկրի և ժողովրդի համար: Սակայն Բելտովի փայլուն իդեալները խորտակվում են՝ հենց որ նա շփվում է դաժան իրականության հետ: Հերոսը անկարող է ըմբռնել ռեալ կյանքի հակասությունները, գտնել ուղիներ՝ այդ հակասությունները հաղթահարելու համար: Սիրելով Բելտովին, Գերցենը միաժամանակ զգուշացնում է իր ժամանակակիցներին, թե ինչպիսի տխուր հետևանքների են հանգեցնում մարդուն «վերացական ռոմանտիկան», պրակտիկ և կենսական գիտելիքների բացակայությունը: Ի վերջո, անշուշտ, Բելտովն էլ ճորտատիրական կարգերի զոհերից մեկն է և նրա՝ «ավելորդ մարդ» դառնալու պատմությունը՝ անողոք դատավճիռ է Նեգրովների հասցեին:

«Ո՞վ է մեղավոր» վեպի գաղափարական բովանդակության ճիշտ գնահատման համար կարևոր նշանակություն ունեն Դմիտրի և Լյուբոնկա Կրուցիֆերսկիների կերպարները: Գավառական բժշկի որդի Դմիտրի Կրուցիֆերսկին վաղ հասակից ճանաչել է կյանքի դառնությունները: Նա համեստ, լռակյաց, հնազանդ մարդ է, Բելտովի հետ համեմատած՝ խղճուկ և անօգնական մի անձնավորություն: Կրուցիֆերսկին կյանքը ընկալում է պասիվ կերպով, առանց ավյունի, առանց բողոքի զգացմունքի: Այդ պլեբեյի մեջ Գերցենը չտեսավ կյանքը վերափոխելու ընդունակ ուժ. այս իսկ պատճառով Վ. Գ. Բելինսկին, որը, ինչպես հայտնի է, շատ բարձր է գնահատել Գերցենի տաղանդը, լուրջ քննադատական դիտողություններ արեց «Ո՞վ է մեղավոր» վեպի հեղինակին, գտնելով, որ առաջնությունը պիտի տրվեր ոչ թե ազնվական Բելտովին, այլ ռազնոչին ինտելիգենտ Կրուցիֆերսկուն: 19-րդ դարի քառասունական թվականներին Գերցենը չկարողացավ ճիշտ գնահատել ռազնոչինցիների պատմական դերն ու նշանակությունը Ռուսաստանում, քանի որ այդ ժամանակի, ինչպես նշում է Վ. Ի. Լենինը, ազատագրական շարժումը ներկայացված էր նախ և առաջ ռևոլյուցիոն ազնվականներով, իսկ ռազնոչին դեմոկրատները դեռևս լրիվ չէին գիտակցում իրենց տեղը հասարակական կյանքում: Բելինսկու դիտողությունը ապարդյուն չանցավ Գերցենի համար. այն օգնեց նրան հետագայում տեսնելու կրուցիֆերսկիների քաղաքական գիտակցության բուռն աճը և պատկերելու նրանց՝ որպես իսկական, ակտիվ, գործող և պայքարող հերոսների:

Արդեն այս վեպում Գերցենը փորձ է կատարում ստեղծելու լիարժեք դրական հերոսի կերպար. դա — Լյուբոնկան է, որի մասին Գորկին գրել է. «Նա առաջին կինն է ռուս գրականության մեջ, որ գործում է որպես ուժեղ և ինքնուրույն մարդ»:

«Սերը,— գրում է Գերցենը, «Մի դրամայի կապակցությամբ» հոդվածում,— կյանքի մի մոմենտ է, բայց ոչ մարդու ամբողջ կյանքը». կինը պիտի ունենա նույնպիսի իրավունքներ, ինչ որ տղամարդը, կինը չի կարող բավարարվել միայն ընտանեկան երջանկությամբ, խաղաղ և ապահով կյանքով, եթե ամուսինների կյանքը պարփակված է ընտանեկան օջախի սահմաններում, ապա այդպիսի երջանկությունը չի կարող կայուն և հարատև լինել: Լյուբոնկան պայքարում է մարդկային լիարժեք և բազմապիսի իրավունքների համար, նա փորձում է Դմիտրու մեջ գտնել այն հենարանը, որը հնարավորություն կտա նրան բարձրանալու որպես քաղաքացուհու, որպես մեծատառով մարդու: Սակայն այդպիսին չէր Կրուցիֆերսկին: Եվ Լյուբոնկային թվում է, թե այդ հատկությունով օժտված է Բելտովը: Սակայն հերոսուհին այս

digitised by A.R.A.R.@

անգամ ևս սխալվում է և նրա ողբերգությունը էլ ավելի է խորանում, հանգելով դրամատիկական վախճանի։

Ռուս մարդը ունի հոգևոր անսպառ կարողություններ — այսպիսին է ընթերցողի եզրակացությունը՝ Լյուբոնկայի հետ ծանոթանալուց հետո։ Մենք ավելի ենք համոզվում դրանում՝ անդրադառնալով «Գող կաչաղակը» վիպակին, որի սյուժեի հիմքում ընկած է հանճարեղ դերասան Միխայիլ Շչեպկինի բանավոր պատմվածքներից մեկը։ Երեք զրուցակիցներ խոսում են ռուս կնոջ ճակատագրի մասին։ Առաջինը՝ սլավյանոֆիլ է, նա իդեալականացնում է այն ամենը, ինչ «զուտ ռուսական է», ինչ դարերի խորքում ծնունդ է առել Ռուսաստանում և այդ իսկ պատճառով՝ անփոփոխ և կայուն է. սլավյանոֆիլի կարծիքով ռուս կնոջ կոչումն է «նստել տանը», ապրել հնադարյան կյանքով, չձգտել քաղաքական և հոգևոր ազատության։ Երկրորդ զրուցակիցը՝ տիպիկ կոսմոպոլիտ եվրոպացի է։ Սրտաքուստ նա կարծես հակադրվում է սլավյանոֆիլին, ընդգծելով ռուսական ազգային կուլտուրայի և ազգային նախապաշարումների սահմանափակությունը։ Պետք է ամեն ինչում նմանվել Եվրոպային,— պնդում է նա,— այլապես անհնարին է ստեղծել արվեստի մնայուն արժեքներ։ Գերցենը ցույց է տալիս, որ իրականում այս երկու զրուցակիցների կարծիքներն էլ նույնն են, քանի որ և՛ սլավյանոֆիլը, և՛ կոսմոպոլիտ եվրոպացին ոչ մի հավատ չեն տածում հասարակ մարդկանց հոգևոր ունակությունների և կարողությունների նկատմամբ։ Իրենց դատողություններով նրանք շեղում են հասարակությունը ռուս մարդու, հատկապես ռուս կնոջ ողբերգական վիճակի բուն պատճառներից։ Եվ միայն երրորդ զրուցակիցն է պարզ ու որոշակի խոսում այդ պատճառների մասին, վերադարձնելով ընթերցողներին «Ո՞վ է մեղավոր» վեպի քաղաքական պրոբլեմատիկային։ Ճորտատիրական հասարակարգի մեջ պետք է որոնել դժբախտությունների բոլոր արմատները, և քանի այդ հասարակարգը գոյություն ունի Ռուսաստանում, կկործանվեն վիպակի հերոսուհու նման տաղանդավոր, փայլուն դերասանուհիները — ահա այս է Գերցենի եզրակացությունը, որի ռևոլյուցիոնությունը ակներև է։

Ահա թե ինչու Ռուսաստանի ռևոլյուցիոն դեմոկրատիան ի դեմս Բելինսկու, այնքան բարձր գնահատեց «Գող-կաչաղակը» վիպակը և, ընդհակառակը, լիբերալներն ու պահպանողականները փորձեցին ամորձատել երկի հարուստ իդեական բովանդակությունն ու նպատակասլացությունը։

Երբ 1847 թվականին «Սովրեմեննիկ» ամսագրի իններորդ գրքում տպագրվեց Գերցենի «Բժիշկ Կրուպով» վիպակը, նրա հեղինակը արդեն ընդմիշտ հեռացել էր Ռուսաստանից և գտնվում էր Եվրոպայում։ Հրաժեշտ տալով հայրենիքին, Գերցենը, սակայն, չէր «փախչում» նրանից, նա լի էր վճռականությամբ՝ նվիրաբերելու իր ուժերը սիրելի Ռուսաստանի ազատագրման մեծ և հերոսական գործին. ռուս ժողովրդի ճակատագիրը մնում էր հայրենասեր գրողի ուշադրության կենտրոնում։ Տարիներ հետո, 1864 թ. Գերցենը գրել է. «փշխող առանցքը, որի շուրջը պտտվել է մեր կյանքը՝ մեր վերաբերմունքն է դեպի ռուս ժողովուրդը, հավատն ու սերը դեպի նա, նրա բախտի կերտմանը գործնականորեն մասնակցելու մեր ցանկությունը»։

* * *

Գերցենի կյանքի 23 տարիները՝ սկսած 1847 թվականի հունվարից մինչև 1870 թվականի հունվարը՝ անցան էմիգրացիայում. դա որոնումների, անուրջ-



ների կործանման և, միաժամանակ, ռևոլյուցիոն աշխարհայացքի հետագա զարգացման և կոփման ժամանակաշրջան հանդիսացավ Գերցենի համար։ Արևմտյան Եվրոպայում Գերցենը ստեղծեց բազմաթիվ նոր աշխատություններ, այդ թվում հանրահայտ «Նամակներ Ֆրանսիայից և Իտալիայից» (1847—1852 թթ.), «Այն ափից» (1850 թ.), «Եղելություններ և խոհեր» (1852—1868 թթ.) և այլն։ Լոնդոնում 1855 թվականից Գերցենը սկսեց հրատարակել «Պոլյարնայա զվեզդա» ալմանախը, իսկ 1857 թվականի հուլիսի 1-ին լույս տեսավ «Կոլոկոլ» թերթի առաջին համարը։ Այս հրատարակությունները հսկայական դեր խաղացին համաշխարհային ռևոլյուցիոն մտքի զարգացման մեջ։ «Պոլյարնայա զվեզդայում» Գերցենը հանդես էր գալիս հրապարակախոսական սուր հոդվածներով, որոնց նպատակն էր մոբիլիզացնել ռուս ժողովրդի ուժերը ճորտատիրական կարգերի դեմ մղվող պայքարում։ «Ամպերը անցնում են, աստղերը՝ մնում»,— գրել է Գերցենը, արտահայտելով այն միտքը, որ լավագույն մարդկանց ազատասեր ձգտումները շարունակում են ապրել ժողովուրդների գիտակցության մեջ։ «Կոլոկոլ» թերթում Գերցենը սիստեմատիկորեն տպագրում էր հարուստ, բովանդակալից նյութեր՝ նվիրված Ռուսաստանում գոյություն ունեցող վիճակին։ Ինչպես նշել է Լենինը, «Գերցենը արտասահմանում ստեղծեց ռուսական ազատ մամուլ—սա նրա մեծ ծառայությունն է։ «Полярная звезда»-ն բարձրացրեց դեկաբրիստների տրադիցիան։ «Колокол»-ը (1857—1867) սարի պես կանգնեց գյուղացիների ազատագրման համար։ Ստրկական լռությունը խախտվեց» (Երկեր, հ. 18, էջ 16—17)։

Մեկնելով Եվրոպա, Գերցենը հուսով էր, որ այնտեղ կտեսնի հարմոնիկ զարգացող հասարակություն, ծաղկող գիտություն և արվեստ, մարդու իսկական ազատություն. նա այն ժամանակ չէր հասկանում, որ լուսավորիչների կողմից հռչակված «բանականության թագավորությունը» իրականում լոկ բուրժուազիայի իդեալականացված թագավորություն էր, որի հիմքն էր կազմում բուրժուական սեփականությունը։ Ականատես դառնալով 1848 թվականի Ֆրանսիական ռևոլյուցիայի դեպքերին, Գերցենը շուտով ազատագրվեց իր որոշ սխալ պատկերացումներից։ «Նամակներ Ֆրանսիայից և Իտալիայից» գրքում Գերցենը անողոք քննադատության ենթարկեց բուրժուական աշխարհը բուրժուաների՝ այդ «ճարպակալված Ֆիգարոների» վարձու դեմոկրատիան, այլասերված արվեստը, դավաճանական պրակտիկան։ Մեծ խանդավառությամբ էր պատմում Գերցենը ֆրանսիական պրոլետարիատի հերոսամարտերի մասին, Փարիզի հասարակ մարդկանց մասին, որոնք գրոհով գրավեցին թագավորական պալատը՝ բացականչելով «կեցցե ռեսպուբլիկան»։ Գերցենը տեսնում է այժմ երկու Ֆրանսիա, երկու Փարիզ, ինքնագոհ և բարոյազուրկ քաղքենի բուրժուաների Ֆրանսիա, և աշխատավորների, աղքատների, հոգով մաքուր և բարձր հայրենասերների Ֆրանսիա։ «Պայքարը սկսվել է,— գրում է Գերցենը,— ով կհաղթի՝ դժվար չէ կռահել—վաղ թե ուշ կհաղթի նորը։ Այդպիսին է պատմության ուղին»։

Ֆրանսիական պրոլետարիատի պարտությունը 1848 թվականի հունիսին ցնցեց Գերցենին։ Այստեղ է, որ սկիզբ է առնում նրա հոգևոր դրաման։ Վ. Ի. Լենինը տվեց այս երևույթի խորը գիտական բացատրությունը. «Նա այն ժամանակ դեմոկրատ էր, ռևոլյուցիոներ, սոցիալիստ։ Բայց նրա «սոցիալիզմը» պատկանում էր բուրժուական և մանր-բուրժուական սոցիալիզմի՝

digitised by A.R.A.R.@

48 թվականի դարաշրջանի այն անհամար ձևերի և տարատեսակությունների թվին, որոնց վերջնականապես սպանեցին հունիսյան օրերը... Գերցենի հոգևոր կրախը, նրա խոր սկեպտիցիզմը ու պեսիմիզմը 1848 թվականից հետո սոցիալիզմի վերաբերմամբ բուրժուական պատրանքների կրախն էր։ Գերցենի հոգևոր դրաման ծնունդն ու արտացոլումն էր համաշխարհային պատմական այն դարաշրջանի, երբ բուրժուական դեմոկրատիայի ռևոլյուցիոնությունն արդեն մահանում էր (Եվրոպայում), իսկ սոցիալիստական պրոլետարիատի ռևոլյուցիոնությունը դեռևս չէր հասունացել» (Երկեր, հ. 18, էջ 13—14)։

Գերցենի սկեպտիցիզմը և պեսիմիզմը, որի մասին խոսում է Լենինը, առանձին ուժով հանդես եկան նրա «Այն ափից» գրքում։ Ամենայն պնդությամբ և անմիջականությամբ Գերցենը պատմում է իրեն տանջող հակասությունների մասին, խոստովանում, թե որքան ծանր է զիտակցել սեփական մոլորությունների և պատրանքների դաժան կործանումը։ Գերցենի հիասթափությունը ռևոլյուցիայից այնքան մեծ էր, որ նա այս գրքում (հատկապես նրա գերմանական հրատարակության մեջ) նույնիսկ տարակուսանք է հայտնում ժողովրդի ստեղծագործական ուժերի դրսևորման հնարավորությունների մասին։ Կարո՞ղ է արդյոք աշխատավոր ժողովուրդը միաձուլել իր պայքարը առաջավոր ռևոլյուցիոն մտքի բեղմնավոր աշխատանքի հետ։ Այս հարցին Գերցենը բացասական պատասխան է տալիս «Այն ափից» գրքում։ Եվ ահա նա որոնում է ելքի նոր ուղիներ։ Նրան թվում է, թե սոցիալիզմին հասնելու միակ միջոցը՝ «ռուսական ձևն է», այն է՝ գյուղացիներին հողի հետ միասին ազատագրելու ձևը։ Իհարկե, դա լոկ «գեղեցկահոգի ֆրազ էր», «բարեմիտ երազանք», որի պատմական սահմանափակության մասին բազմիցս խոսել է Լենինը։

Սակայն որքան էլ խորը լիներ Գերցենի հոռետեսությունը, նա երբեք չանցավ կապիտուլյանտների բանակը և չքարոզեց հաշտության գաղափարը, ինչպես այդ անում էին եվրոպական տարբեր տիպի «սոցիալիստները»։ «Լավ է զոհվել ռևոլյուցիայի հետ,— գրել է Գերցենը,— քան փրկություն որոնել ռեակցիայի անկելանոցում»։ Գերցենի տատանումները պայմանավորված էին նրա կողմից որոշ պատմական իրադարձությունների ոչ ճիշտ ընկալմամբ։ Այսպես, օրինակ, գյուղացիական ռեֆորմին նախորդող տարիներին, հատկապես 50-ական թվականների վերջին, Գերցենը հույսեր էր կապում «լիբերալ» թագավոր Ալեքսանդր երկրորդի հետ, կարծելով թե նա իսկապես ցանկանում է ազատագրել և երջանկություն բերել ռուս ժողովրդին։ Գերցենի այս տիպի պատրանքները սուր կերպով քննադատեցին Չերնիշևսկին և Դոբրոլյուբովը։ Վերջինս «Ռուս մարդ» ստորագրությամբ նամակ ուղղեց Գերցենին, զգուշացնելով, որ «շուտով Ալեքսանդրը ցույց կտա իր Նիկոլայան ատամները», որ իսկական հայրենասերի պարտքն է ոչ թե աղոթքի կոչել ժողովրդին, այլ՝ կացնի, վճռական և անձնազոհ պայքարի։ Գերցենը չէր կարող չունկնդրել իր բարեկամների և զինակիցների խոսքին։ Ծավալվող իրադարձությունները նրան ավելի ու ավելի համոզում էին, որ ցարական ինքնակալության հետ չի կարելի կապել ոչ մի բարի հույս, որ ազատությանը հասնելու միակ ճանապարհը՝ ռևոլյուցիոն պայքարն է։ Երբ հրապարակվեց գյուղացիական ռեֆորմի մանիֆեստը, երբ ցարական ոստիկանները Բեզդնա գյուղում կոտորեցին 50 գյուղացիների և մահապատժի ենթարկեցին նրանց պարագլուխ Անտոն Պետրովին, երբ բանտարկվեցին Չերնիշևսկին և նրա համախոհները,



Գերցենը թոթափեց իր ուսերից պատրանքների բեռը և, ինչպես Լենինն է
նշում, անբեկյուղ անցավ ռևոլյուցիոն դեմոկրատիայի կողմը՝ ընդդեմ լիբե-
րալիզմի։ Հենց այդ ժամանակ Գերցենը տեսավ բուն Ռուսաստանում ռևո-
լյուցիոն ժողովրդին, և ողջունեց նրա հերոսական պայքարը։ Գերցենը վճռա-
կանորեն խզեց իր կապերը բոլոր տիպի շինծու «ժողովրդասերների» հետ և
իր հայացքը դարձրեց դեպի Մարքսի ղեկավարած Ինտերնացիոնալը։

Գերցենի գեղարվեստական ստեղծագործության գագաթն է «Եղելություն-
ներ և խոհեր» աշխատությունը, որն ունի իր առանձնահատուկ տեղը ռուսա-
կան և համաշխարհային գրականության պատմության մեջ։ «Եղելություններ
և խոհեր»-ը մեծ ընդգրկումների մոնումենտալ գիրք է։ Քայլ առ քայլ Գերցե-
նը ծանոթացնում է ընթերցողներին պատմության կարևորագույն դրվագներին,
որոնց ականատեսն ու մասնակիցն է եղել ինքը։ Ահա Ռուսաստանը 1812
թվականի Հայրենական պատերազմի շրջանում։ Գերցենը հաղորդում է այն
մեծ ոգևորությունը, որով տոգորված էին հասարակության առաջավոր մար-
դիկ՝ ապագա դեկաբրիստները, պաշտպանելով իրենց հայրենիքի ազատու-
թյունն ու անկախությունը։ Գրքի առաջին էջերից արդեն նշմարվում է Գեր-
ցենի իսկական հերոսը — ռուս ժողովուրդը, իր հարուստ և անկրկնելի ներք-
նաշխարհով, բարոյական բարձր հատկություններով, անսահման նվիրվածու-
թյամբ հայրենիքին։ Մեծ տեղ է գրավում Գերցենի գրքում 30—40-ական
թվականների ռուս առաջավոր ինտելիգենցիայի քաղաքական և հոգևոր կեն-
սագրությունը։ Ընթերցողի առաջ հառնում են Բելինսկու, Գրանովսկու, Պո-
լեժաևի, Օգարևի, Սազոնովի սքանչելի կերպարները։ Մենք զգում ենք, թե
ինչպես տարեց տարի աճել է այս մարդկանց մեջ այն խոր համոզմունքը, որ
նրանք կոչված են վերափոխելու կյանքը, երջանկացնելու Ռուսաստանը։

Բացառիկ ուժով է կերտված Բելինսկու կերպարը։ Գերցենը ընդգծում է
մեծ ռևոլյուցիոների և քննադատի ակտիվ էներգիան, մատերիալիստական
աշխարհայացքը, համոզմունքների սկզբունքայնությունը, մտածելակերպի
ինքնուրույնությունը, և անհաշտությունը՝ գաղափարական թշնամիների
նկատմամբ։ «Այդ ամաչկոտ մարդու,— գրում է Գերցենը Բելինսկու մա-
սին,— այդ վտիտ մարմնի մեջ ապրում էր հզոր, գլադիատորական բնավորու-
թյուն։ Այո, նա ուժեղ մարտիկ էր, նա չէր կարողանում քարոզել, սովորեց-
նել, նրան հարկավոր էր վիճաբանություն։ Առանց առարկության, առանց
գրգռման նա լավ չէր խոսում, բայց երբ նա իրեն զգում էր խոցված, երբ
դիպչում էին նրա թանկագին համոզմունքներին, երբ նրա երեսի մկաններն
սկսում էին դողդողալ և ձայնը կտրվել, այնժամ պետք էր տեսնել նրան. նա
հովազի նման նետվում էր հակառակորդի վրա, պատառոտում, մաս-մաս էր
անում նրան, դարձնում նրան ծիծաղելի, դարձնում նրան ողորմելի և զուգըն-
թացաբար արտասովոր ուժով, արտասովոր պոեզիայով զարգացնում իր
մտքերը»։

Նույնպիսի սիրով է պատկերել Գերցենը Եվրոպայի առաջավոր մարդ-
կանց, հատկապես իտալական ժողովրդի հերոս Գարիբալդիին։ Գերցենի սերը
վերածվում էր անհուն ատելության, լիրիզմը՝ սարկազմի, անմիջական ջեր-
մությունը՝ սուր և անողոք հեգնանքի, երբ նա խոսում էր Նիկոլայ առաջինի
կամ Արակչեևի, Ռոդշիլդի, կամ Կավենյակի մասին։

Գերցենի հիշողությունները հուզում են ընթերցողներին իրենց խոր ան-

digitised by A.R.A.R.@

կեղծությամբ. այդ հիշողությունների դրական հերոսը ռևոլյուցիոներների այն սերունդն է, որի պայծառ ներկայացուցիչներից մեկն էր ինքը՝ հեղինակը: Իրական դեպքերի զարգացման տրամաբանությունը հանգեցրեց Գերցենին այն ճշմարիտ եզրակացությանը, որ շուտով կբարձրանան ապագա փոթորիկի երիտասարդ շտուրմանները: Այս լավատեսական ոգով է ներթափանցված Գերցենի գիրքը՝ պատմական մի ամբողջ դարաշրջանի այդ փայլուն տարեգրությունը:

Մեզանից մոտ մեկ դար առաջ Գերցենը անարգանքի սյունին գամեց բուրժուական քաղաքագետներին, որոնք փորձում էին մոլորեցնել աշխարհի ժողովուրդներին կեղծ ու դատարկ ֆրազներով, ասես կանխագուշակելով ժամանակակից իմպերիալիստական Ամերիկայի բարքերն ու կարգերը: Գերցենը գրել է. «Ամերիկան — նախկին տեքստի (այսինքն Եվրոպայի) վերանայված հրատարակությունն է,— և ոչ ավելին Ամերիկան իր հետ ոչ մի նոր սկզբունք չբերեց»: Մի այլ տեղ խոր հեգնանքով Գերցենը նկատել է. «Մինչև Ամերիկայի Միացյալ Նահանգներն էլ գոյություն ունեին ճորտատիրություն, անարդարացի պատերազմներ և թալան, բայց այս ցինիզմը, այս լկտիությունը, այս հանցագործ պարզությունը, այս ամոթալի մեղկությունը նոր է և պատկանում է Ամերիկային»: Գերցենը ծաղրել է Ամերիկյան «դեմոկրատիան», «ազատությունը», անվանելով դրանք քաղքենիական և սահմանափակ: Ամերիկայում տիրող ոստիկանական ռեժիմի մասին Գերցենը գրել է. «Հյուսիս Ամերիկյան Նահանգներում ճանկում են նամակներն ու ամսագրերը, ծեծում են մարդկանց հրապարակներում և աճուրդի են հանում ազատ նեգրերին»:

Գերցենը խոշոր դեր է խաղացել Ռուսաստանում բնակվող բոլոր ժողովուրդների հոգևոր կյանքում: Հայ ժողովուրդը խոր երախտագիտությամբ է հիշում Գերցենին, որի ազնիվ բարեկամներից է եղել աննկուն ռևոլյուցիոներ դեմոկրատ Միքայել Նալբանդյանը: Հետևելով Գերցենին, Նալբանդյանը հայ իրականության մեջ զարգացրեց ռևոլյուցիոն դեմոկրատիայի գաղափարները, ցույց տալով, որ հայ ժողովուրդը իր ազգային և սոցիալական ազատագրումը կարող է ձեռք բերել միայն և միայն ռևոլյուցիոն պայքարի միջոցով, ռուս աշխատավոր ժողովրդի հետ դաշինք կնքելով: Գերցենի «Կոլոկոլի» օրինակով Նալբանդյանը մտադիր էր արտասահմանում հիմնադրել ռևոլյուցիոն օրգան հայերեն լեզվով: Գերցենը իր հերթին բարձր է գնահատել Նալբանդյանին, անվանելով նրան գերազնվագույն մարդ:

Մեծ է Գերցենի պատմական նշանակությունը համաշխարհային ռևոլյուցիոն շարժման համար: Գերցենին ոգևորեցին դեկաբրիստները: Գերցենը ոգևորեց ռևոլյուցիոներների նոր սերնդին, նպաստեց առաջավոր գաղափարների հետագա զարգացմանն ու տարածմանը Ռուսաստանում: Ահա թե ինչու Գերցենի անունը այնքան մոտ ու հարազատ է սովետական մարդկանց համար, ողջ խաղաղասեր մարդկության համար:

---

# ԴԱՍԱԽՈՍԱԿԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՆ ՍԵՐՏՈՐԵՆ ԿԱՊԵԼ ՊՐԱԿՏԻԿԱՅԻ ՀԵՏ

*Խ. ԴԱՆԻԵԼՅԱՆ*

Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ լիկվիդացվեց Կուլտուրայի մինիստրությանը կից Դասախոսական բյուրոն և նրա ֆունկցիաները հանձնըվեցին Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերությանը, որը և՛ գրավոր, և՛ բանավոր պրոպագանդայով զբաղվող ամենամասսայական կազմակերպությունն է:

Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի VI պլենումը քննության առնելով Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման Ընկերության աշխատանքների վիճակը, նշեց, որ դեռևս դասախոսական պրոպագանդան ետ է մնում ժողովրդի աճող պահանջներից, որ կարդացվող դասախոսությունների մի զգալի մասի գաղափարական-քաղաքական մակարդակը ցածր է, շատ դասախոսություններ չեն շաղկապվում արտադրության, հիմնարկների ու ձեռնարկությունների առօրյա աշխատանքների, կոմունիստական շինարարության խնդիրների հետ: Առանձնապես վատ է գիտա-տեխնիկական, գիտա-աթեիստական և տնտեսական գիտելիքների պրոպագանդայի վիճակը: Պլենումի այդ որոշումից հետո ձեռնարկվեցին մի շարք միջոցառումներ, որոնց շնորհիվ զգալի չափով աշխուժացավ Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման Ընկերության միջոցով բնակչության մեջ տարվող դասախոսական պրոպագանդան:

1956 թվականի ընթացքում գործարաններում, ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում, ՄՏ կայաններում, սովետական տնտեսություններում և այլուր կարդացվել է մոտ 20 հազար դասախոսություն: Դասախոսական պրոպագանդան արտադրության հետ կապելու և գյուղին գործնական օգնություն ցույց տալու նպատակով ռեսպուբլիկայի գրեթե բոլոր շրջաններում կազմակերպվել են գյուղատնտեսության զարգացման հարցերին նվիրված գիտաարտադրական սեսիաներ: Այդ սեսիաներին մասնակցել են կոլտնտեսությունների նախագահներ, ֆերմաների վարիչներ, բրիգադիրներ, օղակավարներ, գյուղատնտեսներ, զոոտեխնիկներ և գյուղատնտեսության առաջավորներ:

Սեսիաներում դասախոսություններ են կարդացվել գլխավորապես գյուղատնտեսական թեմաներով, որոնք սերտորեն կապվել են թե՛ գյուղատնտեսական զարգացման հեռանկարների և թե՛ բերքատվության ու անասնաբուծության մթերատվության բարձրացման, կերի բազայի ստեղծման պրակտիկ խնդիրների հետ: Սեսիաներում դասախոսություններով հանդես են եկել ռեսպուբլիկայում գյուղատնտեսության բնագավառի աչքի ընկնող շատ մասնագետներ: Դասախոսություններից հետո ելույթներ են ունեցել կոլտնտեսու-

digitised by A.R.A.R.@

թյունների նախագահներ, բրիգադիրներ, գյուղատնտեսության առաջավորներ ու մասնագետներ, որոնք ելնելով իրենց սեփական փորձից, առաջ են քաշել տվյալ շրջանի գյուղատնտեսության առանձին ճյուղերի հետագա զարգացման վերաբերյալ պրակտիկ խնդիրներ։ Գիտության և պրակտիկ աշխատողների այս կապը մեծ արդյունք է տալիս։ Դասախոսական պրոպագանդայի այդ ձևը պետք է շարունակել և ծավալել։

Գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկայի պրոպագանդայի գործում Ընկերության ռեսպուբլիկական վարչությունը վերջերս սկսել է կիրառել մի այլ ձև, այն է՝ կոլտնտեսությունների նախագահների և գյուղատնտեսության մասնագետների սեմինարներ, որտեղ գլխավորապես լսվում են տվյալ շրջանի գյուղատնտեսության էկոնոմիկայի հարցերին նվիրված դասախոսություններ։ Այդպիսի սեմինարներ են անցկացվել ռեսպուբլիկայի Շահումյանի, Էջմիածնի, Կոտայքի, Աշտարակի, Իջևանի և այլ շրջաններում։ Իջևանի շրջկենտրոնում կազմակերպված սեմինարում մասնակցել են շրջանի կոլտնտեսությունների նախագահները, գյուղատնտեսները, զոոտեխնիկները և ՄՏ կայանների մասնագետները, թվով 150 մարդ։ Սեմինարում տնտեսագետ Ա. Մարուխյանը դասախոսություն է կարդացել գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի իջեցման ուղիների, ինքնարժեքի հաշվարկումների մասին, մի հարց, որը չափազանց կարևոր է, և որին դժբախտաբար ո՛չ միայն կոլտնտեսությունների ղեկավարները, այլև շրջանի պարտիական ու սովետական օրգանները ուշադրություն չեն դարձրել։

Կոլտնտեսություններում գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի հաշվարկումներ կատարելը կենսական անհրաժեշտություն է, որովհետև միայն այդ միջոցով կբացահայտվեն նյութական ու աշխատանքային ավելորդ ծախսումների կրճատման ուղիները։

Պրոֆեսոր Ա. Մարուխյանը ունկնդիրներին մանրամասն բացատրեց գյուղատնտեսական մթերքների մեկ միավորի ինքնարժեքը դրամով ու աշխօրերով հաշվարկելու մեթոդը, ինքնարժեքի տարրերի վերլուծման միջոցով ցույց տվեց ինքնարժեքի իջեցման, ավելորդ ծախսումների կրճատման ուղիները։ Դասախոսությունը մեծ հետաքրքրություն առաջացրեց ներկա եղողների շրջանում։ Որպես պրոպագանդայի հատուկ ձև, գիտա-արտադրական սեսիաները լիովին արդարացրին իրենց։ Մի շարք շրջաններում գյուղատնտեսության հարցերին նվիրված այդպիսի սեսիաներ 1956 թվականին գումարվեցին 2—3 անգամ։

Վերցնենք դասախոսական պրոպագանդան կյանքի հետ շաղկապելու մի ուրիշ օրինակ։ Ընկերության անդամ, գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Հ. Գրիգորյանը Էջմիածնի շրջանի Միկոյանի անվան Լենինի շքանշանակիր կոլտնտեսության երկու բրիգադներում դասախոսություն կարդաց «Բամբակենու 108—ֆ սորտի ծերատման նշանակությունը բերքի հասունացումն արագացնելու գործում» թեմայով։ Բացի դասախոսությունից, Հ. Գրիգորյանը գործնականում կոլտնտեսականներին սովորեցրեց բամբակենու խոր ծերատումը և ղեկավարեց աշխատանքները բրիգադներում։ Ծերատման, ինչպես նաև մյուս ագրոմիջոցների ճիշտ կիրառման հետևանքով վերոհիշյալ բրիգադներն աճեցրին առատ բերք և բամբակի հումքի հանձնման տարեկան պլանը կատարեցին ժամկետից շուտ, 115—120 տոկոսով։

Այդ թեմային նվիրված դասախոսություններ են կարդացվել և պրակտիկ ուսուցում է տեղի ունեցել նաև Սամաղարի, Արշալույսի, Հայթաղի, Մուղանի,



Փարաքարի կոլտնտեսություններում՝ Ընկերության անդամներ՝ Հայկական ՍՍՌ ԳԱ ակադեմիկոս Վ. Գուլքանյանի, գյուղատնտեսական գիտությունների թեկնածուներ՝ Ս. Կարագյոզյանի, Ա. Աչարյանի ղեկավարությամբ։

Մենք ունենք բազմաթիվ փաստեր, երբ կարդացված դասախոսությունները ընթացել են կոլտնտեսությունների, սովետական տնտեսությունների, ՄՏ կայանների և այլ ձեռնարկությունների պլանների կատարման և գերակատարման համար աշխատավորությանը մոբիլիզացնելու ուղղությամբ։ Այսպես, օրինակ, Էջմիածնի շրջանի Այգեշատ գյուղի կոլտնտեսությունը յուրաքանչյուր հեկտար բամբակի տարածությունից պլանով նախատեսված 24 ցենտների դիմաց հավաքել և պետությանն է հանձնել 28 ցենտներ հումք։ Այստեղ 1956 թվականին Ընկերությունը բամբակի բերքատվության բարձրացման և այլ թեմաներով կազմակերպել է 14 դասախոսություն։ Նույն շրջանի Շահումյանի կոլտնտեսությունը յուրաքանչյուր հեկտար բամբակի տարածությունից պլանով նախատեսված 24,7 ցենտների դիմաց մթերման կայանին է հանձնել 28,3 ցենտներ հումք։ Այս կոլտնտեսությունում ևս կարդացվել է 10 դասախոսություն։

Արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման գործում մեծ նշանակություն ունի դրական փորձի փոխանակումը։ Մեր ռեսպուբլիկայում թե արդյունաբերության և թե գյուղատնտեսության բնագավառում շատ արժեքավոր և ուսանելի փորձ կա, բայց, դժբախտաբար, այն անհրաժեշտ չափով չի մասսայականացվում։ Բազմաթիվ օրինակներ կան, երբ միևնույն հողակլիմայական պայմաններում գտնվող կոլտնտեսությունները տարբեր բերք են ստանում։ Ինչի՞ հետևանք է դա։ Բանն այն է, որ մի տեղ հողը լավ են մշակում, ժամանակին են կատարում գյուղատնտեսական բոլոր աշխատանքները, իսկ մյուս տեղում՝ ո՛չ։ Դժբախտաբար հաճախ դասախոսները բերքատվության բարձրացման մասին խոսում են ընդհանրապես և չեն նշում թե ինչպես անել, որ տվյալ կոլտնտեսության բերքատվությունը բարձրանա, ցույց չեն տալիս կոլտնտեսության ետ մնալու պատճառները։ Այժմ հազիվ թե լինի մեկը, որը չիմանա, չհասկանա բարձր բերքի նշանակությունը։ Դասախոսը այդ մասին չէ, որ պետք է երկար ու բարակ խոսի, այլ այն մասին, թե ինչպես ստանալ բարձր բերք, ինչ անել դրա համար։ Դժբախտաբար մեր դասախոսներից շատերին հենց այդ է պակասում։ Դասախոսական պրոպագանդայի ընթացքում շատ քիչ ուշադրություն է դարձվում առաջավոր փորձի պրոպագանդայի վրա։ Հաճախ եղածն էլ սխալ ուղղությամբ է գնում։ Օրինակ, թերթերում, դասախոսությունների մեջ, հաշվետվություններում և ժողովներում շատ է խոսվում այս կամ այն կոլտնտեսության, բրիգադայի, օղակի ստացած բարձր բերքի մասին, համեմատություններ են արվում անցյալ տարիների հետ և ցույց են տրվում ձեռք բերված հաջողությունները։ Այդ ամենի մասին ասում են, գրում, սակայն ցույց չեն տալիս, թե ի՞նչ ճանապարհով, ի՞նչ միջոցներով է կոլտնտեսությունը կամ բրիգադան հասել բարձր արդյունքների։ Այդ իսկ պատճառով փորձի փոխանակության համար կարևոր է ոչ այնքան այն, թե՛ ինչքան շատ բերք է ստացվել, որքան այն, թե՛ ինչ միջոցներով է ստացվել։ Միայն սովորեցնելու, ցույց տալու ճանապարհով կարելի է ետ մնացողներին օգնել առաջավորներին հասնելու համար։ Օրինակ՝ ի՞նչ արժեք ունի այն դասախոսությունը, որը նվիրված է ինքնարժեքի իջեցման, խնայողության, որակի լավացման, կարգապահության բարձրացման ընդհանուր հարցերին,

digitised by A.R.A.R.@

*եթե այդ դասախոսության մեջ ոչ մի կոնկրետ օրինակ չկա այն օբյեկտի մասին, որտեղ կարդացվում է դասախոսությունը։ Դասախոսությունն իր նպատակին է հասնում և արժեք ունի միայն այն դեպքում, երբ տվյալ օբյեկտից վերցրած կոնկրետ փաստերով ցույց տրվեն անտնտեսավարության, վատորակ արտադրանքի, կարգապահության խախտման փաստեր և դրանց վերաբերյալ միջոցներ։ Դասախոսությունների ընթացքում տվյալ օբյեկտից վերցրած և՛ դրական, և՛ բացասական փաստերի օգտագործումը մեծ չափով բարձրացնում է դասախոսության արժեքը, այն դարձնում է դիպուկ, նպատակասլաց։*

*Առաջավոր փորձի պրոպագանդայի ուղղությամբ դասախոսություններ են կարդացվել Ստեփանավանում, Շամշադինում, Մեղրիում, Կարմիրում, Կոտայքում, Կիրովականի շրջանում, Գորիսում, Աղինում, Ախտայում, Ախուրյանում և այլն։*

*Դասախոսական պրոպագանդայի մեջ անհրաժեշտ չափով չեն ներգրավվում նաև Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցները, մարդիկ, որոնք իրենց սեփական աչքերով տեսնում և ուսումնասիրում են այն ամենը, ինչը լավ է, ինչն ուսանելի է։ Ամեն տարի մեր ռեսպուբլիկայից հարյուրավոր առաջավոր կոլտնտեսականներ են գնում Մոսկվա՝ Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդես։ Միայն 1956 թվականին ցուցահանդեսում եղել են 2245 մարդ։ Առաջավորների այդ խոշոր բանակը համարյա չի օգտագործվում առաջավոր փորձի պրոպագանդայի համար։ Մինչդեռ նրանք դրական փորձի լավագույն պրոպագանդիստներ պետք է լինեն։ Ցավոք սրտի պարտիայի շրջանային կոմիտեները նույնպես, շատ քիչ բացառությամբ, այդ գործի վրա պատշաճ ուշադրություն չեն դարձնում։ Միանգամայն աննորմալ է, երբ 1956 թվականին Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսից վերադարձած 2245 մարդուց Ընկերության գծով ելույթներ են ունեցել միայն 257 մարդ։ Չէ՞ որ ցուցահանդես ուղարկվում են ո՛չ թե նրա համար, որ էսթետիկական հաճույք ստանան, այլ ամենից առաջ նրա համար, որպեսզի այնտեղից իրենց հետ բերեն գիտելիքներ, աշխատանքի լավագույն փորձ և այն կիրառեն իրենց կոլտնտեսությունում։ Իսկ այդպիսի կիրառման լավագույն միջոցներից մեկն էլ զրույցներով, դասախոսություններով հանդես գալն է։*

*Եթե այդ բանակը չի օգտագործվելու բերքատվության, մթերատվության բարձրացման համար, ապա հարց է ծագում, թե արժե՞ արդյոք այդքան մարդ աշխատանքից կտրել հսկայական ծախսերի գնով և ուղարկել Մոսկվա։*

*Պետք է վճռականորեն բարելավել ցուցահանդեսի լավագույն փորձի պրոպագանդան, որը մեր ռեսպուբլիկայի պայմաններում արժեքավոր և ուսանելի բան կտա։ Պարտիայի շրջանային կոմիտեները, ինչպես նաև գյուղատնտեսական օրգանները և առաջին հերթին Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությունը պետք է Հայկական ՍՍՌ Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման Ընկերությանն այդ հարցում գործնական օժանդակություն ցույց տան և համատեղ ու ճիշտ պլանավորեն ցուցահանդեսի մասնակիցների ելույթները։*

*Անմխիթար վիճակի մեջ է նաև առաջավոր փորձի գրավոր պրոպագանդան։ 1956 թվականին Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման Ընկերության գծով լույս է տեսել ընդամենը 2 բրոշյուր և մի քանի թերթիկ։*



*Լավ չէ վիճակը նաև Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության, Հայպետհրատի և մյուս հրատարակչությունների գծով։*

*Այնինչ առաջավոր փորձի գրավոր պրոպագանդան նույնպես պետք է գրավի իր պատշաճ տեղը։ Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի վերջին պլենումում, Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Թովմասյանը խոսելով գրավոր պրոպագանդայի նշանակության մասին ասաց.*

*«Պետք է այդ կենդանի գործը վերցնել բյուրոկրատների ձեռքից և համաժողովրդական սեփականություն դարձնել։ Դրա համար հարկավոր է, որ առաջավոր կոլտնտեսությունների, սովետական տնտեսությունների, ՄՏ կայանների, բրիգադների, ֆերմաների, կոլտնտեսականների փորձը բազմակողմանիորեն ուսումնասիրեն պարտիայի շրջկոմները, ՄՏ կայանները, պետք է որ այդ փորձը ընդհանրացվի և քննարկվի գիտնականների ու գյուղատնտեսության մասնագետների հետ մեկտեղ և որոշվի՝ այն մյուս կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում արմատավորելու եղանակը»։*

*Արժեքավոր և ոչ մի գործ չի կարելի թողնել առանց ուշադրության։ Գյուղատնտեսության բոլոր ճյուղերի բնագավառում եղած լավը, ուսանելին պետք է դառնա գյուղատնտեսության աշխատավորների սեփականությունը։*

*Քաղաքային և գիտական գիտելիքների տարածման Ընկերությունը պետք է լուրջ ուշադրություն դարձնի նաև գիտա-տեխնիկական և տնտեսական գիտելիքների պրոպագանդային։ Այդ գծով 1957 թվականին կարդացվել է միայն 1105 դասախոսություն, որը խիստ անբավարար է։*

*Պետք է վճռականապես բարելավել տնտեսական գիտելիքների պրոպագանդայի վիճակը, այդ գործի մեջ ներգրավելով մայրաքաղաքի լավագույն մասնագետներին։ Փաստ է, որ հաճախ տնտեսության ղեկավարը անհրաժեշտ արդյունքի չի հասնում ո՛չ այն պատճառով, որ չի ցանկանում, այլ այն պատճառով, որ նա ի վիճակի չէ, որովհետև չունի տնտեսավարման համար անհրաժեշտ գիտելիքներ։ Միանգամայն ճիշտ է նկատում Մոգիլևյան մարզի Կիրովյան շրջանի «Ռասսվետ» կոլտնտեսության նախագահ Կ. Օրլովսկին «Պրավդա»-ի մարտի 21-ի համարում տպված իր հոդվածում, որ եթե կոլտնտեսությունը ետ է մնում, տնտեսությունը չի աճում, դա աշխատանքը վատ կազմակերպելու և տնտեսությունը վարել չիմանալու հետևանք է։ Այդ տեսակետից շատ ուսանելի է Էջմիածնի շրջանի Աղավնատուն գյուղի թռչնաբուծական ֆերմայի օրինակը։ Տարիներ շարունակ գյուղատնտեսության այդ ճյուղը ոչ մի օգուտ չէր տալիս։ Բավական է ասել, որ մի ածան հավից ամբողջ տարվա ընթացքում միջին հաշվով ստացվում էր ընդամենը 20 ձու։ Դրությունը բոլորովին փոխվեց, երբ գործի գլուխն անցան բանիմաց մարդիկ և արտադրությունը սկսեցին վարել գիտական հիմունքներով, օգտագործեցին այդ բնագավառում եղած լավագույն փորձը։ Այժմ ֆերման բոլորովին այլ պատկեր ունի։ Իրեն չարդարացնող հավաբուծական ֆերման 1956 թվականին ստացավ 55 հազար ռուբլու եկամուտ, իսկ յուրաքանչյուր հավից ստացվեց 107 ձու։*

*Տնտեսագիտական թեմայով կարդացվող ամեն մի դասախոսության մեջ, լինի դա գործարանում, ֆաբրիկայում, կոլտնտեսությունում, սովետական տնտեսությունում, ՄՏ կայանում, պետք է վեր հանվի, գիտականորեն հիմնավորվի, ընդհանրացվի դրական փորձը և ցույց տրվեն եղած թերությունները, դրանց*

digitised by A.R.A.R.@

պատճառներն ու վերացնելու միջոցառումները։ Այդպիսի դասախոսությունը անշուշտ կծառայի իր նպատակին։

Այս կապակցությամբ պետք է նկատել, որ և՛ արդյունաբերության, և՛ գյուղատնտեսության պրակտիկ աշխատողների շրջանում մենք ունենք դասախոսական բանիմաց կադրեր, որոնք, սակայն, քիչ են օգտագործվում։ Հաճախ մենք հաշվի չենք առնում, որ, ասենք, Կիրովի անվան, կամ Էլեկտրամեքենաշինական գործարանի մասնագետ-ինժեներները, որոնք քաջածանոթ են իրենց գործարանի արտադրությանը, կարող են ավելի էֆեկտիվ դասախոսություն կարդալ իրենց արտադրության մասին, քան մեկ ուրիշը։

Մենք պետք է հասնենք այն բանին, որպեսզի կարդացվող բոլոր դասախոսություններն օրգանապես կապված լինեն կյանքի հետ, ունկնդիրների համար լինեն հանրամատչելի և գաղափարական-գիտական բարձր մակարդակով, սովետական մարդկանց մոբիլիզացնեն կոմունիստական շինարարության համար մղվող պայքարում։ Տնտեսական թեմաների մասին կարդացվող ամեն մի դասախոսություն պետք է նպաստի աշխատողներին՝ ավելի շատ մեքենաներ, ավելի շատ միս ու յուղ, ավելի շատ հաց ստանալու համար։

Մարքսիզմ-լենինիզմին խորթ են վերացականությունը, դոգմատիզմը, կյանքից կտրված լինելը։ Վ. Ի. Լենինն ասել է՝ «...Քաղաքական լուսավորության արդյունքը կարելի է չափել միայն տնտեսության բարելավմամբ»։ Իսկապես, մենք պետք է հպարտանանք ոչ այն բանով, թե ինչքան դասախոսություն ենք կարդացել, այլ նրանով, թե մեր դասախոսությունները որքանով են օգնել բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, թողարկվող արտադրանքի որակը, բերքատվությունը և այլն։ Միայն այդ ցուցանիշներով պետք է գնահատել իդեոլոգիական աշխատանքի, պրոպագանդայի և ագիտացիայի էֆեկտիվությունը։ Ամբողջ իդեոլոգիական աշխատանքը նույնպես պետք է ի սպաս դնել երկրի տնտեսական զարգացման գործին և, ինչպես Լենինն էր պահանջում՝ «ամբողջ պրոպագանդան փոխադրել տնտեսական շինարարության ռելսերի վրա»։

Բնակչության մեջ տարվող իդեոլոգիական աշխատանքը լուրջ և պատասխանատու բնագավառ է։ Ուստի անհրաժեշտ է, որպեսզի պարտիական կազմակերպությունները ամենօրյա օգնություն ցույց տան դասախոսական պրոպագանդան բարելավելու, կյանքի հետ կապելու, պարտիայի և կառավարության առաջադրած խնդիրները արագ կատարելու համար։ Պետք է հիշել որ՝

«Լավ դասախոսությունների անհրաժեշտ պայմանը նրանց սերտ կապն է կյանքի հետ, այն գործնական պայքարի հետ, որը պարտիան ու սովետական ժողովուրդը մղում են Կոմունիստական պարտիայի XX համագումարի, պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Դեկտեմբերյան ու Փետրվարյան պլենումների որոշումների, ՍՄԿՊ Կենտկոմի և Սովետական կառավարության որոշումներում առաջադրված խնդիրների հաջող կատարման համար» («Պրավդա»)։

---

# ՎԵՐԱԾՆՎԱԾ ՔՈՒՐԴ ԺՈՂՈՎՐԴԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԱՃԸ

Խ. ՉԱՏՈԵՎ, Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից առաջ ուրիշ շատ ժողովուրդների պես ծանր պայմաններում էին գտնվում նաև ցարական Ռուսաստանում ապրող քուրդ աշխատավորները։ Նրանց վիճակը բնորոշվում էր տնտեսական, քաղաքական ու կուլտուրական հետամնացությամբ։ Քրդերի մեծ մասը քոչվորական կյանք վարելով զբաղվում էր անասնաբուծությամբ, կամ բատրակություն էր անում, ենթարկվելով դաժան շահագործման։ Պրիմիտիվ հողագործությունը օժանդակ ճյուղ էր նրանց տնտեսության համար։ Քրդերն ապրում էին նահապետական տոհմերով։ Առանձնապես ծանր էր կանանց դրությունը, որոնց ծախում ու գնում էին ինչպես ապրանք։ Ամբողջ քուրդ բնակչությունը անգրագետ էր։ Կաստայական սիստեմը, աղաների, բեկերի և հոգևորականների ճնշումն ու շահագործումը քուրդ ժողովրդին հասցրել էր աղքատացման և նրան խանգարում էր շփվելու մյուս ժողովուրդներին, հաղորդակից լինելու նրանց կուլտուրային։ Այսպիսի պայմաններում, բնականաբար, խոսք անգամ չէր կարող լինել քրդերի քաղաքական ու կուլտուրական աճման մասին։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան ոչնչացրեց աղաների, բեկերի ու հոգևորականության իշխանությունը և ՍՍՌՄ տերիտորիայում ապրող քրդերին զարգացման լայն հնարավորություններ տվեց։ Կոմունիստական պարտիան գործնականում իրականացրեց քուրդ ժողովրդի անցումը տնտեսության նախակապիտալիստական ձևից դեպի սոցիալիզմի ուղին, վերջ տվեց նրա քոչվորական կյանքին։ Մանր, անհատական տնտեսությունների միավորումը կոլեկտիվ տնտեսությունների մեջ աշխատավոր քրդերի համար եղավ այն կարևորագույն միջոցառումը, որը նրանց օգնեց նոր ձևով կառուցելու իրենց կյանքը, ամենաակտիվ մասնակցություն ունենալու կոմունիստական շինարարության գործին։

Քուրդ ժողովրդի զարգացումն ընթացավ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրա ստեղծելու ուղիով։ Քրդերը ձեռք բերին իրենց գիրը։ Երեխաներն ու երիտասարդները հնարավորություն ստացան դպրոցներում սովորելու մայրենի լեզվով։ Նրանց համար բոլոր պայմաններն ստեղծվեցին սովորելու բարձրագույն ուսումնական հաստատություններում, տեխնիկումներում, կրթություն ստանալու ցանկացած մասնագիտությամբ։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում ապրող քրդերը տնտեսական ու կուլտուրական զարգացման ուղղությամբ հսկայական քայլ արին։ Անցյալում թշվառ կյանք վարող, իրավազուրկ ու կեղեքվող մարդիկ



digitised by A.R.A.R.@

և նրանց զավակները ներկայումս դարձել են կոմունիզմի ակտիվ կառուցողներ։ Նրանք աշխատում են արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսային դաշտերում, մշակում են բամբակ, խաղող, հացաբույսեր։ Մեծ թվով քուրդ երիտասարդներ Ալագյազի, Թալինի, Էջմիածնի մեքենա-տրակտորային կայաններում ու կոլտնտեսություններում աշխատում են որպես տրակտորիստներ, կոմբայնավարներ, ավտովարորդներ։ Քրդերի մի զգալի մասը աշխատում է կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների անասնապահական ֆերմաներում։ Քիչ քրդեր չկան նաև պարտիական ու սովետական ղեկավար աշխատանքներում, գիտական հիմնարկություններում, գրականության ու արվեստի բնագավառում։

Անճանաչելի են դարձել քրդական գյուղերը։ Ապարանի շրջանի Ալագյազ և Թալինի շրջանի Հակկո, Թլիկ գյուղերի օրինակով կարելի է ցույց տալ, թե ինչպիսի խոշոր տեղաշարժ է եղել աշխատավոր քրդերի կյանքում։ Ալագյազ գյուղը նախկին Մեծ Ջամշլին է, որը սովետական կարգերից առաջ բաղկացած էր մի քանի տասնյակ ողորմելի հյուղակներից։ Բնակչությունը ջրհորի ջուր էր խմում։ Սովետական իշխանության տարիներին Ալագյազ գյուղը բոլորովին կերպարանափոխվելով, անճանաչելի է դարձել։ Այստեղ կառուցվել են բազմաթիվ քարաշեն գեղեցիկ տներ,որոնք ծածկված են թիթեղով, կղմինդրով կամ շիֆերով, այժմ գյուղն ունի ջրմուղ, էլեկտրական լուսավորություն։ Կոլտնտեսականները լավ կահավորված տներում կուլտուրական, ունևոր կյանք են վարում։ Գյուղատնտեսական արտադրության շատ պրոցեսներ էլեկտրականության օգնությամբ մեքենայացված են։

Ահա թե ինչպես է փոխվել կյանքը քրդական մի ուրիշ գյուղում, Թալինի շրջանի Թլիկ գյուղում։ Թլիկի կոլտնտեսականներից շատերը Կարսի մարզի Բաջլու և Դիգոր գյուղերի նախկին բնակիչներ են։ Ծերունիները պատմում են, որ 1918 թվականին թյուրքերը ներխուժեցին Բաջլու և դաժան կոտորած սկսեցին։ Սոսկալի ջարդից ողջ մնացած քրդերը փախան Արփաչայի ձախ ափը և հաստատվեցին Թլիկ գյուղում։ Բայց այն ժամանակ Հայաստանում իշխում էին դաշնակները, ուստի քրդերն այստեղ էլ հանգիստ օր չունեին. դաշնակ մաուզերիստներն ու խմբապետները կողոպտում էին նրանց, քշումտանում էին անասունները, կոտորում մարդկանց։ Թալինի քրդերն ստիպված էին թափառել Արագածի լանջերում, հասնել մինչև Վրաստան։ Միայն սովետական իշխանության հաղթանակից հետո նրանք վերադարձան Թլիկ և ազատ ու խաղաղ նստակյաց կյանք սկսեցին, ապա և մտան կոլտնտեսություն։

Թլիկի կոլտնտեսությունն աճեց, դարձավ առաջավոր տնտեսություն, նրա հետ միասին աճեցին նաև նրա մարդիկ, փոխվեց նրանց կենցաղը։ Արտելի տնտեսական աճի հիման վրա տարեց-տարի բարձրանում են կոլտնտեսականների եկամուտները։ Կոլտնտեսական ընտանիքների կեսից ավելին իրենց ռադիոընդունիչներն ունեն։ Համարյա ամեն տան մեջ կարելի է տեսնել էլեկտրական թեյամաններ, հարթուկներ, կարի մեքենաներ, թանկարժեք կահկարասի, նիկելազօծ մահճակալներ։ Եթե ռևոլյուցիայից առաջ քրդերն իրենց գիրը չունեին, ապա այժմ Թլիկում անգրագետ մարդ չկա։ Գյուղն իր յոթնամյա դպրոցն ունի։ Դպրոցի ուսուցիչները քրդեր են, որոնք մեծացել են այս գյուղում և հպարտությամբ են խոսում իրենց նախկին սաների մասին, որոնցից մեկը կոլտնտեսության ներկայիս նախագահ Ավդոյանն է, մեկը պարտկազմակերպության քարտուղար Օզմանովը. նրանց սաներից են Երևանի ժամացույցի գործարանի տեխնիկ Դանիելյանը, Երևանի բժշկական ինստիտուտի ուսանող Ցլիտե Կասո Մաչիտին, Թալինի ՄՏ կայանի տրակտորիստ Փոլատովը և ուրիշները։



Ահա Թլիկի ակումբի գրադարանի աբոնենտային քարտերը։ Այստեղ մեծ հետաքրքրությամբ կարդում և ուսումնասիրում են մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները, ռուս, հայ, քուրդ գրողների և ՍՍՌՄ այլ ազգությունների գրողների գրքերը։ Տարեց-տարի բարելավվում է Թլիկի քրդերի տնտեսական ու կուլտուր-կենցաղային դրությունը։ Այս տարի ավարտվելու է գյուղի ռադիոֆիկացումը։ Ներկայումս կառուցվում է մի պոմպակայան, որի շահագործումով կոլտնտեսության ցանքատարածությունները ջրովի կդառնան։

Քրդերը դարձել են սովետական երկրի լիիրավ քաղաքացիներ և ակտիվ մասնակցություն ունեն պետության կառավարման գործին։ Այս բանը ցայտուն կերպով ցույց է տալիս այն փաստը, որ նախկին չքավոր քոչվոր քրդերի շատ ու շատ զավակներ ու դուստրեր այժմ պետական իշխանության Գերագույն և տեղական օրգանների դեպուտատներ են։ Սովետական Միության Հերոս, Գյուղատնտեսության մինիստրի տեղակալ՝ Սամանդ Ալիևիչ Սիաբանդովն ընտրված է ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ, Հայկական ՍՍՌ Թեթև արդյունաբերության մինիստրի տեղակալ Նադոե Խուդո Մահմուդովը և Ապարանի շրջանի Ալագյազ գյուղի կոլտնտեսության կաթնապրանքային ֆերմայի վարիչ Արֆուտ Տաֆուրի Քալաշյանը Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատներ են։ Բազմաթիվ քուրդ աշխատավորներ ընտրված են քաղաքային, շրջանային, գյուղական ու ավանային Սովետների դեպուտատներ։ Հարյուրավոր քուրդ ակտիվիստներ պարտիական, քաղաքական-հասարակական աշխատանք են կատարում քուրդ աշխատավորների մեջ՝ բացատրելով նրանց պարտիայի ու կառավարության որոշումները, կազմակերպելով ու մոբիլիզացնելով նրանց կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրները հաջողությամբ կատարելու համար։

Ժողովրդական կրթությունը մտել է քրդերի կենցաղի մեջ. նրանք ձգտում են դառնալ գրագետ, կուլտուրական։ Եվ դրա համար ստեղծված են բոլոր պայմանները, քրդական ամեն մի մեծ թե փոքր գյուղում կա դպրոց, գրադարան, ակումբ։ Քուրդ ժողովրդի կուլտուրական կյանքում մեծ իրադարձություն հանդիսացավ նաև Հայկական ՍՍՌ-ում ռադիոհաղորդումների կազմակերպումը քրդերեն լեզվով։ Ամեն տարի Հայաստանի պետական հրատարակչությունը քրդերեն լեզվով հրատարակում է քուրդ գրողների ու բանաստեղծների բազմաթիվ երկերը, ինչպես նաև դասագրքեր քրդական դպրոցների համար։ Պատրաստվում է հրատարակության հայ-քրդական բառարանը։

Եթե ռևոլյուցիայից առաջ քրդերի մեջ գրագետ մարդ չկար, ապա այժմ կան գիտության թեկնածուներ, զգալի թվով քուրդ երիտասարդ տղաներ ու աղջիկներ ավարտել են բարձրագույն ուսումնական հաստատություններ և ասպիրանտուրա։

Քրդական ընտանիքի կուլտուրայի փոփոխման ցայտուն օրինակ կարող է ծառայել Ապարանի շրջանի Ալագյազ գյուղացի 94-ամյա կոլտնտեսական Լեշոե Բրոյի ընտանիքը։ Նրա բոլոր երեք զավակներն էլ բարձրագույն կրթու-

digitised by A.R.A.R.@

թյուն ունեն և պատասխանատու աշխատանքի են։ Նույն Ալագյազ գյուղի կոլտնտեսության նախագահ Խուդո Մգոյանի երկու որդիներն ավարտել են Երևանի Հայկական մանկավարժական ինստիտուտը, երրորդը սովորում է նույն ինստիտուտում։

Բարձրագույն կրթություն են ստացել Հաջիե Ջնդիի երկու աղջիկները։ Նրա ավագ դուստրը՝ Ֆրիչան ավարտել է Երևանի բժշկական ինստիտուտը և հանդիսանում է առաջին քուրդ բժշկուհին, երկրորդ դուստրը ավարտել է Մոսկվայի Լենինի անվան մանկավարժական ինստիտուտի ֆիզիկո-մաթեմատիկական ֆակուլտետը և այժմ մաթեմատիկա է դասավանդում։ Ամինե Ավդալի դուստրը ավարտել է Երևանի մանկավարժական ինստիտուտը, իսկ տղան սովորում է Մոսկվայի կապի ինստիտուտի 5-րդ կուրսում և հանդիսանում է գյուտարար։ Ջասըմե Ջալիլի ավագ որդին ավարտել է Երևանի Պետական համալսարանը և այժմ սովորում է Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի ասպիրանտուրայում։ Նրա երկրորդ որդին սովորում է Երևանի համալսարանում։ Ներկայումս Երևանի Պետական համալսարանում, բժշկական, պոլիտեխնիկական, անասնաբուծական-անասնաբուժական, գյուղատնտեսական ինստիտուտներում մի քանի տասնյակ քուրդ տղաներ ու աղջիկներ են սովորում։

Կոլտնտեսականների ընտանիքներից դուրս եկած բազմաթիվ պատանիներ վերջին տարիներս ավարտել են ինստիտուտները և ներկայումս աշխատում են գյուղում։ Ահա Մամադալի Շամիլովը, որը 1954 թվականին ավարտելով Բաքվի Բժշկական ինստիտուտը, այժմ աշխատում է որպես Ապարանի շրջանի Ալագյազի տեղամասային հիվանդանոցի վարիչ։ Ապարանի շրջանում է աշխատում անասնաբույժ Ավդալե Ջալոն, որն ավարտել է Երևանի Անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտը։

Բժշկական ինստիտուտի վերջին կուրսում սովորում են կոլտնտեսականներ Սանդե Բրոյի և Սմոյե Շավոյի որդիները, ինչպես նաև Դոնարա Մախմուդովան։ Անցյալ տարի Բժշկական ինստիտուտ ընդունվեց Ալագյազի միջնակարգ դպրոցը ոսկե մեդալով ավարտած, շարքային կոլտնտեսական Վազիրե Նադոյի որդին։ Այսպես է կերպարանափոխվել ՍՍՌՄ-ում, այդ թվում նաև Հայկական ՍՍՌ-ում, ապրող քրդերի կյանքը։

Հայաստանում ապրող քրդերի կուլտուրական կյանքում նշանակալից իրադարձություն հանդիսացավ քրդական ռեսպուբլիկական «Ռիա-թազա» թերթի վերահրատարակումը։ Կոմունիստական պարտիայի այս միջոցառումը քրդերի նկատմամբ մեծ հոգատարության մի նոր, պայծառ վկայություն է։ Քրդերը մեծագույն գոհունակությամբ դիմավորեցին այս որոշումը։ Թերթի խմբագրությունը քուրդ բնակչության բոլոր խավերից բազմաթիվ նամակներ է ստացել, որոնցով նրանք ջերմ շնորհակալություն են հայտնում հարազատ Կոմունիստական պարտիային փոքր ժողովուրդների, նրանց կուլտուրայի հետագա զարգացման նկատմամբ ցուցաբերած հոգատարության համար։ Իրենց նամակներում դրա մասին են գրել Ապարանի շրջանի Ջարջարիս գյուղի կոլտնտեսական Մոսկով Սուլեյմանովը, զինվորական ծառայող Իսե Խուդոյանը, ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի Լեզվաբանության ինստիտուտի գիտական աշխատակից Չերքեզ Բակոեը և ուրիշ շատերը։

«Ռիա Թազա» թերթը խոշոր աշխատանք է կատարում պարտիայի ու կառավարության որոշումների պրոպագանդման, աշխատավոր քրդերի կոմունիստական դաստիարակության ուղղությամբ և մոբիլիզացնում է նրանց ՍՄԿՊ XX համագումարի որոշումների հաջող կենսագործման համար։



Վերահրատարակումն սկսվելուց հետո անցած կարճ ժամանակամիջոցում թերթի էջերում տպագրվել են ամենաբազմապիսի թեմաներին վերաբերող բազմաթիվ նյութեր՝ պարտիայի ու կառավարության կարևորագույն որոշումներ, ռեսպուբլիկայի էկոնոմիկայի զարգացման հարցերին նվիրված հոդվածներ, արդյունաբերական ձեռնարկությունների, ՄՏ կայանների, կոլտնտեսությունների գործնական աշխատանքին վերաբերող նյութեր, ինչպես և շատ ու շատ հետաքրքիր նյութեր առաջավոր փորձի մասին։ Թերթն իր համարներից մեկում զետեղել է էջմիածնի շրջանի Միկոյանի անվան կոլտնտեսության կաթնապրանքային ֆերմայի առաջավոր կթվորուհի Խազա Բադոյի հոդվածը՝ «Ինչի համար եմ ես պայքարելու 1957 թվականին» վերնագրով։ Անցյալ տարի Խազա Բադոն իրեն ամրացված յուրաքանչյուր կովից նախատեսված 1850 կիլոգրամի դիմաց 2563 կիլոգրամ կաթ է ստացել։ Ի՞նչ միջոցով է նա հասել այս հաջողության, ի՞նչ է մտադիր անելու, որպեսզի այս տարի է՛լ ավելի բարձր ցուցանիշների հասնի — ահա այս ամենի մասին է պատմում նա իր հոդվածում։ Թերթի մի ուրիշ համարում զետեղված է «Առաջավոր կթվորուհին» վերնագրով հոդվածը։ Այս անգամ թերթը լայնորեն մասսայականացրել է Շահումյանի շրջանի XVII պարտ. համագումարի անվան կոլտնտեսության անվանի կթվորուհի Գուլչա Սմոյի փորձը։ Նա անցյալ տարի յուրաքանչյուր կովից կթել է 3766 կիլոգրամ կաթ։ «Ռիա Թազա»-ն բովանդակալից նյութ է հրատարակել նաև ուրիշ շատ հարցերի վերաբերյալ, ինչպես, օրինակ, «Գյուղատնտեսական արտադրանքի մեկ միավորի վրա կատարվող ծախսերի նվազեցման ուղիները», «Ինչպես եգիպտացորենի բարձր բերք աճեցնել» և այլ թեմաների շուրջ, որոնք քուրդ կոլտնտեսականներին օգնել են բարձրացնելու իրենց կուլտուրան՝ հողագործություն վարելու բնագավառում։

Սրա հետ միասին թերթը զետեղում է նաև մեծ թվով քննադատական նյութեր, որոնք օգնում են վերացնելու կոլտնտեսությունների, ՄՏ կայանների, գործարանների ու ֆաբրիկաների, սովետական հիմնարկությունների աշխատանքում եղած թերությունները։

Թերթը նյութեր է զետեղում այն խոշոր փոփոխությունների մասին, որ տեղի է ունեցել քուրդ ժողովրդի կյանքում սովետական իշխանության տարիներին, պարտիական կազմակերպություններին ու կոմունիստներին օգնելու համար հոդվածներ է տպագրում պարտիական շինարարության վերաբերյալ, կոնսուլտացիաներ է հրապարակում ՍՄԿՊ պատմությունն ուսումնասիրողներին օգնելու համար։ Մասսաների ինտերնացիոնալ դաստիարակության, ժողովուրդների բարեկամության, լենինյան ազգային քաղաքականության հարցերը նույնպես մեծ տեղ են գրավում թերթի էջերում։ Նա հանդես է գալիս նաև ֆելյետոններով, որոնք խարազանում են մեր ամենօրյա աշխատանքում եղած թերությունները, մանավանդ կենցաղային հին սովորությունների մնացուկները։

«Ռիա Թազա»-ն իր էջերում բացել է նաև գրականության մշտական բաժին, որտեղ սիստեմատիկաբար լուսաբանում է քրդական գրականության ու արվեստի զարգացման հրատապ հարցերը։ Այստեղ հատվածներ են տպագրվում քուրդ գրողների և բանաստեղծների գործերից, քրդական ֆոլկլորից, թարգմանություններ են տպագրվում ռուս և հայ գրողների ու բանաստեղծների

digitised by A.R.A.R.@

ստեղծագործություններից։ Քրդական գրական սեկցիան և երիտասարդ գրողների միավորումը գործում է «Ռիա թազա» թերթի խմբագրությանը կից։ Հենց միայն այս տարի թերթի խմբագրությունը կազմակերպել է երեք սեմինար պարապմունք, որտեղ քննարկվել են հետևյալ հարցերը. քրդական գրականության զարգացման խնդիրները, գրական ժանրերի մասին, քուրդ գրականագետների հանդիպումը հայ գրող Ստեփան Զորյանի հետ։ Թերթի էջերում դիսկուսիա է բացվել քրդերենի ուղղագրության վերաբերյալ։

Անհետաքրքիր չի լինի մի քանի խոսք ասել թերթի աշխատողների կազմի մասին։ Խմբագրության ապարատը կոմպլեկտավորված է պատրաստված, գրագետ մարդկանցից, որոնք դուրս են եկել քրդական միջավայրից։ «Ռիա թազա»-ի բոլոր պատասխանատու աշխատակիցները ունեն բարձրագույն կրթություն, որը նրանք ստացել են Մոսկվայի, Լենինգրադի, Երևանի, Բաքվի բուհերում։ Նրանք համառորեն տիրապետում են լրագրության տեխնիկան և լուրջ վերաբերմունք են ցուցաբերում իրենց աշխատանքի թերությունների մասին եղած քննադատությանը։

Թերթը արժեքավոր աշխատանք է կատարում քրդական ինտելիգենցիայի աճման ուղղությամբ՝ իր շուրջը համախմբելով մեծ թվով բանթղթակիցներ և գյուղթղթակիցներ։ Թերթում գրում են քուրդ կոլտնտեսականներ և բանվորներ, մեխանիզատորներ և ուսուցիչներ, ինչպես և շրջկոմների քարտուղարներ, շրջսովետի գործկոմի նախագահներ, մինիստրներ, մինիստրի տեղակալներ, գիտական աշխատողներ, շրջանային թերթերի խմբագիրներ և ուրիշ շատ պարտիական, սովետական ու տնտեսական աշխատողներ։

Մեխանիզատորների ու կոլտնտեսականների կյանքի ու աշխատանքի մասին հետաքրքիր հոդվածներով հաճախ հանդես է գալիս Էջմիածնի № 2 ՄՏ կայանի մեխանիկ Մամե Սիաբանդը, որն ակտիվ թղթակցում է նաև ռեսպուբլիկական մյուս թերթերին։

Քրդական Փամբ գյուղի յոթնամյա դպրոցի վաստակավոր ուսուցիչ, գյուղթղթակից Ջալոե Մամոն թերթում գրում է կոլտնտեսության, դպրոցի աշխատանքի մասին, գյուղսովետի գործունեության, գյուղի բարեկարգման հարցերի, հին սովորությունների մնացուկների մասին։ Թերթի օգնությամբ աճել և ակտիվ գյուղթղթակիցներ են դարձել Ֆայզոե Օզմանը՝ Թալինի շրջանի Հակկո գյուղից, Ամոե Ոզգոն՝ Աշտարակի շրջանի Շամիրամ գյուղից և շատ ուրիշներ։ Ներկայումս «Ռիա թազա»-ում գրում են մոտ 120 գյուղթղթակից։ Թերթը կարևորագույն տեսական ու գիտական հարցերի լուսաբանման գործում ներգրավում է ռեսպուբլիկայի գիտական աշխատողներին։

«Ռիա թազա» թերթը իր գոյության կարճ ժամանակամիջոցում արդեն նվաճել է իր ընթերցողների սերն ու հարգանքը։ Խմբագրությունը շատ նամակներ է ստանում, որոնցում ընթերցողները գրում են թերթի դրական աշխատանքի մասին և իրենց ցանկություններն են արտահայտում նրա գործունեության է՛լ ավելի բարելավման առթիվ։ Թերթում տպագրված արժեքավոր նյութերից շատերը հաղորդվում են ռադիոյով։

Այս ամենից հետո, սակայն, պետք է ասել, որ «Ռիա թազա»-ի աշխատանքներում կան և թերություններ, որոնք խմբագրության կոլեկտիվը կարող է և պետք է վերացնի և թերթի ամեն մի համարը դարձնի ավելի հետաքրքրական, բովանդակալի, գաղափարապես հագեցած։

«Ռիա թազա»-ի խմբագրությունը պետք է ավելի շատ նյութեր տպագրի



տեղերից, ավելի լայնորեն լուսաբանի արդյունաբերության ու գյուղատնտեսության առաջավորների փորձը, սիստեմատիկորեն ցույց տա նրանց աճը։ Կարծում ենք անհրաժեշտ է հատուկ ուշադրություն դարձնել քուրդ բնակչության մեջ տարվող կուլտուրական աշխատանքին, հին սովորությունների մնացուկների դեմ պայքարի հարցերին, գիտա-աթեիստական պրոպագանդային։ Ըստ որում թերթի աշխատակիցներից պահանջվում է կարողություն ցուցաբերել և այս թեմաների վերաբերյալ նյութերը մատուցելու ավելի մատչելի ձևեր գտնել՝ խստորեն հաշվի առնելով քուրդ բնակչության ազգային առանձնահատկությունները։

«Ռիա թազա»-ն միակ տպագիր թերթն է, որ կարդում են Հայաստանի և Սովետական Միության մյուս ռեսպուբլիկաների քուրդ աշխատավորների լայն խավերը իրենց մայրենի լեզվով, նրա միջոցով են իմանում քուրդ ժողովրդի կյանքում տեղի ունեցած և ներկայումս տեղի ունեցող խոր փոփոխությունները, ծանոթանում են ՍՍՌՄ և սոցիալիստական երկրների ժողովուրդների կուլտուրային, վիթխարի նվաճումներին ու փորձին։ Այստեղից էլ պարզ է, թե ինչպիսի խոշոր պարտականություններ են դրվում քրդական երիտասարդ «Ռիա թազա» թերթի աշխատակիցների վրա՝ թերթի բովանդակությունն ամեն կերպ բարելավելու և գաղափարական մակարդակը բարձրացնելու գործում։

Թերթի գործունեությունը բարելավելու և նրա աշխատանքում եղած թերությունները վերացնելու առաջին անհրաժեշտ ու ամենակարևոր պայմանն է հեղինակային ակտիվի հետագա ընդլայնումը, կապի ամրապնդումը բանգյուղթղթակիցների հետ։ Որքան ավելի շատ լինեն թերթի մալստական օգնականները՝ խմբագրության ապարատից դուրս եղած ակտիվիստները, այնքան ավելի խոր կթափանցի նա քուրդ աշխատավորության բազմակողմանի կյանքի մեջ, այնքան ավելի լայն ու գործիմացորեն կլուսաբանի քրդական գյուղերում, քրդական ամեն ընտանիքում տեղի ունեցող հետաքրքրական երևույթները։ Սովետական մամուլն իր գոյության տարիներին բանգյուղթղթակցային շարժման ընդարձակման ուղղությամբ մեծ փորձ է կուտակել։ «Ռիա թազա»-ի խմբագրությունը պետք է հմտորեն օգտագործի այդ աշխատանքի փորձված բազմապիսի ձևերը և դրա հիման վրա ավելի ևս կարգավորի բանգյուղթղթակցային ակտիվը դաստիարակելու գործը։ Շատ օգտակար կլինի, եթե խմբագրությունն իր մասսայական աշխատանքի պլանում նախատեսի ակտիվիստների համար սիստեմատիկ սեմինարներ անցկացնել տեղերում ու խմբագրությունում, որտեղ կոնկրետ կերպով կքննարկվեն լուսաբանման ենթակա հարցերը։ Հարկավոր է հաճախակի կազմակերպել ռեյդեր բանգյուղթղթակիցների մասնակցությամբ, թղթակցական պոստեր կազմակերպել խոշոր ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, ավելի ու ավելի սերտորեն կապվել աշխատավորական լայն մասսաների հետ, ժամանակին համապատասխան ընթացք տալ նրանց նամակներին։

Մեծ օգուտ կտար, եթե խմբագրությունն իր հեռանկարային պլանը քննարկեր խմբագրության ապարատից դուրս եղած ակտիվիստների մասնակցությամբ։ Դա կօգներ ընդարձակելու թեմատիկ պլանը այնպիսի կարևոր հարցերով, որ կառաջադրեն կյանքին ավելի մոտ կանգնած, տեղերում գործի դրությունն ավելի լավ իմացող ակտիվիստները։ Եվ այս բոլոր միջոցառումները, անպայմանորեն կավելացնեն հետաքրքիր նյութերի ստացումը խմբագրությունում։

digitised by A.R.A.R.@

*Սովետական Միության ժողովուրդները գործարար կերպով պատրաստվում են մեծ Հոկտեմբերի քառասունամյա հոբելյանին։ Սոցիալիստական մրցության հզոր վերելք են ապրում գործարանները, ֆաբրիկաները, հանքերը, նորակառույցները, տրանսպորտի բոլոր տեսակների ձեռնարկությունները, կոլտնտեսությունները, սովետական տնտեսությունները և ՄՏ կայանները։ Հայաստանի աշխատավորները, այդ թվում նաև քուրդ աշխատավորները, սովետական ամբողջ բազմազգ ժողովրդի հետ միասին հսկայական ոգևորությամբ դիմավորեցին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի տոնակատարությանը նախապատրաստվելու մասին։ Սովետական մարդիկ կրկնապատկված ու եռապատկված եռանդով են աշխատում, որպեսզի համաժողովրդական մեծ տոնը նորանոր խոշոր նվաճումներով դիմավորեն տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառներում, բազմապատկեն մեր Հայրենիքի փառքը, ամեն կերպ ամրապնդեն նրա հզորությունն ու պաշտպանական կարողությունը, որպեսզի Հոկտեմբերյան ռևոլյուցիայի մեծ նվաճումները աչքի լույսի պես պաշտպանեն կոմունիզմի թշնամիների բոլոր ոտնձգություններից։*

*«Ռիա Թազա»-ի մարտական խնդիրն է՝ իր էջերում բազմակողմանի և լայնորեն արտացոլել աշխատավորության այն նոր, հզոր քաղաքական ու աշխատանքային ոգևորությունը, որ առաջացել է Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 40-ամյակին նախապատրաստվելու կապակցությամբ։ Մեծ տոնի նախապատրաստման օրերին թերթի բոլոր նյութերը առաջին հերթին պետք է հագեցած լինեն կոնկրետ փաստերով ու օրինակներով, որոնք պարզ ու մատչելի ձևով պատմեն քուրդ ժողովրդի ձեռք բերած նվաճումները, քուրդ աշխատավորներին ներգրավեն համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ, հանուն նորանոր հաջողությունների, և նրանց է՛լ ավելի սերտ համախմբեն Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության շուրջը, որոնք նրանց տանում են դեպի կոմունիզմ։*

---

# ԽԻՍՏ ԿԱՐԵՎՈՐ, ԲԱՅՑ ԱՆՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԱՏՆՎԱԾ ՄԻ ՀԱՐՑԻ ՄԱՍԻՆ

Ե. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

*Ակնբախ է այն փաստը, որ յուրաքանչյուր ժողովրդի կուլտուրական մակարդակը չափվում է նրա գրքային ֆոնդով։ Հայ ժողովուրդը իր գրին ու գրականությանը է՛լ ավելի զարկ տալու նպատակով շատ շուտ տիրապետել է տպագրության գործին։ Այդ է վկայում այն փաստը, որ հայկական տպագիր տառերը ստեղծվել և օգտագործման մեջ են դրվել մոտ 500 տարի սրանից առաջ, և առաջին հայերեն տպագիր գիրքը լույս է տեսել 1512 թվականին Վենետիկում։ Տպագրական տառերի գործադրումը մեծ իրադարձություն հանդիսացավ հայ կուլտուրայի ու գրականության հետագա զարգացման ու տարածման գործում. հայկական տպագրական տառերն իրենց անփոխարինելի դերն են կատարել ու շարունակում են կատարել հայ ժողովրդի կուլտուրայի, գրականության բարգավաճման, աննախընթաց վերելքի գործում։ Մեր նախորդները լավ են հասկացել հին հունական այն ասացվածքը, թե՝ «շատը քչի մեջ զետեղելու միակ միջոցը գիրն ու գրականությունն է»։ Եվ առաջին հայ տպագիր գրքից մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատումը աշխարհի տարբեր քաղաքներում գործել են ավելի քան 460 մեծ ու փոքր տպարաններ, որոնք տպագրել են հայերեն գրքեր, ամսագրեր, թերթեր։*

*Բայց, դժբախտաբար, ինչպես ցույց են տալիս փաստերը, հայ հրատարակչական, տպագրական գործը հիմնականում գտնվել է բուն Հայաստանից դուրս՝ Ռուսաստանում և հայկական գաղութներում, առանձին կամ մի խումբ մարդկանց ձեռքում, որոնք այդ գործին նայել են բարեգործական կամ թե շահադիտական նպատակներով, չեն մտածել նրա բարեփոխման ու զարգացման մասին, և այդ իր բացասական կնիքն է դրել հայ տպագրական, հրատարակչական գործի հետագա զարգացման վրա։*

*Ճիշտ է, հայկական տպագիր տառերի նոր տեսակների ստեղծման, բազմացման, գեղեցկացման, եղած տառերի թերությունների վերացման ու բարեփոխման գործով զբաղվել են շատ և շատ փորագրիչներ, տառաձուլողներ, տպագրիչներ, նկարիչներ, բայց նրանց ջանքերն ու փորձերը մեծ մասամբ ապարդյուն են անցել։ Դեռ այսօր էլ մեր տպագիր տառերը իրենց գծային հիմնական կառուցվածքով ու տեսքով շատ չեն փոխվել անցյալում գործածված տպագրական տառերի համեմատությամբ, եթե չհաշվենք Արամյանի տառատեսակը, որը գործածության մեջ է դրվել 1850 թվականին և արժանացել է լավ գնահատականի։ Որպես օրինակելի տպագրական տառատեսակ այն լայն ընդունելություն է գտել հայ տպագրական գործում։*

*Սովետական իշխանության տարիներին Հայաստանում չտեսնված չա-*

digitised by A.R.A.R.@

*փով աճել է պոլիգրաֆ արդյունաբերությունը։ Բայց չնայած դրան, ներկայումս Հայաստանի պոլիգրաֆ ձեռնարկություններում գործածության մեջ եղած հայկական տպագրական տառերի տեսակներն այնքան սահմանափակ ու քիչ են, որ տպարանները մեծ դժվարությամբ են կարողանում լավ ձևավորել գրքերն ու պարբերական մամուլը։ Տեքստային շարվածքի համար փաստորեն գոյություն ունի «գրքի հասարակ» տառատեսակը ու լրիվ տարբերակներով՝ 6, 8, 10, 12, 14, 16 և լինոտիպային շարվածքի համար «սովետական տառատեսակը», որն ունի միայն կեգել 8 և 10, որը գործածության է հանձնվել 1938 թվականին։ Այդ պատճառով էլ հրատարակվող ամբողջ գրականությունը, ամսագրերն ու թերթերը շարվում են հիմնականում այդ սահմանափակ տառատեսակներով։ Ի դեպ, պետք է նշել, որ պոլիգրաֆիական կանոններին հակառակ՝ գրքի և պարբերական մամուլի տեքստի համար օգտագործվում է շեղ տառը, իսկ ընդգծումների և մեջբերումների համար՝ ուղիղ տառը. նման վիճակը հրատարակչական գործում անհանդուրժելի է։ Իսկ այդ տառատեսակների սահմանափակ լինելու և տառերի գծագրական թերությունների արդյունք է, որը գալիս է անցյալից։*

*Հայկական տառատեսակների այսպիսի սահմանափակությունը տպարաններին և հրատարակչություններին զրկում է տառերի ընտրություն կատարելու հնարավորությունից, ուստի քաղաքական, գեղարվեստական, մանկա-պատանեկական, գիտա-մասսայական, տեխնիկական գրականությունը, ինչպես և դասագրքերը շարվում են ոչ համապատասխան տառատեսակներով և դա ազդում է հրատարակվող գրականությունն ըստ սերիաների պատշաճ տեխնիկական ու գեղարվեստական ձևավորման գործի վրա։ Դրա արդյունքը լինում է այն, որ հրատարակված գրքերում մենք տեսնում ենք տառերի միատեսակություն, միօրինակություն։ Այսպես, մարքսիզմի կլասիկների աշխատությունները, Թումանյանի, Չարենցի, Իսահակյանի ու մյուս բանաստեղծների պոեմները և բանաստեղծությունները շարվում են նույն տառերով, ինչով շարվում են գյուղատնտեսական, սպորտային, սանիտարական, գիտա-մասսայական գրքերը։ Այնինչ գրքի էսթետիկան սկսվում է տպագրական տառից. յուրաքանչյուր սերիայի գիրք պետք է ունենա իր տառատեսակը, որը անպայման պիտի համապատասխանի գրքի բովանդակությանն ու սերիային, քանի որ այդ բարձրացնում է գրքի ընդհանուր կուլտուրան։ Ավելի անմխիթար է դրությունը ամսագրերի, թերթերի տառատնտեսության բնագավառում։ Պարբերական մամուլի համար տառերի միատեսակությունը և սահմանափակությունը անասելիորեն դժվարացնում է թերթերի, ամսագրերի պատշաճ ձևավորումը, խմբագրություններին զրկում է թերթի ծավալը ավելի էֆեկտիվ օգտագործելու հնարավորությունից։*

*Հայկական տպագրական տառերի սահմանափակ լինելու փաստը ավելի ցցուն կերպով ցույց տալու նպատակով բավական է համեմատել ռուսական տպագրական տառատեսակների ԳՈՍՏ—3489-ի հետ։ Ռուսական տպագրական տառատեսակների թիվը հասնում է 52-ի, իսկ յուրաքանչյուր տեսակաշարք ունի իր լրիվ տարբերակները (կեգլները), որոնց ընդհանուր թիվը միասին վերցրած հասնում է 619-ի, այդ թվում լինոտիպի տառամայրերը (մատրիցաները) 139 և մոնոտիպի տառամայրերը՝ 55։ Գրականության բոլոր տեսակի ժանրերի համար գործածվում է «220» տեսակի, դասագրքերի համար՝ «93», ամսագրերի համար՝ «85», թերթերի համար՝ «44» տեսակի, իսկ մնացածները*



*օգտագործվում են պոլիգրաֆիական այլ կարգի արտադրանքի համար։ Բնական է, որ նման հարուստ տառատնտեսություն ունենալու դեպքում հեշտանում է գրքերի և մամուլի ճիշտ ու գեղեցիկ ձևավորումը։*

*Ահա թե ինչու իրավացի են բոլոր նրանք, ովքեր բողոքում են, թե հայկական տպագրական տառատեսակները խիստ սահմանափակ են, տառատնտեսությունը ետ է մնում հրատարակչական գործի աննախընթաց աճից և դժվարացնում է նրա հետագա զարգացման հնարավորությունները։*

*Միայն անցյալ, 1956 թվականին լույս է տեսել 750 անուն գիրք և գրքույկ՝ 5 միլիոն 700 հազար ընդհանուր տիրաժով, այդ նույն տարին հրատարակվել է 13 անուն ամսագիր և 57 անուն ռեսպուբլիկական ու շրջանային թերթ, որոնց ընդհանուր տիրաժը միլիոնների է հասնում, և այդ բոլորը շարվում են տեքստային միայն երկու տառատեսակով։ Մեր տառատնտեսության այս վիճակի պատճառը, ինչպես ասացինք, այն է, որ վերջին հարյուրամյակի ընթացքում այդ ուղղությամբ շատ քիչ բան է արված. ոչ միայն չեն ստեղծվել անհրաժեշտ քանակությամբ տպագրական տառերի նոր տեսակներ, այլև գործածության մեջ եղած որոշ տառատեսակներ մաշվածության պատճառով դուրս են եկել գործածությունից և այլևս չեն վերականգնվել։*

*Հայկական տպագրական տառատնտեսության ներկա վիճակի մասին խոսելիս չենք կարող աչքաթող անել նաև գործածության մեջ եղած տպագրական տառերի մի շարք էական պակասություններն ու թերությունները։*

*Գործածության մեջ գտնված հայկական տպագիր տառերը շատ մազագծեր ունեն, որոնք օգտագործման ժամանակ, հատկապես տպագրության պրոցեսում դժվարություններ են հարուցում։ Մազագծերը կոտրվելու կամ անցքերն աննշան չափով տպագրական ներկով լցվելու դեպքում տառերի որոշ մասը կորցնում է իր իսկական տառապատկերը կամ թե նմանվում է մի ուրիշ տառի և աղճատվում է միտքը։ Այդպես են, օրինակ, վ, գ, կ, ս, ռ, ո, չ, շ և մի շարք ուրիշ տառեր, որոնց պատկերները իրարից զատվում են շատ բարակ գծերով ու դյուրաբեկ տառամասնիկներով։ Մեր տպագրական տառերի էական թերություններից մեկն էլ այն է, որ ի տարբերություն ռուսական և լատինական տառերի, մեր հիմնական տեքստային տառերը չունեն ուղղաձիգ դրություն, այլ շեղ են, որի պատճառով էլ ընթերցանության ժամանակ առաջանում է տեսողության ավելորդ լարվածություն և ազդում է աչքերի վրա։*

*Հայտնի է նաև, որ մեր տպագրական տառերը ինչպես տողի լայնությամբ, այնպես էլ բարձրությամբ ավելի շատ տարածություն են գրավում, քան ռուսականը և լատինականը։ Բարձր հաճախականություն ունեցող տառերը՝ ա, ու, պ, տ և այլն խիստ լայն են և յուրաքանչյուր տողի մեջ մեծ տարածություն են գրավում։ Տառերի մի մասն էլ՝ ե, ն, մ, հ, և այլն բարձրությամբ, իսկ բ, գ, դ, զ և այլն ցածրությամբ են մեծ տեղ գրավում։ Տառերի հասակների անհամաչափության պատճառով հայկական տառերի շարվածքի համար որպես կանոն օգտագործվում են շպոնները՝ տառերի հասակներում եղած անհամաչափությունները կարգավորելու և մի ընդհանուր չափի մեջ վերցնելու համար։ Այդ ամենը, անշուշտ, ավելացնում է թղթի և պոլիգրաֆիական նյութերի ծախսումները, մեծացնում է գրքի ծավալը, իսկ ամսագրերին և թերթերին զրկում է ավելի շատ նյութ զետեղելու հնարավորությունից։ Այսպես, օրինակ, «Կոմունիստ»-ը, որը շարվում է ռուսական տառե-*

digitised by A.R.A.R.@

րով, մոտ 10—15 տոկոսով ավելի շատ նյութ է տեղավորում, քան «Սովետական Հայաստան»-ը, չնայած դրանք նույն ծավալի թերթեր են։

Մեր տպագրական տառերի հիմնական թերություններից մեկն էլ այն է, որ նրանց որոշ մասը չունի արտաքին գեղեցկություն ու գրավչություն, այնինչ գրքերը և թերթերը ճաշակով ձևավորելու, տեխնիկապես ճիշտ դասավորելու գործում տպագրական տառերի արտաքին տեսքը և նրա մարմնակազմի գծագրությունը կարևոր դեր է խաղում։ Տառի արտաքին պատկերի գծագրությունը պիտի լինի գեղեցիկ, գրավիչ։ Իզուր չէ, որ թե՛ անցյալում, և թե՛ առավել ևս այժմ, այդ հարցը խիստ զբաղեցրել և զբաղեցնում է պոլիգրաֆիստներին ու հրատարակիչներին, որոնք ելնում են այն սկզբունքից, որ «տառը գիրք է դառնում, մարդու հետ խոսում, ամենուրեք տարածում գեղեցիկ մտքերը, դրա համար էլ տառը անպայման պիտի լինի գեղեցիկ ու գրավիչ, դյուրընթեռնելի»։ Իսկ այդ նշանակում է, որ յուրաքանչյուր տպագրական տառ պետք է ունենա իր կայուն պատկերը, զերծ լինի համանմանություններից, բարդություններից ու զիգզագներից և ունենա պարզ կառուցվածք ու համաչափ մարմնագծեր։

Տպագրական տառերի գեղեցիկ լինելու կարևոր նախադրյալներից մեկն էլ այն է, որ նրանք ունենան հասակների ընդհանուր ներդաշնակություն, ներդրավված լինեն սեղմ մի չափի մեջ և ուղղաձիգ դիրքով ուղիղ կանգնած լինեն տողաշարքում։ Այնինչ հայկական տպագրական տառերը, ինչպես մենք արդեն նշել ենք, ունեն շեղություն։ Բացի այդ, մի շարք տառեր ունեն զիգզագներ, ինչպես, օրինակ՝ ձ, ծ, ճ և այլն։ Հասակների տարբերությունը շատ մեծ է ա, ի, ո, փ, ու, ղ և մի շարք ուրիշ տառերի միջև, որի պատճառով դժվար է նրանց դնել մի սեղմ չափի մեջ։

Նշելով հայկական տպագրական տառերի կառուցվածքային, գծագրական թերությունները՝ մենք չենք ուզում ասել, թե անհրաժեշտ է ինչ-որ ռեֆորմ մտցնել մեսրոպյան տառապատկերների մեջ։ Այդ տառատեսակները վաղուց ի վեր գործադրվում են, և մեր տեսողությունն ընտելացել է այդ տառապատկերներին, ամուր նստել մեր պատկերացման մեջ, ուստի սխալ են նրանք, ովքեր պահանջում են ինչ-որ ռեֆորմներ մտցնել հայկական տպագրական տառերի մեջ։ Մի ժամանակ (1925—1935 թթ.) մի խումբ մասնագետներ՝ Լ. Յաղուբյանի գլխավորությամբ առաջարկում էին և նույնիսկ փորձեր արեցին մեսրոպյան տառապատկերները հիմնովին փոխելու լատինական տառապատկերներով, բայց այդ փորձն իր ժամանակին իրավացիորեն մերժվեց հասարակության կողմից։

Ուստի պաշտպանելով մեսրոպյան տառապատկերներն անփոփոխ թողնելու տեսակետը, միաժամանակ չի կարելի հաշտվել գոյություն ունեցող վիճակի հետ ու չմտահոգվել մեր տառերի բարեփոխման և նոր, ավելի կատարելագործված տառատեսակների ստեղծման խնդրով, որը դուրս կբերի սահմանափակությունից և թույլ կտա տառերի ընդհանուր գործում բծախնդիր լինել և բարձրացնել տպագրական արվեստը։

Այդ նույն թվերին գործնական առաջարկություններ եղան այնպիսի հեղինակավոր անձնավորությունների կողմից, ինչպիսիք էին Հայկական Գիտությունների ակադեմիայի իսկական անդամներ Մանանդյանը, Աճառյանը, ՀՍՍՌ արվեստի վաստակավոր գործիչներ Տեր-Ավետիսյանը, Գ. Լևոնյանը և ուրիշներ. նյութատեխնիկական անհրաժեշտ պայմաններ չստեղծելու պատճառով այդ առաջարկները մնացին անհետևանք։ Երկար ընդմիջումից հետո, 1950



թվականին, ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ Կ. Վարդանյանցի ակտիվ մասնակցությամբ վերսկսվեց հայկական տպագրական տառերի, տառապատկերների բարեփոխման և նոր գծագրությամբ տառապատկերների ստեղծման գործը, որի համար կազմակերպվեց մասնագիտական հանձնաժողով։ Այդ հանձնաժողովի աշխատանքի շնորհիվ հնարավորություն ստեղծվեց վերականգնել մաշվածության պատճառով գործածությունից հանված տպագրական տառերի մի մասը։ Հանձնաժողովը միևնույն ժամանակ քննության առավ մի շարք նոր տառապատկերների նախագծեր և ընդունեց Հ. Մնացականյանի և Խ. Սամվելյանի ներկայացրած նոր տառապատկերները՝ մասսայական օգտագործման համար տառեր պատրաստելու համար։ Ցավոք սրտի, այդ գործը մինչև այսօր էլ անհետևողականության պատճառով մնում է կիսավարտ։ Այստեղ չի կարելի չնշել ձուլող վարպետ Մ. Մինասյանի կատարած աշխատանքը. նա՝ Զ. Մարուխյանի և Մ. Մատինյանի օգնությամբ կարողացավ 3—4 տարում տեխնիկական պրիմիտիվ հնարավորությունների պայմաններում պատրաստել չորս նոր տառատեսակ՝ ոչ լրիվ տեսակաշարքով և այն հանձնել մասսայական օգտագործման։ Ճիշտ է, այդ տառերը որոշ տեխնիկական թերություններ ունեն, բայց դա չի խանգարում նրանց մասսայական օգտագործման մեջ դնելուն։ Ներկայումս գրքերում և մամուլում մենք հաճախ ենք տեսնում այդ նոր տառատեսակները, որոնք նորություն են և որոշ չափով մեղմացնում են մեր տպագրական տառերի խիստ պակասը։ Հայկական նոր տառապատկերներ ստեղծելու ուղղությամբ որոշ աշխատանք են կատարել նաև Սփյուռքի մի քանի հայ նկարիչներ։ Նրանցից ոմանք ցանկություն են հայտնել իրենց ստեղծած տառապատկերների գծագրություններն ուղարկել Սովետական Հայաստան՝ մշակելու և մասսայական օգտագործման հանձնելու համար։

Տարիներ շարունակ Հայաստանի Պոլիգրաֆհրատարակչության վարչությունը, հրատարակչությունները, Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիան, Լուսավորության մինիստրությունը, իսկ այս վերջին տարիներում նաև Կուլտուրայի մինիստրությունը աչքաթող են արել տառատեսակների հարցը և բավարարվել են միայն եղածով։ Պետք է վերջ դրվի էպիզոդիկ, պրիմիտիվ այն բոլոր ձեռնարկումներին ու փորձերին, որ առանձին անձիք կամ շահագրգռված կազմակերպություններն անում են տառերի բարեփոխման ու նոր տառատեսակների ստեղծման մեծ ու դժվարին գործն իրենց ուժերով լուծելու համար, քանի որ դրանք, բացի ժամանակ վատնելուց և պետական միջոցներն աննպատակ ծախսելուց, էական արդյունք չեն տալիս։ Ինչպես տարիների փորձը ցույց է տվել, խոշոր նշանակություն ունեցող այսպիսի հարցի լուծումը պահանջում է ռեսպուբլիկայի ղեկավար օրգանների անմիջական միջամտությունն ու օգնությունը։

Գեղեցիկ գծագրությամբ բազմազան, հարուստ տառատեսակություն ստեղծելը հասարակ և հեշտ գործ չէ։ Այդ գործը պահանջում է տարիների համառ, հետևողական, պլանային և ստեղծագործական աշխատանք։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XX համագումարի դիրեկտիվներում ուղղակի ասված է. «Միջոցներ ձեռք առնել բարելավելու և զարգացնելու գրահրատարակչական գործը։ Ավելացնել գրքերի, ամսագրերի, թերթերի թողարկումը՝ ուշադրություն դարձնելով հրատարակությունների ու տիրաժների հետագա

digitised by A.R.A.R.@

աճման վրա։ Բարելավել թողարկվող գրքերի գեղարվեստական ձևավորումն ու պոլիգրաֆիկ կատարումը, ընդլայնել և ամրապնդել պոլիգրաֆ բազան... տպարանները հագեցնել ժամանակակից սարքավորումներով, բարելավել տպագրական տառատեսակները»։

Ելնելով պարտիայի XX համագումարի այս ցուցումից՝ ռեսպուբլիկայի ղեկավար օրգանները պետք է ընդհուպ զբաղվեն հայկական տառատնտեսության բարեփոխման ու բազմացման հարցերով, որ հասարակական, կուլտուրական խոշոր նշանակություն ունեցող գործ է։ Ժամանակն է վճռական միջոցառումներ ձեռնարկել, որպեսզի առաջիկա տասնամյակի ընթացքում վերացվի այդ հարցում գոյություն ունեցող անասելի հետամնացությունը, քննության առնվի տառատեսակների ստեղծման և բարեփոխման 10-ամյա պլանը։

Ելնելով գրահրատարակչական գործի արդիական պահանջներից՝ 10-ամյա պլանի առաջին հինգ տարում անպայման պետք է լուծվեն հետևյալ հարցերը.

ա) լրիվ վերականգնել գործածության մեջ եղած, բայց մաշվածության պատճառով գործածությունից հանված տպագրական տառերը.

բ) ստեղծել առնվազն 20 նոր տառատեսակների գծագրություններ՝ իրենց լրիվ կեգելներով, այսինքն՝ 6 պունկտից մինչև 48 պունկտ ներառյալ, այն հաշվով, որ առաջին 5 տարում աստիճանաբար արտադրությանը հանձնվեն մասսայական օգտագործման համար գրքային 10, ամսագրերի՝ 3, թերթերի՝ 4 տառատեսակներ իրենց կեգելներով և դասագրքերի համար՝ 3 տեսակ.

գ) Նախատեսած 20 տեսակ նոր տառերի գծագրություններով պատրաստել լինոտիպի, մոնոտիպի ոչ լրիվ կեգելներով միայն տեքստային տառերի մատրիցաներ։ Այդ նպատակով պետք է հարց հարուցել ՍՍՌՄ Մեքենաշինության և գործիքաշինության մինիստրության առաջ, որպեսզի պլանային կարգով յուրքանչյուր տարի իր գործարանների արտադրական պլաններում տեղավորի 9—10 լինոտիպի, մոնոտիպի հայկական տառապատկերներից տառամայրերի պատրաստումը և ապահովի նրանց հանձնումը ըստ տարիների.

դ) ընդարձակել տառաձուլարանը նոր կատարելագործված մեքենաներով, որը կարագացնի ձեռքի տառերի և տառամայրերի ձուլման գործը։

Տասնամյակի երկրորդ հինգ տարում պետք է հասնել այնպիսի վիճակի, որ քաղաքական, գեղարվեստական, մանկա-պատանեկական, գիտա-տեխնիկական գրականությունը, դասագրքերը, ինչպես և թերթերն ու ամսագրերը՝ հիմնականում ապահովվեն ձեռքի բազմազան տառատեսակներով և լինոտիպի, մոնոտիպի տառամայրերով։ Իհարկե, այս ամենը չի կարող լրիվ հագեցնել հրատարակչությունների պահանջը, բայց կօգնի վերացնելու այն միապաղաղությունը, որ գոյություն ունի այժմ գրքերի հրատարակման և ձևավորման գործում։

Բացի վերոհիշյալ միջոցառումներից, պետք է լուծվեն նաև տառատնտեսության հետ կապված մի քանի էական հարցեր, ինչպես, օրինակ, Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիային կից ստեղծել մասնագետներից կազմված տառային կոմիտե, որը քննության առնի և հաստատի նոր տառերի գծագրությունները և հանձնի արտադրության՝ մասսայական պատրաստման համար։ Եղած տառերի բարեփոխման և նոր տառերի գեղեցիկ գծագրություններ ստեղծելու համար հայտարարել կոնկուրս՝ նպատակ ունենալով ավելի շատ կարողուժեր ներգրավել այդ գործի մեջ ու արագացնել նոր տառապատկերներ ստեղ-



ծելու գործը։ Հարկավոր է մեծ տպարաններից մեկում ստեղծել գիտա-տեխնի-
կական լաբորատորիա, որը ճշգրտի տառերի նոր գծագրությունների տեխնի-
կական վիճակը և հարմարեցնի պոլիգրաֆարդյունաբերության պահանջներին,
ինչպես նաև հող նախապատրաստի հայկական տառերի ստանդարտիզացիա
անցկացնելու համար։

Տպարաններում տառատնտեսության պաշտպանման գործում վճռական
նշանակություն ունի բավարար չափով շրջանառու միջոցներ հատկացնելը։
Սակայն ՀՍՍՌ Ֆինանսների մինիստրությունը տարեց-տարի մեխանիկորեն
կրճատում է այդ միջոցները, առանց հաշվի առնելու պոլիգրաֆարդյունաբե-
րության առանձնահատուկ պայմանները։ Տպարաններում ստեղծվել է այն-
պիսի վիճակ, որ որոշ գրքեր 6—7 ամսում հազիվ են շարվում, քանի որ տա-
ռերի պակաս լինելու պատճառով մի մամուլը շարվում, մատրիցավորվում,
շարվածքը ցրվում է և ապա նոր սկսվում հաջորդ մամուլի շարվածքը։ Դեռ
ավելին, կան գրքեր, որոնք 2—3 տարի արտադրության մեջ են, ինչպես օրի-
նակ, Տ. Պետրոսյանի «Ճախմատային էտյուդները», որը տառեր չլինելու
պատճառով չի շարվում, իսկ տառեր ձեռք բերել չի կարելի, քանի որ շրջա-
նառու միջոցները թույլ չեն տալիս։ Էլ չենք խոսում այն մասին, որ առանձին
դեպքերում թերթերի շարվածքը ձգձգվում է՝ բավարար քանակով տառեր և
կապար չլինելու պատճառով։ Բնական է, որ նման վիճակը ոչ միայն դժվա-
րություններ է ստեղծում, այլև բարձրացնում է ինքնարժեքը, գցում է շար-
վածքի որակը։

Պետք է վերջ տալ այդ դրությանը։ Ժամանակն է, որ Ֆինանսների մի-
նիստրությունը փոխի իր վերաբերմունքը, նորմալ պայմաններ ստեղծի տպա-
րանների համար՝ տառատնտեսության պաշտպանման ու բազմացման համար։

Դնելով հայկական տպագրական տառերի բարեփոխման և նոր, ավելի
կատարելագործված տառապատկերների գծագրություններ ստեղծելու խնդիրը՝
մենք նպատակ ունենք այդ խիստ կարևոր հարցը դուրս բերելու նեղ հիմնար-
կային հարցերի շարքից և ռեսպուբլիկայի ղեկավար օրգանների ուշադրու-
թյանն արժանացնել։ Այս հարցը չի ստանա իր արմատական լուծումը, եթե
չդասվի պետական կարևոր նշանակություն ունեցող հարցերի շարքը և չմտնի
պետական պլանավորման մեջ և ամեն տարի անհրաժեշտ ֆինանսական մի-
ջոցներ չտրամադրվեն։

Միայն այդ դեպքում կարևոր, բայց անուշադրության մատնված այս
հարցը կստանա իր լուծումը, որով և պայմաններ կստեղծվեն գրահրատա-
րակչական գործի հետագա զարգացման համար։

---

digitised by A.R.A.R.@

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՎԵՐԵԼՔԻ ՈՒՂԻՈՎ

*Մ. ԴԱՎԹՅԱՆ*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի շնորհիվ հայ ժողովուրդը փրկվեց դարեր շարունակ պատմության արյունոտ քառուղիներում կրած անօրինակ տառապանքներից և սովետական կարգերի հաստատումով պատմական զարգացման, ազգային վերածննդի ու բարգավաճման լայն ճանապարհ դուրս եկավ։*

*Եվ հիրավի, հսկայական են այն նվաճումները, որ կարող է այժմ, Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի քառասնամյա հոբելյանի առթիվ հանրագումարի բերել մեր ժողովուրդը։ Երբեմնի ավեր ու հետամնաց, չուլթի վաստակին կառչած Հայաստանը դարձել է ինդուստրիալ, առաջավոր մի երկիր, որի քարակուռ լեռներում ու կանաչազեղ հովիտներում արդյունաբերական բազմատասնյակ հսկաներ են վեր խոյանում։*

*Երկրի տնտեսական բարգավաճմանը համընթաց զարգացման բարձր մակարդակի են հասել կուլտուրան, գիտությունը, գրականությունն ու արվեստը։ 1939, ապա և 1956 թվականին Մոսկվայում կայացած հայկական արվեստի ու գրականության տասնօրյակները ցուցադրեցին սովետահայ արվեստի աննախընթաց նվաճումները, նրա բարձր մակարդակը, նրա ազգային ինքնատիպությունը, գունագեղությունն ու սոցիալիստական ոգին։ Այդ հաջողություններն ըստ էության պայծառ արտացոլումն էին սոցիալիստական հասարակարգի հրաշագործ ուժի, Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի։*

*Սովետական իշխանության տարիներին Հայաստանում ոչ միայն փարթամորեն ծաղկել են դարերի խորքից եկող, սակայն դարեր շարունակ ոտնահարված մեր կուլտուրան ու արվեստը, այլև ստեղծվել ու զարգացել են նորերը, այդ թվում և արվեստներից ամենամասսայականը՝ կինեմատոգրաֆիան։*

*Հայկական կինեմատոգրաֆիան ստեղծվել է 1925 թվականին և հենց առաջին իսկ տարիներին նրա թողարկած կինոնկարները՝ «Նամուս», «Զար ոգի», «Զարե», «Մեքսիկական դիպլոմատներ» և այլն արժանացան Սովետական Միության էկրաններին և միլիոնավոր հանդիսականներ գոհունակությամբ ընդունեցին դրանք։ Հետագա տարիներին հանդես եկան գաղափարական ու գեղարվեստական առումով ավելի բարձրարժեք ու նշանակալից ֆիլմեր՝ «Պեպո», «Կարո», «Զանգեզուր», «Սևանի ձկնորսները», «Լեռնային մարշ», «Դավիթ բեկ» և այլն, որոնք իրենց ուրույն տեղը գրավեցին սովետական կինեմատոգրաֆիայում և ուրվագծեցին մեր ազգային այդ նոր ու տակավին երիտասարդ արվեստի զարգացման հեռանկարները։ Կինոարվեստի զարգացման պահանջներին համապատասխան սկսեցին հանդես գալ ստեղծագործա-*



*կան շնորհալի կադրեր՝ կինոռեժիսյորներ, օպերատորներ, դերասաններ և այլն։ Կինոստուդիան սկսեց աստիճանաբար վերազինվել արտադրական ու տեխնիկական նորանոր հնարավորություններով։*

*Սակայն Հայրենական Մեծ պատերազմի տարիներից սկսած՝ սովետական ողջ կինեմատոգրաֆիայի համար ընդհանուր մի շարք պատճառների հետևանքով՝ Երևանի կինոստուդիան ակնհայտ լճացում ապրեց։*

*Հայտնի է, որ սովետական կինեմատոգրաֆիան, որը զարգացման պանծալի ճանապարհ է անցել, տասնամյակների ընթացքում բազմաթիվ սքանչելի ֆիլմեր է արտադրել և իր վսեմ գաղափարներով ու բարձր գեղարվեստականությամբ առաջնություն նվաճել աշխարհում, հետպատերազմյան մի շարք տարիների ընթացքում որոշ տեղատվություն ապրեց։ Ժանրային միակողմանիությունը մի քանի տարի շարունակ պարզապես դժվարացրին կինոարտադրության հետագա զարգացումը։ Այդ տարիներին մեր կինոարվեստի զարգացման գործում իր անդրադարձումը գտավ և անհատի պաշտամունքը իր վնասակար հետևանքներով։ Այդ բոլորի հետ միասին կինեմատոգրաֆիայի կազմակերպական կառուցվածքի ու ղեկավարության բյուրոկրատական բազմաստիճան սիստեմը իսպառ կաշկանդեց նրան։ Այսպիսով, բանն այնտեղ հասավ, որ 1952 թվականին Սովետական Միության բոլոր կինոստուդիաներում, միասին վերցված, թողարկվեց ընդամենը 8 գեղարվեստական ֆիլմ։*

*Այդ ընդհանուր դրությունը, բնականաբար, ծանր անդրադարձավ նաև ազգային կինոստուդիաների աշխատանքի վրա։ Մասնավորապես մեզ մոտ կինոստուդիան կատարյալ անշարժության մատնվեց։ 1944 թվականից մինչև 1954 թվականը, տասը տարվա ընթացքում, արտադրվեց երկու գեղարվեստական ֆիլմ՝ «Անահիտ» և «Արարատյան դաշտի աղջիկը», որոնցից և ոչ մեկը դուրս չեկավ միութենական էկրան։ Նորմալ աշխատում էր միայն կինոխրոնիկան, սիստեմատիկ տալով իր հերթական ժուռնալները և մի շարք կինոակնարկներ։*

*Ըստ էության տասը տարի շարունակ այստեղ ստեղծագործական ամլության մատնվեցին մեր կինոարվեստի աշխատողները, մինչդեռ նրանցից ոմանք իրենց ստեղծագործական լուրջ կենսագրության հետ միասին ունեին նաև բարձր վարպետության հասնելու խոստումնալից տվյալներ։ Անշուշտ, խրոնիկական պարապուրդի այդ երկար տարիների ընթացքում խոսք անգամ չէր կարող լինել նոր, երիտասարդ կադրերի ներգրավման ու աճեցման մասին։*

*Պետք է ասել, որ այս բոլորին զուգահեռ հետզհետե թանձրանում էր անվստահության մթնոլորտը տեղական ստեղծագործական ուժերի նկատմամբ։ Եվ պատահական չէ, որ տարիների ընդմիջումից հետո, 1953 թվականին արտադրության հանձնված միակ ֆիլմը՝ «Լեռնային լճի գաղտնիքը» նկարահանելու համար դրսից ռեժիսյոր հրավիրվեց, որի անծանոթ լինելը հայկական բնաշխարհին ու միջավայրին՝ իր կնիքը դրեց նկարի վրա։*

*Մեր պարտիան ու կառավարությունը միշտ էլ ամենալուրջ հոգատարություն են ցուցաբերել մեր երկրում արվեստի զարգացման նկատմամբ, և նրանց ուշադրությունից չէր կարող վրիպել կինեմատոգրաֆիայում ստեղծված ծանր կացությունը։ Եվ ահա, վերջին երկու-երեք տարիների ընթացքում ձեռնարկվեցին մի շարք արմատական միջոցառումներ՝ գեղարվեստական ֆիլմերի արտադրության գործը բարելավելու և նրանց գաղափարական-գեղարվեստական որակը բարձրացնելու համար։ Այդ միջոցառումներն անմիջապես իրենց*



digitised by A.R.A.R.@

ակնհայտ արդյունքները տվին։ 1955 թվականի ընթացքում սովետական կինեմատոգրաֆիան մասսայական էկրաններին հանձնեց 65 գեղարվեստական ֆիլմ, իսկ 1956 թվականին՝ 80-ից ավելի։

Պետք է ասել, որ այդ ընդհանուր միջոցառումներին զուգահեռ մեզ մոտ, Երևանի ստուդիայի աշխատանքները բարելավելու նկատմամբ առանձնահատուկ մտահոգություն ցուցաբերեց Հայաստանի Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեն, որը մեր ազգային կինոարվեստը տարիների անշարժությունից դուրս բերելու ուղիներ ցույց տվեց։

1955 թվականին մեր կինոստուդիան թողարկեց երկու լիամետրաժ գեղարվեստական ֆիլմ՝ «Ուրվականները հեռանում են լեռներից» և «Հացեատիրոջ որոնումները» և մեկ կարճամետրաժ ֆիլմ՝ «Ոսկե ցլիկը», իսկ 1956 թվականին վեց ֆիլմ՝ «Ամպրոպի արահետով», «Պատվի համար», «Սիրտն է երգում», «Դարեր ու տարիներ», «Հովազաձորի գերիները» և «Երբ քեզ հետ են ընկերները»։ Դրանցից զատ, վերջին երկու տարում արտադրվել են մի շարք մեկից մինչև երեք մաս ունեցող կինոակնարկներ՝ «Մ. Նալբանդյան», «Խ. Աբովյան», «Մ. Սարյան», «Ավ. Իսահակյան», «Հայկական արվեստի ու գրականության տասնօրյակը Մոսկվայում» և այլն։ Այդ գեղարվեստական բոլոր ֆիլմերն էլ ընդունվել են միութենական էկրանի համար։

Սակայն կարելի՞ է գոհացուցիչ համարել լոկ արտադրական այս տվյալները, թեկուզ նկատի առնելով նաև, որ Երևանի կինոստուդիան 1956 թվականին պլանով սահմանված երեքի փոխարեն վեց ֆիլմ թողարկեց։ Ամենևին ո՛չ։ Մեր պարտիայի XX համագումարում ՍՄԿՊ Կենտկոմի հաշվետվության մեջ ասված է, որ մեր գրականությունն ու արվեստը պետք է դառնան առաջինն աշխարհում ոչ միայն բովանդակության հարստությամբ, այլև իրենց գեղարվեստական ուժով ու վարպետությամբ։ Այդ է պահանջում և մեր բազմամիլիոն ու խստապահանջ հանդիսականը և այդ պահանջների բավարարման մակարդակը միայն կարող է ճշմարիտ չափանիշ լինել մեր աշխատանքի համար։ Թերևս փոքր-ինչ վաղաժամ է համարյա մեկ ու կես տասնամյակ պարապուրդի մատնված հայկական կինոարվեստի ռեժիսուրայից և նոր միայն ասպարեզ եկող երիտասարդ կադրերից կատարելություն ակնկալել, սակայն այդ պահանջները պետք է զգաստացնեն նրանց, և շիտակ ու բանիմաց քննադատությամբ պետք է առաջ մղել նրանց՝ հասնելու բարձր վարպետության։ Կինոարվեստին առաջադրվող պահանջները խորապես պարտավորեցնում են կինեմատոգրաֆիայի աշխատողներին՝ մեր ժողովրդի հանդեպ բարձր պատասխանատվության զգացմունքով նայել աշխատանքին, որովհետև կինոն այն հանրամատչելի, թևավոր ու բազմալեզու արվեստն է, որը մի ժողովրդի կուլտուրան տանում է երկրե-երկիր, և որով նույնպես ճանաչվում է ժողովուրդը։

Կան թերություններ, որոնք ընդհանուր են մեր ֆիլմերից շատերի համար և դրանք պետք է լուրջ մտահոգություն պատճառեն կինեմատոգրաֆիայում աշխատող մեր արվեստագետներին։ Մի քանի ֆիլմերի համար («Ուրվականները հեռանում են լեռներից», «Հովազաձորի գերիները») դեռևս բնորոշ են կյանքը, իրականությունը ռեալիստորեն պատկերելու փոխարեն այն գունազարդելու հակումը, դրամատիկական սուր ու հակասական դրություններում կերպարների, մարդկանց բնավորությունների ու հոգեբանության բացահայտումը պլակատային ցուցադրումով փոխարինելու տենդենցը։ Ջանալով վեր հանել մեր հանդիսականին հետաքրքրող թեմաներ՝ այդ ֆիլմերի հեղինակնե-



րը, սակայն, չեն հասել մեծ ընդհանրացումների, մնացել են նեղ շրջանակներում և իջեցրել են այդ նկարների գաղափարական ու գեղարվեստական մակարդակը։

Մեր որոշ կինոնկարներին, ինչպես և նրանց ակտիվ կոմպոնենտ երաժշտությանը, պակասում է մեր ազգային արվեստի ինքնատիպությունը, առանց որի նրանք կորցնում են իրենց գունագեղությունը, իրենց հմայքը, կորցնում են այն, ինչով բարձր է, առաջավոր ու գեղեցիկ սոցիալիստական արվեստը։ Չէ՞ որ սովետական, բովանդակությամբ սոցիալիստական մեր արվեստը զարգացել ու զարգանում է ազգային արվեստների առաջավոր տրադիցիաների օգտագործման հիման վրա, ազգային ձևի մեջ։ Ինտերնացիոնալիզմը արվեստում բնավ էլ չի նշանակում ազգային արվեստի անտեսում, ինչպես և ազգային արվեստի ծաղկումը բնավ չի նշանակում ինտերնացիոնալիզմի որևէ նվաստացում։

Մեր կինոարվեստի այս արատը գալիս և եկել է նրանից, որ մեր հեղինակներից ու ռեժիսյորներից ոմանք, և՛ անցյալում, և՛ այժմ անգիտակ են եղել մեր ժողովրդի տրադիցիաներին, բարոյական նորմաներին, կուլտուրային, պատմությանը, գրականությանն ու արվեստին, էլ չենք ասում լեզվին։ Ոչ մի արվեստագետ չի կարող իր ստեղծագործության արգասիքով խորապես հուզել հանդիսականին, եթե ինքը ներքուստ չի ապրել ու չի հուզվել իր ստեղծագործության նյութով, իսկ հուզվելու համար պիտի խորապես զգալ և քաջատեղյակ լինել մշակվող նյութին։

Եվ պատահական չէ, որ չըմբռնելով ազգային ինքնատիպության արտահայտության առանձնահատկությունները, երանգներն ու կոլորիտը, եղել են հեղինակներ՝ ռեժիսյորներ ու սցենարիստներ, որոնք երբեմն հայկական ֆիլմերը «հայացնելու» համար դիմել են գռեհիկ էկզոտիկայի, տհաճ ու փնթի արտաքինով պերսոնաժների և այլն, չխոսելով արդեն չարքաշ Արարատի ու Սևանա լճի մասին, որոնք կինոնկարները հայկական դարձնելու համար լուռ ու անտրտունջ սպասարկել են մեր շատ ֆիլմերի։

Մեր ֆիլմերում պակասում է հատկապես կինոյի համար խիստ բնորոշ, այսպես կոչված՝ դետալների վարպետությունը։ Ստեղծագործության իդեան բացահայտելու գեղարվեստական այդ ձևը շատ ավելի համոզիչ է, ներգործուն ու պերճախոս, քան մի ամբողջ պատկեր, քան բանավոր մեկնաբանությունը։ Երբ «Պոտյոմկին զրահանավը» ֆիլմում դուք տեսնում եք Օդեսայի նավահանգիստն իջնող աստիճանների վրա գնդակոծված ու մոր կողքին գետնատարած մանկանը և հետո... կոպիտ ու պայտած մի կոշիկ, ճզմելով մահացած երեխայի վտիտ ձեռքը, ծանրաքայլ շարժվում է առաջ, այդ համր ու ակընթարթային կադրում դուք սոսկումով զգում եք ցարական բռնակալության բութ ու արյունարբու դաժանությունը և ցասումով եք լցվում նրա դեմ։

Կամ, կմոռացվի՞ արդյոք, «Ալեքսանդր Նևսկի» ֆիլմում, սառած լճի վրա ճակատամարտի պահին այն մի հատիկ կադրը, երբ տևտոնյան ասպետի թիկնոցը սուզվում է ճեղքված սառույցի մեջ։ Ճակատամարտը շարունակվում է թեև, բայց այդ մի թռուցիկ դետալում մենք տեսնում ենք գերմանական հորդայի գլխովին ջախջախումը։

Մեր ֆիլմերին պակասում է այսպես կոչված՝ ֆոնը, ըստ որում ոչ թե լոկ պլակատային, ցուցադրական իմաստով, այլ պարզապես գաղափարական-գեղարվեստական իր դերով։ «Ուրվականները հեռանում են լեռներից» ֆիլմում

digitised by A.R.A.R.@

երկրաբանների արշավախումբը օրեր շարունակ մաքառում է հայկական լեռնաշխարհի խստաբարո բնության դեմ։ Սովետական այդ փոքրաթիվ մարդկանց հետ է և թշնամու դավադիր ու ծպտյալ գործակալը։ Հեռավոր Իսպանիայից նա եկել է գաղտագողի հարվածելու մեր երկրին ու մեր ժողովրդին։ Դավադրությունը հակադրված է միայն պետական անվտանգության օրգանների աշխատակիցը և ֆիլմի հերոս Արտոյի ուշիմությունը։ Եվ ամբողջ այդ իրադարձությունների ընթացքում ու դրանց ֆոնի վրա չես տեսնում այդ լեռներին տիրաբար իշխող և իր խաղաղ ու խանդավառ աշխատանքին անձնատուր ժողովրդին։ Չէ՞ որ դա ավելի հստակ ցույց կտար հերոսի հայրենասիրության ակունքները և շատ ավելի նողկանք կբորբոքեր խաղաղ ու աշխատասեր ժողովրդի վրա ձեռք բարձրացնող թշնամու դեմ։

Չէ՞ որ օտար երկրներում անլուր տառապանքներ կրած Ղարիբի և իր կորցրած որդու հայրենիք դառնալուց հետո երկու սիստեմների հակադրությունն ավելի շեշտակի դարձած կլիներ և «Սիրտն է երգում» ֆիլմը շատ բան շահած կլիներ, եթե նրա ֆոնում ավելի ցայտուն դրսևորվեր մեր շունչալից առօրյան, մինչդեռ նկարի ռեժիսյոր Մելիք-Ավագյանը բավարարվել է մեծ մասամբ հայկական պեյզաժով։ Եվ, անշուշտ, շատ ավելի լավ կհնչեր «Պատվի համար»-ը, եթե ռեժիսյոր Ս. Հայարտյանը, ինչպես ֆիլմի սկզբում, այնպես և նրա երկրորդ կեսում, օգտագործեր համապատասխան ֆոնը, նավթաշխարհի առօրյան՝ իր սոցիալական հակամարտություններով։

Մանկա-պատանեկական ֆիլմերի արտադրությունը սովետական կինեմատոգրաֆիայի կարևոր խնդիրներից մեկն է։ Կինոարվեստը կոչված է ներգործության իր զորեղ հնարավորություններով ակտիվորեն օժանդակելու մեր մանուկ սերնդի կոմունիստական դաստիարակությանը, բարձր բարոյականություն, ազնիվ հակումներ, խիզախություն, հայրենասիրություն պատվաստելու նրանց։ Այս նպատակով Երևանի կինոստուդիան անցյալ տարի ձեռնամուխ եղավ «Հովազաձորի գերիները» (ռեժիսյոր-բեմադրող՝ Յու. Երզնկյան) պատանեկական արկածային ֆիլմի նկարահանմանը։ Սակայն այստեղ ևս, ճիշտ է, նվազ չափով, կրկնվեցին 1954 թվականին արտադրած նույն ժանրի՝ «Լեռնային լճի գաղտնիքը» ֆիլմի թերությունները։ Դա առաջին հերթին վերաբերում է երեխաների հոգեբանության համոզիչ ու ճշմարտացի բացահայտմանը։ Աշխարհից կտրված Հովազաձորում, վայրի բնության վայրագ տարերքին գերի, իրար հոշոտող գազանների հարևանության պայմաններում չես զգում երեխաների՝ չասենք սարսափը, գոնե երկյուղն ու տագնապը։ Ամեհի արջը խուսափում է հովազի ժանիքներից, իսկ երեխաները մոտիկ տարածության վրա ակնապիշ նայում են այդ մենամարտին։ Պատանի Սարգիսը այնպիսի հանգստությամբ է ջախջախում ահռելի վիշապ օձի գլուխը, ինչպիսի անտարբերությամբ կաղին կջարդեր։ Մինչդեռ նրանց հայրերն անգամ սոսկումով կնայեին այդ ամենին։ Վտանգներն ու դժվարությունները հաղթահարվում են հեշտությամբ, առանց հոգեբանական ու բարոյական ճիգերի։

Չափազանց կարևոր ու արդիական թեմա է շոշափում «Երբ քեզ հետ են ընկերներդ» ֆիլմը (ռեժիսյոր-բեմադրող՝ Գ. Սարկիսով)։ Տասնամյակն ավարտած Ռուբենին չի հաջողվում ինստիտուտ ընդունվել։ Նա գնում է գործարան։ Ֆիլմի հեղինակները խնդիր են դրել մեր երիտասարդությանը մղել դեպի արտադրություն, ցույց տալով, որ այն, ինչին նրանք ձգտում էին հասնել բարձրագույն ուսում ստանալու միջոցով, կարելի է հասնել և այլ ճանապարհով,



պարզապես միջնակարգ կրթությամբ արտադրություն գնալով, որ այնտեղ է կառուցվում իսկական կյանքը, այնտեղ են ստեղծվում նյութական արժեքներն ու բարիքները, որ այնտեղ են դարբնվում մեր սոցիալիստական հայրենիքի հզորությունն ու կոմունիստական հարաբերությունները մեր մարդկանց միջև, որ այնտեղ, արտադրության մեջ անձնվեր աշխատանքով կարելի է ոչ միայն իր պատվավոր ու արժանավայել տեղը գրավել մեր հասարակության մեջ, այլև անձնական երջանկություն ձեռք բերել։

Այդ գաղափարը, սակայն, իր բարձր-գեղարվեստական արտահայտությունը չի գտել ֆիլմում։ Սյուժեի, գործողությունների զարգացման ընթացքում չես տեսնում հոգեբանական ներհակ պրոցեսներում հերոսի հետզհետե զարգացող վայելչագեղ կերպարը, աշխատանքի երջանկության պաթոսը։ Սա ֆիլմի հիմնական թերությունն է։ Լավ գաղափարը միայն այն ժամանակ է հասնում հանդիսականին, երբ այն պրոպագանդվում է գեղարվեստական վարպետությամբ, իսկ այդ վարպետությունը պակասել է և՛ սցենարիստին, և՛ անփորձ դերասանին, և՛ ռեժիսյորին։

Մեր կինոարվեստի զարգացման համար վճռական նշանակություն ունի այսպես կոչված՝ սցենարական պրոբլեմի լուծումը։ Անվիճելի է, որ յուրաքանչյուր կինոնկարի բախտը հիմնականում կանխորոշվում է մայր նյութով, գրական սցենարով։ Դա եղել և շարունակում է մնալ մեր կինոարվեստի զարգացման գլխավոր նախապայմանը։ Չէ՞ որ վերջ ի վերջո հեղինակի մշակած թեման, նրա առաջադրած գաղափարական խնդիրները, նրա մտահղացումներն ու գեղարվեստական վարպետությունն է վերարտադրվում էկրանի վրա։

Այս արմատական հարցի մասին զանազան ժամանակներում և՛ խոսվել է, և՛ գրվել թե՛ գրական, թե՛ պարտիական մամուլում։ Հրավիրվել են խորհրդակցություններ, որոնցում գրողների և կինոաշխատողների միջև և՛ փոխադարձ հանդիմանություններ են հնչել, և՛ փոխադարձ խոստումներ։ Սակայն դրությունը շատ քիչ է փոխվել, ըստ էության մենք դեռևս կինոդրամատուրգիա չունենք և այդ մասամբ այն պատճառով, որ կինոստուդիան տարիների պարապուրդի ընթացքում հավատ չի ներշնչել գրողներին և բավականաչափ հյուրընկալ չի եղել նրանց նկատմամբ, ինչպես մասամբ և այն պատճառով, որ մեր այն գրողները, որոնք հաստատապես կարող են հանդես գալ կինոդրամատուրգիական երկերով, չեն ցանկացել լրջորեն զբաղվել այդ ժանրով։ Ի դեպ, փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, ուր անհրաժեշտ է, բայց հանդես չի գալիս տաղանդավոր գրողը, այնտեղ ասպարեզ են նետվում գրականության արվարձաններում թրևող ապաշնորհները։

Անվիճելի է, որ մեր կինեմատոգրաֆիայի զարգացման հեռանկարները կապված են այդ գործում մեր գրողների ստեղծագործական մասնակցության հետ։ Եվ եթե մի ժամանակ մեր գրողները կինոյից խուսափում էին նաև այն պատճառով, որ սցենարը պետք է շատ երկար ճանապարհ անցներ մինչև արտադրության հանձնվելը, երբեմն էլ շատ խարխուլ աստիճաններով, ապա այժմ կրճատված են այդ ոլոր-մոլոր ուղիները և տեղերին իրավունք է վերապահված հավանության դեպքում ընդունել և արտադրության հանձնել դրանք։ Անհրաժեշտ է, սակայն, սիրով կպչել գործին և խորանալ կինոդրամատուրգիայի առանձնահատկությունների մեջ, իսկ նա իրոք որ ունի իր շատ ակնհայտ, ինչպես և նրբին առանձնահատկությունները։

Մենք սովորել ենք ասել, որ կինոն մասսայական արվեստ է, և որովհետև

digitised by A.R.A.R.@

այդ այդպես է, ապա չպետք է մոռանալ, որ նրա այդ մասսայականությունը
պահանջում է, որ կինոսցենարի կամ կինոնկարի գաղափարը առավելագույն
չափով պարզ ու հստակ լինի, առաջադրվող պրոբլեմները պետք է մասսանե-
րի սրտին ու մտքին մոտ ու կենսական լինեն, կոնֆլիկտները, հերոսների
հարաբերություններն ու բախումները ճշմարտացի ու համոզիչ և դրանց ար-
տահայտման գեղարվեստական ձևերը բարձրարվեստ:

Կինոն ազատ է գործողությունների համար ժամանակի և տարածության
միասնությունից, գործողությունը կարող է տեղի ունենալ բոլոր ժամանակ-
ներում, բոլոր եղանակներին, գարնան հեղեղներին, ամռան կիզիչ արևի տակ,
ձմռան բուք ու բորանին: Գործողությունը կարող է տեղի ունենալ ինչպես
սենյակի մի անկյունում, այնպես էլ օվկիանոսի վրա կամ նրա հատակին,
ըստ որում, և՛ ժամանակը՝ թեկուզ տասնամյակներ տևող, և՛ տարածությունը՝
թեկուզ բևեռից բևեռ, և՛ ինքը մայր նյութը, ասենք մի վեպ հազար էջանոց,
որը պետք է հիմք ծառայի սցենարի ու ֆիլմի համար, էկրանի վրա պետք է
արտահայտվի 100 րոպեի տևողությամբ:

Կինոյում, էկրանի վրա չկա բեմական պայմանականություն, դեկորների
վրա նկարած անկենդան բնությունն ու շրջապատը, այստեղ հանդես է գալիս
իրական աշխարհն իր հմայքով ու արհավիրքներով և այդ ճշմարտության մեջ
պետք է ճշմարտացի լինի ամեն իրադարձություն, ամեն արարք, անկեղծ ու
համոզիչ հնչի ամեն մի խոսք: Էկրանի վրա, այդ իրական միջավայրում, բազ-
մապատկվում է ամեն թերություն, աղաղակում է ամեն մի կեղծիք:

Կինոդրամատուրգիայում առանձնահատուկ են պահանջները նաև խոսքի
կուլտուրայի նկատմամբ: Կինոն պահանջում է հստակ և առավելագույն չափով
լակոնիկ լեզու: Եթե բեմի վրա, բեմից դուրս կատարված ամեն իրադարձու-
թյուն հանդիսականի համար բացահայտվում է խոսքի, դիալոգների միջոցով,
ապա էկրանի վրա չկա բեմական «ներս ու դուրսը», այստեղ հանդիսականը
ամեն հարաբերություն, ամեն իրադարձություն պետք է տեսնի գործողության
մեջ: Կինոյում խոսքը հիմնական գործոն չէ, նա օժանդակ ֆունկցիա ունի:

Խոսքի շռայլությունը կինոարվեստում հակառում է նրա բնույթին և գա-
լիս է հեղինակների վարպետության պակասից: Կինոյում չպետք է ազդարա-
րել կատարվածի մասին, հերոսների հոգեվիճակի, ուրախության կամ տառա-
պանքների մասին: Այստեղ պետք է ցույց տալ կատարվածը, և գործողության
մեջ, շատ անգամ էլ ուղղակի լռելյայն, բացահայտել հերոսների ներքնաշխար-
հը, նրանց ապրումները, նրանց հոգու հեկեկանքն ու ցնծությունը: Ճիշտ է
ասված, որ կինոդրամատուրգիայում խոսքի վրա պիտի աշխատել այնպիսի
խնամքով, ինչպես բանաստեղծության մեջ:

Կինոդրամատուրգիայում շատ բարձր է գրողի պատասխանատվությունը
հանդիսականի հանդեպ: Եթե անգամ տասնյակ թատրոններում բեմադրվող
լավագույն պիեսը, ասենք մի տարում կարող են դիտել 500,000 հանդիսական,
ապա լավ կինոնկարը մի տարում կդիտեն տասնյակ միլիոնավոր մարդիկ:
1956 թվականի ընթացքում Սովետական Միության մեջ ցուցադրված 144 կի-
նոնկարները, որոնցից 72-ը սովետական, 72-ը արտասահմանյան, դիտել են
3 միլիարդ հանդիսական: Մեր յուրաքանչյուր լավագույն նկարը միայն մեր
երկրում մի տարվա ընթացքում դիտում են մինչև 40 միլիոն մարդ:

Այստեղից ինքնին հասկանալի է այն պատասխանատվությունն ու պա-
հանջկոտությունը, որ առաջադրվում է սցենար գրողին:



Մեր մի քանի գրողներ աշխատել ու աշխատում են սցենարների վրա:
Հրաչյա Քոչարն ավարտել է իր «Հյուսիսային ծիածան»-ի վերջնական, այս-
պես կոչված՝ արտադրական վարիանտը և պիտի ասել, որ մենք այժմ ունենք
մեր ժողովրդի պատմության շատ նշանակալից մի էտապը վերապատկերող
լավ սցենար: Այժմ ստուդիան մտահոգված է նրա նկարահանման հարցով,
նկատի առնելով այդպիսի ֆիլմի արտադրական մեծ բարդությունները: Գևորգ
Էմինի սցենարով նկարահանվեց «Դարեր ու տարիներ» գեղարվեստական-
դոկումենտալ ֆիլմը, որն ամենուրեք լավ ընդունելություն գտավ: Ս. Խանզադ-
յանը շուտով պիտի ավարտի մեր կոլտնտեսային գյուղացիությանը նվիրված
իր սցենարը: Ստուդիայի համար սցենար են գրում և մի քանի այլ գրողներ:
Այս բոլորը վկայում են, որ ստուդիայի և գրողների համատեղ ու բեղմնավոր
աշխատանքի դեպքում մենք միշտ կարող ենք լավ արդյունքներ հուսալ: Սա-
կայն, նկատի առնելով մեր կինոստուդիայի հետզհետե ընդլայնվող արտա-
դրական հնարավորությունները և ստեղծագործական կադրերի աճը, անհրա-
ժեշտ է, որ մեծ թվով գրողներ ընդգրկվեն սցենարներ ստեղծելու գործում:

Այս տարի ստուդիան ըստ սահմանված պլանի պետք է արտադրի երեք
լիամետրաժ գեղարվեստական ֆիլմ, չհաշված մի շարք կինոակնարկներ և պար-
բերական կինոժուռնալներ:

Արդեն սկսվել են «Կամոյի» նկարահանման նախապատրաստական աշ-
խատանքները: Արտադրության է հանձնվել «Մոր սիրտը» սցենարը՝ նվիրված
երիտասարդության դաստիարակության հարցերին: Շուտով սկսվում են «Ոմն
է ժպտում կյանքը» ֆիլմի նկարահանումները, որը վերապատկերում է
Հայաստանի բանվոր դասակարգի հնագույն ջոկատներից մեկի՝ Ղափանի
պղնձահանքերի մարդկանց անձնվեր աշխատանքը:

Մեր կինոարվեստի զարգացման գործում վճռական դեր է պատկանում
բարձր, սկզբունքային, մարքսիստական էսթետիկայի դիրքերից ելնող քննա-
դատությանը: Առանց դրան անհնարին է բացահայտել աշխատանքի թերու-
թյունները, կանխել դրանց կրկնությունը և օգնել այդ ասպարեզում աշխատող
մեր արվեստագետներին: Այդ տեսակետից այն արձագանքները, որ ստանում
են հայկական ֆիլմերը պարբերական մամուլում, դեռևս անբավարար են:
Դրանք մեծ մասամբ կրում են թատերական շաբլոն գրախոսության բնույթ:

Սովետական կինեմատոգրաֆիան աննախընթաց վերելք է ապրում, դեռ
երբեք անցյալում այնքան ֆիլմեր չեն արտադրվել, որքան նախընթաց տա-
րում: Սովետական արվեստը և մասնավորապես կինոն, տասնյակ միլիոնավոր
բազմալեզու հանդիսականներ ընդգրկելու իր զորեղ հնարավորություններով
կոչված է գեղարվեստորեն արտացոլելու մեր օրերի, մեր մարդկանց հերոսա-
կանությունը, նրանց ստեղծագործական պաթոսն ու աշխատանքային խիզա-
խումները, նրանց բոցակրով սերը սոցիալիստական Հայրենիքի և անզուսպ
ատելությունը թշնամիների նկատմամբ, նրանց հոգու գեղեցկությունը, բա-
րոյական ուժն ու վսեմ բաղձանքները: Իսկ մեր ազգային կինոարվեստը կարող
ենք զարգացման այդ միակ ճիշտ ճանապարհով առաջ տանել միայն մեր
գրողների ու արվեստագետների համատեղ ուժերով: Դրա համար լայն հնա-
րավորություններ կան և հարկավոր է միայն ջանքեր չխնայել:

digitised by A.R.A.R.@

# ԿԱՏԱՐՄԱՆ ՍՏՈՒԳՈՒՄԸ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԲՆԱԳԱՎԱՌՆ Է

*Ս. ՈՍԿԱՆՅԱՆ*

*Մեր պարտիայի ջանքերը միշտ էլ ուղղված են եղել այն բանին, որ կազմակերպորեն ապահովվի արդյունաբերության ու գյուղատնտեսության առջև ծառացած խնդիրների հաջող լուծումը։ Պարտիական կազմակերպական աշխատանքի մակարդակը կախված է նրանից, թե այդ աշխատանքի ձևերը որքանով են համապատասխանում պարտիական կազմակերպությունների առջև կանգնած խնդիրներին։ Դրա համար էլ ՍՄԿՊ XX համագումարը պարտիական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց այն բանի վրա, որ անհրաժեշտ է է՛լ ավելի բարելավել պարտիայի ամբողջ կազմակերպական աշխատանքը, վճռական շրջադարձ կատարել դեպի տնտեսական շինարարության ղեկավարման հարցերը, ապահովել պարտիայի որոշումների կատարումը։*

*Պարտիական որոշումներում արտացոլված են պարտիայի քաղաքականությունը, որը ելնում է մեր երկրի աշխատավորական զանգվածների կենսական շահերից, կոմունիզմի կառուցման շահերից։ Ահա թե ինչու պարտիան իր բոլոր կազմակերպություններից, յուրաքանչյուր կոմունիստից պահանջում է մարտնչել պարտիական որոշումները կենսագործելու համար։ Այստեղից էլ մեծ նշանակություն է ստանում որոշումների կատարման ստուգումը, որը պարտիական աշխատանքի կարևոր բնագավառն է։*

*Որոշումների կատարման ստուգումը հնարավորություն է տալիս բարձրացնելու կազմակերպության մարտունակությունը և աշխատանքի ընդհանուր մակարդակը, որը և ապահովում է նրա առջև դրված բոլոր խնդիրների ժամանակին լուծումը։ Որոշումների կատարման ստուգումը չպետք է կրի սոսկ մեխանիկական բնույթ. դա ստեղծագործական կազմակերպչական գործ է։ Բայց, ցավոք սրտի, առանձին կազմակերպությունների ղեկավարներ անտեսում են այդ և պայքար չեն կազմակերպում որոշումների կատարման համար։ Նրանք մոռանում են, որ ընդունված որոշումները չկատարելը վերջին հաշվով պասիվացնում է կոմունիստներին, թուլացնում է նրանց պատասխանատվությունը, իսկ երբեմն էլ անպարտիականների աչքում նսեմացնում է պարտիական կազմակերպության հեղինակությունը, որով և թուլացնում է նրա ազդեցությունը մասսաների վրա։*

*Որոշումների կատարման ստուգման կազմակերպումը պայմանավորված է նրանով, թե որքանով է այդ որոշումը ճիշտ արտահայտում քննարկված հարցի վիճակը, երևան հանում նկատված թերությունների պատճառները և նշում դրանց վերացման ուղիները, որոնց վրա և պետք է բևեռվի կազմակերպության ողջ ուշադրությունը։ Դրա համար էլ պարտիական կազմակերպությունների քարտուղարներից մեծ հմտություն և ներպարտիական աշխատանքի փորձ է պահանջվում, որպեսզի նրանք ճիշտ կողմնորոշվեն այս կամ այն հարցի քննարկման, որոշումների ընդունման ժամանակ։ Պետք է կարողանալ տարբերել հիմնականը երկրորդականից և ծանրանալ հիմնական թերությունների և նրանց պատճառների վրա։*



*Երևան քաղաքի խոշոր գործարաններից մեկը՝ էլեկտրալամպերի գործարանը տարիներ շարունակ չէր կատարում պետական պլանային առաջադրանքները։ Այստեղ չափազանց մեծ տոկոս էր կազմում խոտան արտադրանքը, որը տարբեր ցեխերում հասնում էր մինչև 40 տոկոսի, ցածր էր արտադրական և աշխատանքային կարգապահությունը, լրիվ չէր օգտագործվում նոր մեքենաների, կիսաավտոմատների և ավտոմատների կարողությունը։ Պարտիական կազմակերպությունը թեև քննարկում էր այդ վիճակի հետ կապված ցավոտ հարցերը և ընդունում բազմաթիվ մեծածավալ որոշումներ, սակայն գործը տեղից չէր շարժվում, կամ նկատվում էր սոսկ ժամանակավոր աշխուժացում։*

*Ի՞նչն էր այն հիմնական պատճառը, որ երկար ժամանակ էլեկտրալամպերի գործարանի սկզբնական պարտիական կազմակերպությանը և դիրեկցիային հնարավորություն չէր տալիս դուրս գալ այդ վիճակից։ Պատճառն այն էր, որ գործարանի ետ մնալու հարցերը ուսումնասիրելիս և քննարկելիս շեշտը չէր դրվում հիմնական խնդիրների վրա. բոլոր դեպքերում որոնում, գտնում էին իբր թե կոլեկտիվից անկախ օբյեկտիվ պատճառներ, աշխատում էին բոլոր թերությունները բացատրել միայն մատակարարման վատ վիճակով։ Ճիշտ է, մատակարարման գործում որոշ թերություններ կային, բայց թե՛ դիրեկցիան և թե՛ պարտիական կազմակերպությունը այդ էին դարձրել հիմնականը՝ իրենց տեսադաշտից դուրս թողնելով իրոք կարևոր հարցերը։ Իսկ այդ կարևոր հարցերն էին՝ կադրերի ոչ ճիշտ տեղաբաշխումը, նրանց մի մասի անպատասխանատվությունը, արտադրական և աշխատանքային թույլ կարգապահությունը, տեխնիկայի կարողության ոչ լրիվ օգտագործումը, խոտանի տոկոսն իջեցնելու համար պայքար չկազմակերպելը, ցեխային պարտիական ու պրոֆմիութենական կազմակերպությունների աշխատանքի մակարդակի ցածր լինելը։*

*Անցյալ տարվա վերջերին գործարանի սկզբնական պարտիական կազմակերպության հաշվետու ընտրական ժողովում կոմունիստները քննադատելով պարտբյուրոյի և դիրեկցիայի գործունեության արատավոր ոճը՝ երևան հանեցին նրանց աշխատանքի թերությունները, նշեցին գործարանի ետ մնալու հիմնական պատճառները և ցույց տվին դրանց վերացման միջոցները։ Ժողովից հետո պարտբյուրոն ու գործարանի ղեկավարությունը մոբիլիզացրին ամբողջ կոլեկտիվին և նրա ուժն ու կարողությունը շարժման մեջ դրին հաշվետու-ընտրական ժողովի որոշումը կենսագործելու համար։*

*Պարտշրջկոմը և գործարանի պարտբյուրոն մեծ ուշադրություն դարձրին գործարանի ցեխային պարտիական և պրոֆմիութենական կազմակերպությունների աշխատանքների աշխուժացման վրա։ Այժմ կանոնավոր կերպով տեղի են ունենում ցեխային պարտկազմակերպությունների, պրոֆկոլեկտիվների ժողովներ և արտադրական խորհրդակցություններ, որտեղ քննվում են արտադրության հետ կապված, բանվոր-ծառայողների կուլտուր-կենցաղային կյանքին վերաբերող, սոցիալիստական մրցությունը ծավալելու և վերցրած պարտավորությունները կատարելու հարցերը։*

digitised by A.R.A.R.@

Գործարանում հիմնականը նախապատրաստման և հավաքման ցեխերն են, որոնցից կախված է պլանների կատարումը։ Ելնելով դրանից՝ նախապատրաստող ցեխի պետ նշանակվեց գործարանի գլխավոր մեխանիկ, կոմունիստ Գ. Վասիլյանը, իսկ հավաքման ցեխի պետ՝ կոմունիստ Բ. Թովմասյանը, որոնք արտադրական և կազմակերպչական աշխատանքի մեծ փորձ ունեն։

Սարքավորվեցին և արտադրության մեջ ներդրվեցին տեխնիկական բարձր կարողություն ունեցող մեքենաներ, որոնք տարիներ շարունակ անգործության էին մատնված։ Միայն սպիրալի ցեխում տեղադրվել և աշխատում են սպիրալի 12 նոր մեքենաներ։

Գործարանի 1957 թվականի պլանով նախատեսվեց համախառն արտադրանքի թողարկումը անցյալ տարվա համեմատությամբ ավելացնել 6 միլիոն ռուբլով։ Այս պլանի կատարումն ապահովելու համար պարտիական կազմակերպությունը ձեռնարկեց կազմակերպական միջոցառումներ. ամբողջ կոլեկտիվի ուշադրությունն ուղղեց ինչպես իր, այնպես էլ վերադաս պարտիական ու սովետական օրգանների որոշումների կենսագործմանը։ Պարտիական-քաղաքական աշխատանքի միջոցով կոլեկտիվի անդամներին պարզաբանվեց, որ առաջադրված պլանը ռեալ է և այն կարելի է ու պե՛տք է կատարել։ Այնուհետև, 1957 թվականի պլանը քննության առնվեց ոչ միայն ակտիվի նեղ խորհրդակցությունում, այլև ամբողջ կոլեկտիվի ժողովում։ Այս հետևողական աշխատանքները տվել են իրենց դրական արդյունքները։ Գործարանը, սկսած հունվար ամսից, մտել է աշխատանքի նորմալ հունի մեջ և ամեն ամիս պետական բոլոր առաջադրանքները կատարում է 103—104 տոկոսով։

Կոմունիստական պարտիայի կազմակերպչական հիմքը՝ դեմոկրատական ցենտրալիզմը մեծ հնարավորություն է տալիս ոչ միայն որոշումների ընդունմանը մասնակից դարձնել մասսաներին, օգտագործել նրանց ստեղծագործական ակտիվությունը, այլև նույն մասսաների միջոցով կյանքում իրագործելու այդ որոշումները։ Այս տեսակետից մեծ անելիքներ ունեն ցեխային, ֆակուլտետային պարտիական կազմակերպությունները և պարտիական խմբերը, որոնք ավելի մոտիկից են շփվում որոշումները կատարողների հետ, ճանաչում են նրանց ամենօրյա աշխատանքում և գիտեն նրանց ունակությունները։

Անցյալ տարի դեկտեմբերին Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության պարտիական կազմակերպության դռնբաց ժողովը լսելով հողաշինարարության վարչության պետ ընկ. Գ. Գրիգորյանի զեկուցումը՝ իրենց աշխատանքների մասին, նշեց, որ վարչության գործունեությունում կան լուրջ թերություններ, որոնք հետևանք են գլխավորապես ապարատի աշխատողների անպատասխանատվության։ Վարչության ղեկավար աշխատողները ամբողջ տարվա ընթացքում տեղերում չեն եղել, մասնագիտական օգնություն չեն կազմակերպել և չեն հսկել հողաշինարարների աշխատանքները։ Նշվեց նաև, որ կադրերը ճիշտ չեն դասավորված, և, հատկապես, հողաշինարար մասնագետները ճիշտ չեն օգտագործվում։ Այս թերությունները նշվել են սկզբնական պարտիական կազմակերպության ժողովի որոշման մեջ, որը վարչության պարտկազմակերպությանը պարտավորեցրել է լուրջ միջոցառումներ ձեռնարկել եղած թերությունները վերացնելու համար։

Ձեռնամուխ լինելով սկզբնական պարտկազմակերպության որոշման կատարմանը՝ վարչության պարտիական կազմակերպությունը և նրա քարտուղար ընկ. Պողոսյանն արդեն որոշ քայլեր են արել վարչության ապարատի աշխա-



տանքները բարելավելու ուղղությամբ։ Կոլեկտիվում բարձրացվել է քաղաքա-
կան-դաստիարակչական աշխատանքի մակարդակը, լայն ծավալ է ստացել
սոցիալիստական մրցությունը, որի մեջ արդեն ընդգրկվել են 42 ընկեր։ Ամի-
սը մեկ անգամ ստուգվում է ստանձնած պարտավորությունների կատարման
ընթացքը։ Սիստեմատիկաբար հրավիրվում են արտադրական խորհրդակցու-
թյուններ՝ կապված հողաշինարարական աշխատանքների, կադրերի որակա-
վորման և այլ խնդիրների հետ։ Վարչությունը մշակել է հողաշինարարական
աշխատանքների 1957 թվականի պլանը, որը քննարկվել է վարչության աշխա-
տողների և շրջային հողաշինարարների ժողովներում։ Վարչությունը վերա-
նայել է հողաշինարարների կազմը, լրացրել է այն նոր երիտասարդ մասնա-
գետներով, որոնց համար կազմակերպել է մասնագիտական ուսուցում։

Որոշումների ճիշտ կատարումը լուրջ հաջողությունների հասցրին արդյու-
նաբերական ձեռնարկությունների, ինչպես, օրինակ՝ Կիրովի անվան գործա-
րանի, Ճշգրիտ գործիքների, Կոնսերվի և ուրիշ գործարանների կոլեկտիվներին։
Սակայն, ցավոք սրտի, դեռևս կան պարտիական կազմակերպություններ, որոնք
լուրջ ուշադրություն չեն դարձնում որոշումների կատարման վրա։ Այսպես,
օրինակ, Կոմպրեսորների գործարանը վերջին մի քանի տարիների ընթացքում
ունեցել է որոշակի վերելք։ 1956 տնտեսական տարում գործարանը համախառն
արտադրանքի պլանը կատարեց 100,5 տոկոսով։ Սակայն, այստեղ դեռ գոյու-
թյուն ունեն խոշոր թերություններ, որոնք խոչընդոտ են հանդիսանում պետա-
կան բոլոր առաջադրանքների կատարմանը, հնարավորություն չեն տալիս
ապահովելու ասորտիմենտը, բարձրացնելու արտադրանքի որակը, իջեցնելու
ինքնարժեքը։

Այս հարցերը բազմիցս և բազմակողմանի ու լուրջ ուսումնասիրման
առարկա են դարձել նաև Ստալինյան պարտշրջկոմում։ Պարտշրջկոմը բացա-
հայտել է պարտիական ու տնտեսական աշխատանքներում տեղ գտած թերու-
թյունները և իր ընդունած որոշումներով ուղղություն է տվել գործարանի
պարտիական կազմակերպությանը, սակայն գործարանի պարտիական բյու-
րոն (քարտուղար ընկ. Առաքելյան) և դիրեկցիան (դիրեկտոր ընկ. Մուրադ-
յան) քիչ նշանակություն են տվել այդ որոշումների կատարմանը։

Այդ գործարանում ցածր է արտադրական և աշխատանքային կար-
գապահությունը, գոյություն ունի կադրերի մեծ հոսունություն։ Միայն 1956
թվականին տարբեր առիթներով կոլեկտիվի աշխատողների մոտ 35 տոկոսը
աշխատանքից ազատվել է և նոր մարդիկ են ընդունվել։ Գործարանի բանվոր-
ծառայողներից մոտ 53-ը ինքնագլուխ հեռացել են աշխատանքից, իսկ 258
մարդ ուշացել են աշխատանքից։ Մինչև այժմ չի իրացվել նոր կոմպրեսոր-
ների՝ ՎՈՒ—3—8 թողարկումը։ Չափազանց ցածր է աշխատանքային կուլտու-
րան։ Ժամանակին չեն տեղադրում բարձր արտադրողականություն ունեցող
հաստոցները։ Գործարանը մինչև օրս չունի գլխավոր մեխանիկ, գլխավոր ին-
ժեներ, գլխավոր հաշվապահ, իսկ պլանային-արտադրական բաժնի վարիչ
ընկ. Ս. Խաչատրյանը ժամանակ է գտնում համատեղելու երեք հիմնարկնե-
րում։ Հասկանալի է, որ կադրերի այսպիսի դասավորման դեպքում երբեք չի
ապահովվի հիմնական խնդիրների կատարումը։ Նման վիճակից դուրս գալու
և գործարանում կադրերի հարցերը լուծելու համար պարտիական կազմակեր-
պությունը և գործարանի դիրեկցիան բազմաթիվ որոշումներով վերադաս պար-
տիական և տնտեսական օրգաններից պահանջում են դրսից լրացնել այդ

digitised by A.R.A.R.@

կադրերը, փոխանակ ամենօրյա հոգատար աշխատանքով գործարանից անեցնեն և դաստիարակեն ընդունակ մարդկանց, որոնցից շատ կան։

Այստեղ որոշումները չկատարելու հիմնական պատճառն այն է, որ պարտիական կազմակերպությունը չի մոբիլիզացնում կոմունիստներին և անպարտիականներին, որպեսզի որոշումների կատարման գործում նրանք լրիվ դրսևորեն իրենց ընդունակությունը և ստեղծագործական նախաձեռնությունը։

1956 թվականի դեկտեմբերին Երևանի քաղաքային կոմիտեի պլենումը քննության առավ սոցիալիստական սեփականության պաշտպանության հարցը և պարտիական կազմակերպությունների խնդիրները այդ բնագավառում։ Պլենումը խիստ քննադատության ենթարկեց Երևանի Կոնյակի գործարանի պարտիական կազմակերպությանն ու դիրեկցիային և իր որոշման մեջ ուղղակի նշեց, որ գործարանի դիրեկտոր ընկ. Հակոբյանը ժամանակին չի կազմակերպում նյութական արժեքների վերահաշվառումը, այդ կարևոր գործը շատ անգամ հանձնարարվում է պատահական և վստահություն չվայելող մարդկանց, բազմակողմանի և մանրակրկիտ չեն ուսումնասիրվում ստուգումների արդյունքները և ժամանակին չեն կանխվում պետական միջոցների հափշտակման դեպքերը, շատ անգամ դիրեկցիան ու պարտիական կազմակերպությունը լիբերալ մոտեցում են ցուցաբերում պետական ունեցվածքը հափշտակողների նկատմամբ։ Այս կարգի քննադատական դիտողություններ են եղել նաև պարտիական կազմակերպության վերջին երկու հաշվետու-ընտրական ժողովներում։ Սակայն թե պարտբյուրոն (քարտուղար ընկ. Մակարյան) և թե դիրեկցիան լուրջ միջոցառումներ չեն ձեռնարկել այդ որոշումները կենսագործելու ուղղությամբ։

Քաղաքային կոմիտեի և սկզբնական պարտիական կազմակերպության որոշումների կատարման նկատմամբ եղած անտարբերությունը հասցրեց նրան, որ վերջերս գործարանում տեղի ունեցավ հափշտակման 4 մեծ դեպք, որոնց հետևանքով գործարանը մոտ 200.000 ռուբլու վնաս կրեց։

Այս դեպքից հետո էլ պարտիական բյուրոն և դիրեկցիան փոխանակ միջոցներ ձեռնարկելու հանցավորներին հայտաբերելու ուղղությամբ և կանխելու նման դեպքերը, ամեն կերպ աշխատում են աղբը տանից դուրս չբերելակտ են կազմում, թե իբր պակասող սպիրտի մի մասը գտնվում է արտադրության պրոցեսում։ Պարտիայի Սպանդարյանի շրջանային կոմիտեն, թեև մեծ ուշացումով, բայց շատ ճիշտ վարվեց, որ դիրեկտորի պարտականությունից ազատեց ընկ. Հակոբյանին, նկատողություն հայտարարելով նրան, իսկ ընկ. Մակարյանին ազատեց սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարի պարտականությունից։

Արդյոք կատարման ստուգման բացակայության արդյունք չէ՞, որ մի շարք պարտիական կազմակերպություններ այս կամ այն հարցի մասին որոշում ընդունելուց հետո մոռացության են տալիս նրա կատարումը և չանցած կարճ ժամանակ նորից մի նոր որոշում են ընդունում նույն հարցի մասին։ Բերենք միայն մեկ օրինակ։ Հայէլեկտրագործարանի 20-րդ ցեխի սկզբնական պարտիական կազմակերպությունը հաշվետու ընտրական ժողովում ընդունած իր որոշման մեջ կետ մտցրեց՝ ցեխում քաղաքական-դաստիարակչական աշխատանքի մակարդակը բարձրացնելու վերաբերյալ։ Դրանից հետո պարտբյուրոն չմտահոգվեց այդ որոշման կատարումով։ Իսկ հետևանքն այն եղավ, որ ագիտացիոն աշխատանքը նորից մնաց երեսի վրա, ագիտատորներ Պետրոսյանը



և Խաչատրյանը կոլեկտիվի համար չեն կազմակերպում հետաքրքրական, գործարանի, ցեխի առօրյայի հետ կապված զրույցներ, սոցիալիստական մրցությունը կրում է ձևական բնույթ։ Միայն վերջին 4—5 ամիսների ընթացքում ցեխի պարտիական կազմակերպությունը երեք անգամ անդրադարձել է այդ հարցին, ընդունել նոր որոշումներ, սակայն դրանք մնացել են անկատար։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կանոնադրությունում ասված է, որ «Պարտիայի անդամը պարտավոր է լինել պարտիական որոշումների կատարման համար ակտիվ մարտնչող։ Պարտիայի անդամի համար բավական չէ միայն պարտիական որոշումներին համաձայն լինելը, պարտիայի անդամը պարտավոր է պայքարել այդ որոշումները կենսագործելու համար։ Պարտիայի որոշումների նկատմամբ կոմունիստների պասիվ և ձևական վերաբերմունքը թուլացնում է պարտիայի մարտունակությունը և այդ պատճառով անհամատեղելի է նրա շարքերում գտնվելու հետ»։

Պարտիական կազմակերպությունները պետք է հիշեն, որ պարտիական, ինչպես նաև պետական որոշումների կատարման ընթացքում մարդիկ դրսևորվում են իրենց բոլոր կողմերով։ Կադրերի միակ և ճիշտ գնահատականը պետք է լինի այն չափանիշը, թե նրանք ինչպես են պայքարում պարտիայի և կառավարության որոշումները ճիշտ և ժամանակին կատարելու համար։

Որոշումների կատարման ստուգումը երբեք չի կարելի մեխանիկորեն առանձնացնել տվյալ կազմակերպության ներպարտիական, քաղաքական-մասսայական աշխատանքներից։ Հասկանալի է, որ որոշումների կատարման ստուգումը կազմակերպելու հաջողությունը պայմանավորված է պարտիական կազմակերպության ընդհանուր մարտունակությամբ։ Այն սկզբնական պարտիական կազմակերպություններում, որտեղ քաղաքական-մասսայական և կազմակերպչական աշխատանքը ցածր մակարդակի վրա է դրված, որտեղ չեն կատարվում պարտիայի Կանոնադրության պահանջները, տվյալ կազմակերպությանը վերաբերող առօրյա և հեռանկարային հարցերը չեն ուսումնասիրվում և ներկայացվում պարտիական կոլեկտիվի քննարկմանը, այնտեղ պատշաճ բարձրության վրա դրված չի լինի որոշումների կատարման ստուգումը։

ՍՄԿՊ XX համագումարը, պարտիայի Կենտկոմի 1956 թվականի Դեկտեմբերյան և այս տարվա Փետրվարյան պլենումները վիթխարի խնդիրներ են դրել մեր տնտեսական վերելքի կազմակերպման ուղղությամբ։ Այդ խնդիրները ժամանակին և ճշտությամբ լուծելու համար, պարտիական կազմակերպությունները պարտավոր են բարձրացնելու յուրաքանչյուր կոմունիստի անձնական պատասխանատվությունը՝ սրբությամբ կատարել պարտիայի Կանոնադրության պահանջները, ամենուրեք լինել առաջավոր գծում, ակտիվորեն մարտնչել պարտիական որոշումները կատարելու համար։

digitised by A.R.A.R.@

# ԱՆԱՍՆԱՊԱՀԱԿԱՆ ՖԵՐՄԱՆԵՐԻ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԽՄԲԵՐԸ

Ց. ՆԱՅԲՈՅՉԵՆԿՈ

Անասնաբուծության զարգացման գործում պարտիայի ու կառավարության առաջադրած խնդիրները հաջողությամբ լուծելու համար անհրաժեշտ է բարձրացնել կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների սկզբնական պարտիական կազմակերպությունների մարտունակությունը, բարելավել անասնապահական ֆերմաներում ստեղծված պարտիական խմբերի գործունեությունը, ուժեղացնել անասնապահների հետ տարվող կազմակերպական և քաղաքական-դաստիարակչական աշխատանքը։ Հաշվի առնելով այդ, պարտիայի գյուղական շրջկոմներն ու սկզբնական կազմակերպությունները վերջին տարիներս անասնաբուծության բնագավառում մշտական աշխատանքի են ուղարկել զգալի թվով կոմունիստների։ Բավական է նշել, որ այժմ անասնաբուծության բնագավառում աշխատում են 3430 կոմունիստ, որոնցից 1698-ը որպես ֆերմայի վարիչներ ու բրիգադավարներ։

Հանրային անասնաբուծության բնագավառում աշխատող կոմունիստների թվի ավելացումը պարտիայի շրջկոմներին ու սկզբնական կազմակերպություններին հնարավորություն տվեց ՍՄԿՊ Կանոնադրության հիման վրա, ոչ պակաս քան 3 կոմունիստի առկայության դեպքում, անասնապահական ֆերմաներում կազմակերպել պարտիական խմբեր։ Ներկայումս Ստեփանավանի շրջանի կոլտնտեսությունների անասնապահական ֆերմաներում կան 13, Կալինինոյի շրջանում՝ 11 և Ալավերդու շրջանում՝ 23 պարտիական խմբեր։

Այդ պարտիական խմբերի դերը հսկայական է․ մոտ կանգնած լինելով արտադրությանը, ֆերմայի շարքային աշխատողներին, նրանք մոտիկից տեսնում են յուրաքանչյուր աշխատողի արժանիքներն ու թերությունները, ժամանակին ներգործում են ֆերմայում կատարվող աշխատանքի ընթացքի վրա, նպաստում են առաջավոր փորձի արմատավորմանը, բացահայտում են թերությունները և կոնկրետ միջոցներ ձեռք առնում դրանց վերացման համար։ Ամեն ինչ կախված է այն բանից, թե ինչպես է կազմակերպված պարտիական խմբերի աշխատանքը։

Ստեփանավանի, Կալինինոյի և Ալավերդու պարտշրջկոմները և կոլտնտեսությունների պարտիական կազմակերպությունները վերջերս որոշ չափով բարելավել են անասնապահական ֆերմաների պարտիական խմբերին ցույց տրվող օգնությունն ու ղեկավարությունը, որի շնորհիվ էլ արդեն առկա է պարտիական խմբերի կատարած դրական աշխատանքը։ Օրինակ, Կալինինոյի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսության № 1 կաթնա-ապրանքային ֆերմայի պարտիական խմբի նախաձեռնությամբ կոլտնտեսության վարչությունն ու



պարտիական կազմակերպությունը մի շարք միջոցառումներ գործադրեցին կերի բազան ամրապնդելու համար։ Այսպես, օրինակ, 1956 թվականին կոլտնտեսությունը ցանեց 1334 հեկտար կերաբույսեր, այդ թվում՝ 200 հեկտար եգիպտացորեն։ Բնական խոտհարքների պակաս բերքատու 600 հեկտար տարածություն պարարտացվեց տեղական և հանքային պարարտանյութերով։ Պարտիական խմբի նախաձեռնությամբ առաջին անգամ սկսեցին կովերին կերակրել կանաչ կերով, որպեսզի կանխեն կաթի քանակի նվազումը արոտային շրջանի վերջում։

Ուսումնասիրելով անասնապահների աշխատանքի վարձատրման կարգը՝ պարտիական խումբը խորհուրդ տվեց այդ աշխատանքը վարձատրել՝ հաշվի առնելով կաթի յուղայնության տոկոսը, ինչպես և փոխել կթի պլանների գերակատարման համար սահմանված պարգևատրումների կարգը։ Այդ առաջարկների կիրառման շնորհիվ Ստալինի անվան կոլտնտեսության անասնապահները զգալի հաջողությունների հասան։ Վերջին երկու տարում յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթն ավելացել է 412 կիլոգրամով և 1955—1956 տնտեսական տարում կազմել է 2054 կիլոգրամ, պլանով նախատեսված 1800 կիլոգրամի դիմաց։ Կաթի համախառն կիթը կազմել է 1707 տոննա՝ պլանով նախատեսված 1539 տոննայի փոխարեն։

Պարտիական խումբը անասնապահների մեջ քաղաքական-մասսայական լայն աշխատանք է ծավալել սոցիալիստական մրցությունում ստանձնած պարտավորությունները հաջողությամբ կատարելու համար։ Պարտիական խումբը սիստեմատիկորեն ստուգում է ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը։ Ֆերմայում գոյություն ունի կարմիր անկյուն, որտեղ ամեն օր հրապարակվում են կթվորուհիների աշխատանքի արդյունքները, մրցման առաջավորների անունները գրվում են պատվո-տախտակին, անասնապահներն ազատ ժամանակ կարդում են օրվա թերթեր, ամսագրեր, գյուղատնտեսական այլ գրականություն։ Անասնապահների ակտիվության բարձրացման և կովերի խնամքի ու կերակրման գործը բարելավելու շնորհիվ ընթացիկ տարվա կթի վեց ամսվա պլանը գերակատարվել է և 78 տոննա ավելի շատ կաթ է ստացվել, քան անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում։

Լավ է աշխատում նաև Կալինինոյի շրջանի Սարչապետ գյուղի Ֆրունզեի անվան կոլտնտեսության անասնապահական ֆերմայի պարտխումբը (կազմակերպիչ Մ․ Մարտիրոսյան), որը հանդես եկավ որպես սոցիալիստական մրցության և առաջավոր փորձի տարածման նախաձեռնող։ Պարտխմբի նախաձեռնությամբ կազմակերպվեց ֆերմայի անասնապահների էքսկուրսիա դեպի Լոռվա տոհմաբուծական սովետական տնտեսությունը, որտեղ կոլտնտեսականները ծանոթացան լավագույն անասնաբույծների աշխատանքի մեթոդներին։ Պարտխումբն ուսումնասիրեց և տարածեց նաև իրենց կոլտնտեսության առաջավոր կթվորուհի Գ․ Խաչատրյանի փորձը։ Գ․ Խաչատրյանը ֆերմայում աշխատելով 20 տարի, իրեն ամրացված յուրաքանչյուր կովից տարեկան ստացել է 2035 կիլոգրամ կաթ։ Պարտխումբը ժամանակին ուսումնասիրում է առանձին անասնապահների ետ մնալու պատճառները և օգնում է նրանց հասնելու առաջավորների մակարդակին։ Պարտխումբը կոլտնտեսության վարչության առաջ հարց բարձրացրեց և հասավ այն բանին, որ ֆերմայում կազմվեց կերի ռացիոն՝ ըստ կովերի խմբերի, գոմում դրվեցին ավտոմատ խմոցներ՝ 100 կով ջրելու համար։

Պարտիական խմբի կատարած աշխատանքի արդյունքը առկա է. ոչ տոհմական, տեղական անասուններ ունեցող և առաջներում ետ մնացող ֆերման այժմ անցել է առաջավորների շարքը: Մրցելով շրջանի մյուս կոլտնտեսությունների ֆերմաների հետ, Սարչապետ գյուղի կոլտնտեսության ֆերմայի կոլեկտիվը կթի պլանը գերակատարելու համար բազմիցս նվաճել է պարտիայի շրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ դրոշը: Կովերի կաթնատվության այս տարվա վեց ամսվա պլանը գերակատարված է. յուրաքանչյուր կովից կթված է 903 կիլոգրամ կաթ, անցյալ տարվա այդ նույն ժամանակամիջոցում ստացած 666 կիլոգրամի դիմաց: Դա ամենաբարձր ցուցանիշն է շրջանում:

Իրենց աշխատանքում զգալի հաջողություն են ձեռք բերել նաև Ստեփանավանի շրջանի Սվերդլով գյուղի Մռավյանի անվան, Ալավերդու շրջանի Ուզունլար գյուղի Ստալինի անվան, Կալինինոյի շրջանի Նորաշեն գյուղի Ջափարիձեի անվան կոլտնտեսությունների անասնապահական ֆերմաների պարտիական խմբերը: Անասնապահների շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի օգնությամբ բարձրացել է յուրաքանչյուր անասնապահի պատասխանատվության զգացմունքը՝ իրեն հանձնարարված գործի համար, ապահովվել է արտադրական պլանների կատարումն ու գերակատարումը:

Սակայն բոլոր պարտիական խմբերը չեն, որ կատարում են իրենց խնդիրները. օրինակ՝ Ստեփանավանի շրջանի Կաթնաղբյուր, Լեջան, Գյուլագարակ գյուղերի ու շրջկենտրոնի, Կալինինոյի շրջանի Միխայլովկա, Պրիվոլնոյե, Ալավերդու շրջանի Շնող, Թեղուտ գյուղերի կոլտնտեսություններում պարտիական խմբերը լավ չեն աշխատում:

Պարտիայի շրջկոմներն ու սկզբնական կազմակերպությունները դեռևս չեն հասել այն բանին, որ պարտիական խմբերը դառնան անասնաբուծության մթերատվության բարձրացման համար մղվող պայքարի իսկական կազմակերպիչներ, սոցիալիստական մրցության և անասնապահների աշխատանքի առաջավոր փորձի արմատավորման նախաձեռնողներ: Օրինակ, չափազանց վատ է աշխատում Ստեփանավանի Ստալինի անվան կոլտնտեսության կաթնապրանքային ֆերմայի պարտիական խումբը: Պարտխումբը բաղկացած է 5 կոմունիստից, սակայն պարտխմբի կազմակերպիչը պարտանդամներին ամիսներով չի հավաքում արտադրության ցավոտ հարցերի շուրջը խորհրդակցելու: Պարտխումբը չի անդրադառնում այնպիսի փաստերի, ինչպիսիք են՝ անասունների վատ խնամքը, հակասանիտարական դրությունը, տոհմաբուծական աշխատանքի անտեսումը, աշխատանքային կարգապահության խախտումը և այլն: Ինքը՝ պարտխմբի կազմակերպիչ Ս. Ղազարյանը պատշաճ հեղինակություն չի վայելում անասնապահների մեջ. աշխատելով որպես հորթապահ, նա 1956 թվականին իրեն խնամքին հանձնած 25 հորթից կորուստ է տվել 13-ը: Աշխատանքի վատ կազմակերպման հետևանքով վերջին տարիներս ֆերմայում կովերի կաթնատվությունը իջել է ավելի քան 200 կիլոգրամով: Կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպությունը վճռական միջոցներ ձեռք չի առնում պարտխմբի դերը բարձրացնելու և ֆերմայում աշխատանքը կարգավորելու համար:

Քաղաքական-մասսայական աշխատանքը վատ է կազմակերպված նաև Կալինինոյի շրջանի Միխայլովկա գյուղի «Կոմունայի ուղի» կոլտնտեսության կաթնապրանքային ֆերմայի անասնապահների շրջանում: Պարտխումբը սոցիալիստական մրցություն չի ծավալում անասնաբուծության մթերատվության բարձրացման համար, չի կազմակերպում լավագույն կթվորուհիներ Տ. Սիրոտկինայի և Մ. Քյարիմովայի առաջավոր փորձի ուսումնասիրումն ու տարածումը, մինչդեռ այդ ընկերներն ընթացիկ տարում գերակատարել են կթի չորս ամսվա պլանը՝ յուրաքանչյուր կովից ստանալով 200—300 կիլոգրամ ավելի կաթ, քան միջին հաշվով ստացվել է ֆերմայում: Ֆերմայում առանձին կոմունիստներ չեն արդարացնում իրենց ավանգարդային դերը:



Երբ 1955 թվականին ՀԿՊ Կենտկոմի բյուրոն քննարկեց Ստեփանավանի շրջկոմի և կոլտնտեսությունների սկզբնական պարտկազմակերպությունների կողմից շրջանի անասնաբուծական ֆերմաների պարտիական խմբի ղեկավարման վիճակի հարցը, Ստեփանավանի, ինչպես և շատ ուրիշ պարտշրջկոմներ մի շարք գործնական միջոցառումներ իրականացրին անասնապահական ֆերմաների պարտիական խմբերի ղեկավարումը բարելավելու ուղղությամբ, դրա շնորհիվ բարձրացավ պարտխմբերի դերը սոցիալիստական մրցության կազմակերպման և անասնաբուծության մթերքների արտադրության ավելացման գործում, բարձրացավ նաև կոմունիստների ու կոմերիտականների պատասխանատվությունը՝ պարտիայի ու կառավարության որոշումների կատարման գործում: Պարտիայի Ստեփանավանի և Ալավերդու շրջկոմները կազմակերպեցին սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների սեմինարներ, որտեղ քննարկեցին պարտիական խմբերի ղեկավարման հարցերը: Անցկացվեցին նաև պարտխմբերի կազմակերպիչների սեմինարներ, որոնց մասնակցողները աշխատանքի փորձի փոխանակման կարգով լսեցին առանձին պարտիական խմբերի կազմակերպիչների զեկուցումները:

Սակայն անասնապահական ֆերմաների պարտիական խմբերի ղեկավարման ուղղությամբ պարտշրջկոմների կատարած աշխատանքը դեռևս չափազանց անբավարար է:

Մի շարք շրջաններում լուրջ ուշադրություն չի դարձվում անասնապահական ֆերմաներում պարտիական խմբեր ստեղծելու վրա: Դա առանձնապես վերաբերում է Սպիտակի շրջանին: Այստեղ 23 կոլտնտեսությունների ֆերմաներում ստեղծված է ընդամենը երեք պարտխումբ, ընդ որում նրանցից մեկի՝ Պարնի գյուղի Շահումյանի անվան կոլտնտեսության անասնապահական ֆերմայի պարտխմբի գոյության մասին անգամ չգիտեին ո՛չ պարտշրջկոմի կազմբաժինը, ո՛չ էլ Լուսաղբյուրի ՄՏԿ-ի գոտու հրահանգչական խումբը: Այդ կոլտնտեսության կաթնա-ապրանքային ֆերմայի պարտխումբը բաղկացած է 7 կոմունիստից, սակայն պարտխմբի աշխատանքը չի կարգավորված, պարտխմբի անդամները մի քանի ամսվա ընթացքում ոչ մի անգամ չեն հավաքվել արտադրական կարևոր հարցերի շուրջը խորհրդակցելու, ֆերմայում սոցմրցում չի կազմակերպված, չկա արտադրական ցուցանիշների տախտակ, ցածր է անասնաբուծության կուլտուրան: Այս հարցերի վրա պարտխումբն ուշադրություն չի դարձնում:

Պարտշրջկոմների, կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների սկզբնական պարտկազմակերպությունների խնդիրն է՝ ճիշտ կազմակերպել կոմունիստների տեղաբաշխումն արտադրության մեջ և պարտխմբեր ստեղծել անասնապահական բոլոր խոշոր ֆերմաներում:

---



digitised by A.R.A.R.@

# «ՍՊԱՐՏԱԿ»-Ի ԸՆԴՀԱՏԱԿՅԱ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ

1917 թվականն է։ Ուռճանում է ռևոլյուցիոն շարժումը Անդրկովկասում։ Աճում և հզորանում են բոլշևիկների շարքերը Ադրբեջանում, Վրաստանում և Հայաստանում։ Ռևոլյուցիոն ուժերը բոլշևիկների գլխավորությամբ պատրաստվում են վերջին գրոհի ռեակցիայի և իմպերիալիզմի տիրակալության դեմ։ Հայաստանում, Վրաստանում և Ադրբեջանում կազմակերպվում են կոմունիստական երիտասարդական մարտական կազմակերպություններ, որոնք իրենց անձնվեր պայքարով փառավոր էջեր գրեցին կոմունիզմի համար մղվող պայքարի տարեգրքում։

Ստորև տպագրում ենք Վրաստանի ընդհատակյա կոմունիստական երիտասարդական միության՝ «Սպարտակ»-ի ակտիվ գործիչ, հին բոլշևիկ ընկ. Գ. ՔԱԼԱՇՅԱՆԻ տպագրության պատրաստվող «Հիշողություններ «Սպարտակ»-ի մասին» աշխատության մի դրվագը։

## ՀԱՐՄՈՆԻՍՏ ՊԱՎԼՈՆ

Մոտենում էր Բաթումն օկուպացնելու դեմ բողոքի ցույցի օրը։ Երիտասարդ կոմունիստների «Սպարտակ» կազմակերպությունը պատրաստվում էր այդ օրվան։ Պարտիայի Կենտկոմը մեզ վրա պարտականություն էր դրել՝ կազմակերպել այդ օրվան նվիրված թռուցիկների տպագրությունն ու տարածումը։ Այսպիսի խնդիրներ կատարելու համար մենք առավել համարձակ, մարտական տղաներից կազմակերպել էինք այսպես կոչված՝ տեխնիկական կոլեգիա, որ մենք կրճատ կոչում էինք «տեխկոլ»։

Բողոքի օրվա տեխնիկական նախապատրաստությունը ղեկավարելու համար Կոմերիտմիության կենտկոմը տեխկոլին էր կցել ինձ և Յաշա Օկունին։ Թե ով և ինչպես էր կազմակերպել թռուցիկների տպագրությունը, ես այն ժամանակ չգիտեի, և ընդհատակյա աշխատանքի պայմաններում դրա կարիքն էլ չկար։ Ինձ տրվեց մի հասցե և մի թղթի կտոր, որի վրա ձեռքով խազմզված էր Դիդուբեում գտնվող մի տան պլանը, որտեղից պետք է վերցնեինք տպագրված պատրաստի թռուցիկները և փոխադրեինք ընդհատակյա բնակարանը, որը գտնվում էր Աբաս-աբադյան հրապարակի փակուղիներից մեկում։

Ամասը (Սաշա Ամիրբեկովը) կոմերիտմիության կենտկոմի անունից այդ հանձնարարությունն ինձ տալով՝ մանրամասն բացատրեց, թե ինչպես պիտի գտնեմ տունը և ասաց պարոլը, առանց որի ես թռուցիկներն ստանալ չէի կարող։

Մի ընկերոջ հետ միասին մենք առանց դժվարության, ըստ պլանի և բանավոր բացատրության տունը գտանք։ Եվ որպեսզի մեզ վրա ուշադրություն



չհրավիրեինք, ոչ ոքի չհարցրինք, թե որտեղ է այսինչ փողոցը կամ այսինչ համար տունը։

Մտանք բակը։ Մեր դեմն էր հնությունից ծռված մի փայտե սանդուղք, որը տանում էր փոքրիկ տան երկրորդ հարկը։ Սանդուղքի գլխին պատշգամբում պատին հենված, աթոռակին նստած էր մի նիհարավուն մարդ՝ կապույտ սատինե բլուզով, դեպի վեր ոլորած մանրիկ բեղերով։ Նա հարմոն էր նվագում։ Նրա տեսքը մռայլ էր, շարժումները ջղային ու կտրուկ։

Երբ մենք բարձրացանք սանդուղքով և հարմոնիստի առաջը դուրս եկանք, նա անմիջապես չբարձրացրեց իր գլուխը։ Ասես խորասուզված իր մտքերի ու նվագի մեջ, գլուխը դեպի հարմոնը թեքած, նա շարունակում էր իր նվագը՝ դեմքի ջղային շարժումներ անելով։

— Բարով, Պավլո, լավ ես նվագում,— ասացի ես։

Նա գլուխը բարձրացրեց, սիրալիր նայեց մեզ ու ժպտաց։ Նրա դեմքն ասես փայլում էր ուրախությունից։ Նա նվագը դադարեցրեց, և դրանից ասես նրա սիրտը թեթևացավ։

— Ինչո՞ւ այսքան երկար սպասել տվիք,— ասաց նա կշտամբանքով։— Ինչո՞ւ այսքան ուշացաք։

Եվ առանց պատասխանի սպասելու նա արագ վեր կացավ, մտավ սենյակը և դուրս բերեց երկու կապոց, որոնց մեջ թռուցիկներն էին։ Առանց մի րոպե ուշացնելու մենք կապոցները վերցրինք և իսկույն իջանք ցած, փողոցում շուռ եկանք դեպի մի նեղ նրբանցք, ապա դուրս գալով մի լայն փողոց՝ մենք առաջին իսկ պատահած կառքը նստելով շարժվեցինք դեպի Աբաս-աբադյան հրապարակ։

Կոնսպիրատիվ բնակարանին չհասած՝ նեղ նրբանցքներից մեկում կանգ առանք, կառապանին վճարեցինք, բաց թողինք որ գնա, իսկ ինքներս ուշադրությունը շեղելու համար մտանք այն տան դարբասը, որի առաջ կառքը կանգ էր առել։ Մի քանի րոպեից հետո, երբ կառքն արդեն անհայտացել էր փողոցի անկյունում, մենք դարբասից դուրս եկանք և ուղղվեցինք դեպի կոնսպիրատիվ բնակարանը, որտեղ պետք է թռուցիկները թողնեինք մինչև նրանց օգտագործելը։

Մեզ տրված խնդիրը կատարած լինելով՝ մենք բարոյական մեծ բավականություն էինք զգում, մանավանդ, որ հանձնարարությունը կատարվել էր հաջողությամբ, առանց որևէ անախորժության և սխալի։

Թեթևացած սրտով մենք արդեն վերադառնում էինք տպավորություններ փոխանակելով իրար հետ։ Ինձ վրա մեծ տպավորություն էր թողել ընկեր Պավլոն՝ իր հարմոնով։ Նրա անունը, իհարկե, Պավլո չէր։ Այդ մականունը նրան տվել էին միայն այդ օրը որպես պարոլ։ Այն ժամանակ ես չգիտեի և չէի հետաքրքրվում նրա իսկական ազգանունով, որովհետև ընդհատակի պայմաններում դա ավելորդ բան էր։ Հետո միայն իմացա, որ դա ընկ. Ղազարովն է՝ տպագրիչ բանվոր ու հին պարտիական, որն ակտիվ աշխատում էր բոլշևիկյան անլեգալ գրականության տպագրությունը կազմակերպելու ուղղությամբ։

Ընդհատակյա տպագրիչի նրա պրոֆեսիան խիստ հետք էր թողել նրա բնավորության ու վարքի վրա։ Մեծ պատասխանատվությունը, գործը տապալելու մշտական վախի մեջ աշխատելը նրան դարձրել էին ջղերի մի կծիկ, ուստի նրա վրա արագ ու խիստ էր անդրադառնում ամեն մի աղմուկ, սահ-

digitised by A.R.A.R.@

մանված կարգի ամեն մի խախտում։ Բացարիկ կարգապահությունը, պարտիական առաջադրանքը կատարելու ճշգրտությունը նրա համար անսասան օրենք էր։

Դրա համար էլ պատահական չէր նրա կշտամբանքը մեր ուշանալու համար։ Թեև մենք նախատեսված ժամանակից ընդամենը կես ժամ էինք ուշացել, բայց դա էլ բացահայտ անճշտապահություն և անկարգապահություն էր մեր աշխատանքում, որովհետև Թռուցիկները նրա բնակարանում թողնելու ամեն մի ավելորդ րոպեն կարող էր ոչ միայն անձամբ նրա, այլև ամբողջ ընդհատակյա տպագրական գործի կործանման պատճառ դառնալ։ Մանավանդ, որ մենշևիկյան կառավարության հատուկ ջոկատայինների հսկողությունը ընկ. Ղազարովի նկատմամբ ուժեղացել էր։ Նրա մասին ընկ. Ստ. Վարդանյանն իր հիշողություններում գրում է.

«Այդ գործի (ընդհատակյա գրականության տպագրության Գ. Ք.) գլխավոր կազմակերպիչ ընկ. Ղազարովն արդեն հատուկ ջոկատի հսկողության տակ է առնված։ Ձևականորեն նա գործազուրկ է։ Մենք նրան հանել ենք աշխատանքից։ Հարկավոր է նրա համար մի պրոֆեսիա ստեղծել։ Եվ ահա հին տպագրիչ Ղազարովը դառնում է հարմոնիստ։ Երկրային Կոմիտեն այդ գործին հատկացրեց հինգ հազար ռուբլի։ Այդ փողով գնված երաժշտական գործիքը կրկնակի ծառայություն էր մատուցում։ Նա շոյում էր մենշևիկյան տպարանի վարչության լսողությունը, որի համար հաճախ Ղազարովը նվագում էր մի սենյակում, երբ նույն ժամանակ մյուս սենյակում կոփվում էր մեր պարտիայի ռևոլյուցիոն խոսքը։

Գործիքի երկրորդ ծառայությունն այն էր, որ այդ (բավական մեծ չափի) հարմոնի մեջ անլեգալ գրականություն էր փոխադրվում նշանակված տեղը» (Ստ. Վարդանյան — Ընդհատակը, էջ 78—79)։

Այս ամենի մասին ես ոչինչ չգիտեի, երբ գնում էի նրա մոտ Թռուցիկները վերցնելու։ Բայց ընկ. Ղազարովի մեզ ուղղած փոքրիկ կշտամբանքը վճռական դեր խաղաց իմ մեջ ընդհատակյա բոլշևիկի բնավորություն մշակելու գործում։ Ես զգացի և հասկացա ամբողջ պատասխանատվությունը պարտիայի առաջ նրա հանձնարարությունը կատարելիս, զգացի, որ այն պետք է կատարել ճշգրիտ, ճիշտ ժամանակին, լինել կարգապահ։ Ես հասկացա, որ ընդհատակյա բոլշևիկի միայն նվիրվածությունը, վճռականությունն ու համարձակությունը բավական չեն պարտիական հանձնարարության հաջող կատարումն ապահովելու համար, որ այդ ամենին անհրաժեշտ է ավելացնել նաև որոշակի ու խիստ կազմակերպվածություն ու կարգապահություն։ Եվ իմ ամբողջ հետագա աշխատանքի ընթացքում աշխատում էի խստորեն պահպանել այս սկզբունքը։

## «ՏԵԽԿՈԼԸ» ԳՈՐԾՈՒՄ Է

Այսպես ուրեմն, առաջադրանքի առաջին մասը կատարել էինք։ Հարկավոր էր նաև կազմակերպել այդ Թռուցիկների տարածումը քաղաքում։ Թռուցիկներն անլեգալ բնակարանը փոխադրելուց մեկ-երկու օր հետո, երեկոյան ժամը 8-ին նշանակված էր «տեխկոլի» ժողովը ընկ. Գեղամ Սարգսյանի բնակարանում։ Նա իր մի ընկերոջ հետ ապրում էր Գոնչարնայա փողոցի № 44 տան երկրորդ հարկի մի սենյակում։



Ժողովից մեկ օր առաջ ես եղա այդ սենյակում, որպեսզի ծանոթանամ բակի իրադրությանը։ Պայտաձև կառուցված այդ երեք հարկանի տունը գտնըվում էր լեռնալանջին, խրված էր լեռան մեջ և եթե տան առաջին մասը դարպասի կողմից նորմալ կերպով սկսվում էր գետնի երեսից, ապա հետևի կողմից երկու հարկը լեռան մեջ էին խրված, ուստի և երկրորդ հարկի այն սենյակը, որտեղ «տեխկոլը» պիտի հավաքվեր, նկուղային սենյակի տեսք ուներ և լուսամուտների միայն վերևի մասն էր նայում տան հետևով անցնող փողոցին, այնպես որ սենյակի ներսից լուսամուտով դուրս նայելիս միայն անցորդների ոտքերն էին երևում։

Մտնելով այդ տան բակը՝ ասես ընկնում էիր տուփի մեջ։ Երեք կողմից դեպի բակն էին նայում փայտե պատշգամբները, որոնց մեծ մասը ապակեպատված էին։ Մեր կոնսպիրատիվ սենյակն ընկնելու համար հարկավոր էր ամբողջ բակով անցնել, ձախ անկյունում պտուտակաձև երկաթե սանդուղքով բարձրանալ երկրորդ հարկը և մի փոքրիկ հարթակով մտնել պատշգամբ, ապա անցնել մի նեղլիկ միջանցք և դուռը բախել։

Տան բնակիչներն իրենց սոցիալական ու հասարակական դրությամբ որևէ կասկած առաջացնել չէին կարող։ Բնակիչներից մի քանիսը մենշևիկյան միլիցիայի աշխատողներ էին, մեկը թե երկուսը՝ վաճառականի ընտանիք, մենշևիկյան պետական հիմնարկների ծառայողներ և այլն։ Դրա համար էլ այդ տունը կասկածի տակ չէր։ Դա մենք համարում էինք մեր հիմնական հարմարությունը։

Մենշևիկյան ցույցի նախօրյակին «տեխկոլը» պետք է հավաքվեր այդ սենյակում, որպեսզի առաջադրանք ստանար։ Ես գնացի Աբաս-աբադյան հրապարակի կոնսպիրատիվ բնակարանը, որտեղ երկու օր առաջ թողել էինք Թռուցիկները, որպեսզի դրանք տանեմ, բաժանեմ «տեխկոլի» անդամներին՝ քաղաքում տարածելու համար։ Յաշա Օկոևը պետք է սոսինձ ու վրձիններ ձեռք բերեր Թռուցիկները պատերին կպցնելու համար, ինչպես նաև գույնըզգույն կավճամատիտներ՝ տների պատերին լոզունգներ գրելու համար։ Իսկ Ամասը, որը որպես Վրաստանի կոմերիտմիության կենտկոմի անդամներից մեկը՝ ղեկավարում էր «տեխկոլի» աշխատանքը, պետք է բերեր այն լոզունգների տեքստը, որոնցով մենք պիտի զարդարեինք Թիֆլիսի տների պատերը։

Մեզ հայտնի էր, որ ամեն անգամ որևէ ցույցի կամ տոնակատարության նախօրյակին մենշևիկյան կառավարությունը ոտքի էր հանում իր ամբողջ հետախուզությունը և ճնշման ապարատը։ Ուժեղացվում էին հատուկ ջոկատայինների, միլիցիայի ու գվարդիականների խմբերը։ Այդպես էր նաև այս անգամ։

Հաշվի առնելով այս հանգամանքը, ես պետք է որոշեի, թե ինչ ճանապարհով տեղափոխեմ Թռուցիկները, արդյոք բազմամարդ փողոցներով ու նախկին Երևանյան հրապարակո՞վ իջնեմ դեպի Մուխրանսկի կամուրջը, թե՞ Աբաս-աբադյան հրապարակից ուղղակի նեղ ու սակավամարդ նրբափողոցներով դուրս գամ կամուրջը, որից հետո արդեն ընտրություն անելու հարկ չկար. պետք էր Փետրվարի 19-ի փողոցով բարձրանալ վերև, մի նրբանցքով թեքվել և դուրս գալ Գոնչարնայա փողոցը, որտեղ և գտնվում էր ընկ. Սարգսյանի տունը։

Թռուցիկները վերցնելով ու տեղավորելով մի բավական մեծ ցանցի մեջ,

digitised by A.R.A.R.@

որի ներսից շոր էր կարված, ես ընտրեցի նեղ փողոցները և իմ անգլիական կոշիկները թխկացնելով ուղղվեցի դեպի Մուխրանսկի կամուրջը։

Ես ոտից գլուխ անգլիական զինվորի տարազ ունեի հագիս։ Այդ հագուստը կարող էր հուսալի քողարկում լինել ինձ համար։

Դեռ Մուխրանսկի կամուրջը չհասած՝ նեղ փողոցներից մեկում ինձ կանգնեցրեց մի անձ, որ գլխին կարակուլի փափախ ուներ, իսկ հագին՝ չինել, ավելի ճիշտ՝ կոշտ թաղիքից կարված կիսամուշտակ։ Այդպես հագնվում էին մենշևիկյան գվարդիականները։ Նրա վրացերենով տրված հարցին, թե ո՛ւր եմ գնում, ես կոտրտված անգլերենով կտրուկ ու վրդովմունքով պատասխանեցի, թե վրացերեն չեմ հասկանում, թե գնում եմ բաղնիք և ինքս էլ նրան հարց տվի, թե՝ քո ի՛նչ գործն է։ Ես խոսում էի խիստ ու վճռական տոնով, իմանալով, որ նա իմ անգլերենից ոչինչ չի հասկանում, և մի ձեռքիս թաթը մյուսի թևին քսելով, որպես թե լողանալու պրոցես ցույց տալով մի քանի անգամ կրկնեցի՝ բա՛ն, բա՛ն։

Միաժամանակ ես ոչ թե կանգ առա, այլ որպես թե իմ պատասխանով նրա հարցասիրությունը բավարարելով՝ առաջ քայլեցի, ասես թե ոչինչ էլ չէր եղել։ Իսկ իմ «հրեշտակապետը» իմ վճռական շարժումներից և անգլերեն խոսակցությունից շփոթված, ցանկանալով քաղաքավարի լինել օկուպացիոն բանակի «զինվորի» հետ, մի պահ կանգնած մնաց տեղում, ապա ձեռքով ցարմանքի շարժում անելով քթի տակ ասաց, «Գիժի ա՞ էս մամաձաղլի» (գիժ է՞ էս շան որդին), և ձեռքը թափ տալով գնաց իմ ընթացքին հակառակ ուղղությամբ։ Իսկ ես քայլերս արագացնելով շուռ եկա փողոցի անկյունով, մթության մեջ թաղվեցի, ապա Մուխրանսկի կամուրջն անցնելով այլևս առանց որևէ խոչընդոտի հասա կոնսպիրատիվ բնակարանը, որտեղ արդեն հավաքվել էին «տեխկոլի» անդամները։

Ընկերներն անհամբեր սպասում էին Թռուցիկներին և շատ ուրախ էին, որ շուտով հերթական առաջադրանքն ստանալով կցրվեն քաղաքում՝ կատարելու այն։ Սենյակ մտնելով՝ ես նրանց հակիրճ պատմեցի փողոցում պատահած դեպքը։ Իմ պատմությունն անսպասելիորեն այնպիսի քրքիջ առաջացրեց, որ ինքս էլ զղջացի պատմելուս համար, քանի որ թարմ տպավորության տակ պատմությունը բավական կոմիկական դուրս եկավ։ Նվ ինչպե՛ս չծիծաղեին ընկերներս, քանի որ կովկասցին կովկասցու չէր ճանաչել և այնպես ճարպկորեն հիմարացվել էր։

Բայց ես պատմելիս այդպիսի տպավորություն չէի սպասում։ Աղմուկի պատճառով մեր սենյակն ուշադրության առարկա դարձավ, լուսամուտներից անցորդները ներս նայեցին, իսկ պատշգամբում հավաքվեցին բնակիչները, որոնց հետաքրքրել էր, թե այդ ի՞նչ բազմաձայն քրքիջ է լսվում սովորաբար խաղաղ այս մենակյացների սենյակից։

Այս պատահական դեպքը կարող էր մատնել մեզ, եթե շենքի բնակիչները մի քիչ ավելի խելամիտ ու բան հասկացող լինեին։ Բայց զգալով, որ մեր սենյակն ուշադրություն գրավեց, մենք արագ մեզ զսպեցինք։ Ընկերներից մեկը դառնացած քրթմնջաց. «Գրողը տանի, ազատ ծիծաղել էլ չի կարելի, ծիծաղն էլ անաղմուկ ու անլեզու պիտի լինի»։

Աղմուկը դադարեցրինք ու գործի անցանք։ Տեխկոլի բոլոր անդամներին բաժանեցինք ըստ շրջանների, նշեցինք ամեն մեկի ուղին և այն շենքերը, որոնց վրա Թռուցիկներ պիտի փակցվեին, նշեցինք զույգերը. Թռուցիկները,



սոսինձը, կավիճները և լողունգների տեքստերը բաժանեցինք մեր մեջ։ Լո-
զունգները, որոնք գունավոր կավճամատիտներով մեծ-մեծ տառերով պիտի
գրվեին պատերին, շատ էին։ Դրանցից հիշում եմ միայն մի քանիսը. «Ընկեր-
նե՛ր, այսօր ոչ թե պրոլետարիատի ցույցն է, այլ՝ տիկնիկային կոմեդիա»,
«Ջգուշացի՛ր, Ռամիշվիլի, կարմիրներն են գալիս», «Կորչե՛ն վրաց ժողովրդի
դավաճանները», «Կեցցե՛ սովետական իշխանությունը Վրաստանում» և այլն։
Առաջադրանքը կատարելու բոլոր հարցերի մասին արագ պայմանավոր-
վելուց հետո, զույգ-զույգ կամ մեկ-մեկ սկսեցինք դուրս գալ սենյակից։ Բո-
լորը ցրվեցին քաղաքում, իսկ Յաշան և ես դուրս եկանք բոլորից հետո և
գնացինք մի ուղղությամբ, որպեսզի ստուգենք առաջադրանքի կատարումը։
Իհարկե, մենք էլ մեր բաժին Թռուցիկներն էինք վերցրել, որովհետև չէինք
կարող սահմանափակվել միայն ընկերների աշխատանքն ստուգելով և ան-
ձամբ գործնական աշխատանք չկատարելով։
Դուրս եկանք Ջերբեզովսկայա փողոցը, ապա անցանք Նիկոլաևսկայա։
Մեր առաջ մի 200—300 մետր հեռավորության վրա գնում էին մեր երկու
ընկերները։ Իսկ նրանց հետևից 100 մետրի վրա մի ինչ-որ անծանոթ շուռ-
շուռ կռանում էր և գետնից ինչ-որ բաներ էր վերցնում։ Դրանք առջևից գնա-
ցող մեր ընկերների գցած Թռուցիկներն էին։
Թռուցիկներ տարածելու այս եղանակը մեզ շատ վշտացրեց, որովհետև
դա նշանակում էր քամուն տալ այնքան դժվարությամբ ու վտանգներով պատ-
րաստած և մեզ համար այնքան թանկ նյութը։ Բայց ավելի շատ մեզ անհան-
գստացրեց մեր ընկերների վիճակը. մտածում էինք թե անծանոթը լրտես է,
որը Թռուցիկները հավաքում է որպես իրեղեն ապացույց և ահա, որտեղ որ է
հատուկ ազդանշանով օգնության կկանչի հավանորեն մոտերքում գտնվող իր
նման լրտեսների և կվազեն ու կձերբակալեն մեր ընկերներին։
Հարկավոր էր կանխել այդ, և մեր քայլերն արագացնելով, գնացինք,
Թռուցիկները հավաքող անծանոթից առաջ անցանք։ Անցնելիս նայեցինք ան-
ծանոթին և տեսանք, որ նա հագնված է Թիֆլիսի կինտոյի պես՝ գլխին թա-
ղիքե փոքրիկ թասակ, հագին՝ չեղօձիք բլուզ ու լայն շալվար, ոտքերին՝ քթերը
վեր ցցած չստեր։ «Ինչ-որ լրտեսի նման չի»,— ասաց Յաշան։ Այնուամենայ-
նիվ մենք հասանք մեր ընկերներին և նախազգուշացրինք, որ այլևս Թռուցիկ-
ներ չգցեն, նրանց նոր ուղղություն տվինք դեպի ծխախոտի ֆաբրիկան, իսկ
ինքներս գնացինք հակառակ կողմը և շուռ եկանք դեպի Միխայլովսկի պո-
ղոտան տանող փողոցով։ Մի քանի րոպե անկյունում կանգնելով համոզվե-
ցինք, որ անծանոթը գնաց իր ճանապարհով՝ Նիկոլաևսկայա փողոցով և ոչ
ոքի էլ չի լրտեսում։ Սրանից հանգստացած՝ մենք գնացինք մեր որոշած ուղ-
ղությամբ։ Հասնելով Միխայլովսկի պողոտայի անկյունը՝ նկատեցինք թատ-
րոնական աֆիշների բուդկան։ Մենք շտապով այդ աֆիշների վրայից կպցրինք
բազմաթիվ Թռուցիկներ և պողոտայով առաջ գնացինք։
Աջ թևի վրա, համարյա Միխայլովյան հիվանդանոցի դիմաց էր
գտնվում ամառային ակումբը։ Գիշերվա ժամը մեկին մոտ էր, երբ մենք այդ-
տեղ հասանք։ Մտանք ակումբ։ Ժողովուրդն արդեն խուռն բազմությամբ դուրս
էր գալիս։ Մենք վայրկյանական արագությամբ օդը նետեցինք մեր Թռուցիկ-
ները կապոցը, և Թռուցիկները ձյան փաթիլների պես սկսեցին տեղալ բազմու-
թյան գլխին։ Մարդիկ անհամբեր վեր-վեր էին ցատկում և հենց օդում բռնում
Թռուցիկները։ Մենք դուրս վազեցինք ու հեռացանք։ Հետո մինչև գիշերվա

digitised by A.R.A.R.@

ժամը երբեք թափառում էինք քաղաքում և հիանում՝ դիտելով մեր տղաների աշխատանքը. Նախատեսված ուղղություններում շատ ու շատ տեղեր թռուցիկներ էին փակցված և հաճախ հանդիպում էին գունավոր կավճամատիտներով գրված մեր լոզունգները։

Օ՜, որքան արիություն, խիզախություն ու ռևոլյուցիոն ռոմանտիկա կար ամեն մի սպարտակյանի մեջ, երբ նրանք կատարում էին թռուցիկների տարածման առաջադրանքը։ Որքա՜ն գիտակցական կարգապահություն կար նրանց մեջ, անձնվիրություն և հավատ գործի արդարության նկատմամբ, վստահություն՝ հաղթանակի նկատմամբ։

Չեմ հիշում մի դեպք, երբ գեթ որևէ մեկը «տեխկոլի» անդամներից հրաժարվեր որևէ հանձնարարություն կատարելուց։ Ընդհակառակը, ամեն մեկը իր պատվի գործն էր համարում, իր պարտքն էր համարում առաջինն ստանձնել ամենաբարդ ու ամենավտանգավոր հանձնարարությունը։ Երբեք և ոչ մեկից չէիր լսի «չեմ կարող», «հնարավոր չէ» բառերը։ Հանձնարարություն ստացող ամեն ոք այն ընդունում էր որպես անհրաժեշտություն, երբեք չէր անում որևէ առարկություն կամ դատողություն, որի մեջ այս կամ այն առաջադրանքի կատարման նպատակահարմարության նկատմամբ կասկածի գեթ փոքրիկ նշույլ լիներ։

Համոզվածությունը և գործի արդարության հավատը ամեն մեկին դարձնում էր ընդհանուր նպատակով միաձուլված մեկ մարտական կոլեկտիվի մի մասնիկը, մի կոլեկտիվ, որ անձնվիրաբար և անվեհեր կերպով կատարում էր պարտիայի առաջադրանքները։ Եվ այսպիսի կարգապահությունը հիմնված էր բացառիկ բարձր գիտակցականության վրա։ Չէ՞ որ ընդհատակյա աշխատանքի պայմաններում կոլեկտիվը հարկադրանքի բացարձակապես ոչ մի միջոց չուներ։ Եթե կազմակերպությունը որպես պատժի առավելագույն միջոց, կարող էր այս կամ այն անդամին վտարել իր շարքերից, ապա գործնականում ոչ միայն կոլեկտիվը առիթ չէր ունենում այդ միջոցին դիմելու, այլև երբեք հարկ էլ չէր լինում հիշեցնել այդ։ Այդպիսի հիշեցումը միանգամայն ավելորդ էր և ամեն ոք դա մեծ ստորացում ու վիրավորանք կհամարեր ոչ միայն իր, այլև ընկերների համար։ Չեմ հիշում որևէ դեպք, երբ «տեխկոլի» այս կամ այն անդամը խախտած լիներ կարգապահությունը։

Այսպիսի բարձր գիտակցականության հիմքը մարքս-լենինյան գաղափարայնությունն էր, որը միավորում էր բոլորին։ Յուրաքանչյուր ոք իր անձնական շահերը տեսնում էր միայն ընդհանուր իդեալների իրականացման մեջ, ուստի և իր ամեն մի քայլը, ամեն մի արարքը ուղղում էր ընդհանուր գործի հաջողությանը։ Խոսք անգամ չէր կարող լինել անձնական շահերի և ընդհանուր շահերի որևէ հակադրության մասին։

Ամեն ոք զգում էր ամեն մի հանձնարարության կարևորությունն ու պատասխանատվությունը, ինչ բնույթի հանձնարարություն էլ լիներ այդ։ Փոքր գործերի նկատմամբ ոչ մեկի մեջ. ոչ մի արհամարհանք չկար, բայց ամեն մեկն իր պարտքն էր համարում ստանձնել ամենածանր ու վտանգավոր հանձնարարությունները։ Այսպես էին սպարտակյանները՝ բոլշևիկյան պարտիայի անմիջական օգնականները, որոնք դաստիարակված էին մարքս-լենինյան ոգով։ Այսպես էր սպարտակյանի դեմքը։



Կոմերիտմիության համագումարից երկու ամիս անց՝ ես գործուղվեցի Լոռի՝ կոմերիտական կազմակերպությունները վերականգնելու և նորերն ստեղծելու։

Ինձ հանձնվեց մոտ հարյուր հիսուն բոլշևիկյան թռուցիկ, կլոր կնիք Լոռվա կազմակերպության համար և մի վկայական, որը հաստատում էր, որ ես Վրաստանի ԿԵՄ Կենտկոմի ներկայացուցիչն եմ և գործուղվում եմ տեղական կոմունիստական կազմակերպությունների հետ կապ հաստատելու։ Ես ինքս պետք է ապահովեի այդ թռուցիկների ու կնիքի տեղափոխումը, ինքս պետք է իմ գործունեության գյուղն ընտրեի, կապի ոչ մի միջոց ինձ տալ չէին կարող։ Որոշեցի գնալ Ջալալ-օղլու (ներկայիս Ստեփանավանի) շրջանի Հայկական Գյառգյառ գյուղը, որտեղ ազգականներ ունեի, ուստի հեշտ էր քողարկել իմ հանկարծակի լույս ընկնելը գյուղում։ Պետք է անցնեի մենշևիկյան Վրաստանի սահմանը, որ երկաթգծի վրա Սադախլու կայարանն էր, անցնեի Քոլագերան կայարանը, որ դաշնակցական Հայաստանի սահմանային կայարանն էր համարվում, և ապա ֆուրգոնով գնայի մինչև Հայկական Գյառգյառ։ Սադախլուից մինչև Քոլագերան համարվում էր չեզոք գոտի, որ կառավարում էր դաշնակցական և մենշևիկյան կառավարությունների ներկայացուցիչներից բաղկացած խառն հանձնաժողովը։ Այդ ադմինիստրացիան գտնվում էր Ալավերդիում։

## ՍԱՀՄԱՆԱԳԼԽԻՆ

Այդ սահմաններով թռուցիկների փոխադրումն ապահով դարձնելու համար ես որոշեցի ինձ հետ վերցնել նաև հորեղբորս աղջկան՝ Աղավնուն։ Դա մոտ տասը տարեկան խելացի ու կայտառ աղջիկ էր և, որ գլխավորն է, շատ կապված էր ինձ հետ, ինձ լսում էր որպես մեծ եղբոր և անխոս կատարում էր իմ ասածները։ Աղավնու հարազատները ապրում էին Գյառգյառ գյուղում, և ես որպես նրա մեծ եղբայր գյուղ էի տանում նրան որպես հիվանդի, որն իբր թե կլիմայական բուժման կարիք է զգում։

Ավագ ընկերներից լսել էի, որ ընդհատակյա աշխատանքի ժամանակ կոնսպիրացիայի շաբլոն ձևերը հաճախ տապալման պատճառ են լինում, ուստի նպատակահարմար համարեցի շաբլոնից խուսափել։ Դրա համար էլ որոշեցի թռուցիկները տանել ոչ թե կրկնակի տակ ունեցող ճամպրուկով, ինչպես սովորաբար արվում էր, այլ՝ մի ուրիշ ձևով։ Վերցրի մի բարակ շալ, թռուցիկները նրա մեջ փաթաթելով լայն գոտի դարձրի և կոմպրեսի պես կապեցի Աղավնու փորին, իսկ ռետինե կնիքը թաքցրի իմ սապոգի ճտքի մեջ։

Այսպես մենք բարեհաջող հասանք Քոլագերան կայարանը։ Ամբողջ ճանապարհին Աղավնին պառկած էր որպես հիվանդ։ Սադախլու կայարանում՝ մենշևիկյան սահմանապահ գործակալները փաստաթղթերն ստուգեցին, բայց մեզ բոլորովին չանհանգստացրին։ Ստուգումն ավելի շուտ ձևական բնույթ էր կրում։ Իմ ուղեկիցները բացատրեցին, որ Վրաստանից դուրս գնացողներին խիստ չեն ստուգում, առանձնապես խնամքով ստուգում են Վրաստան գնացողներին։

Քոլագերան կայարանում, հենց որ գնացքը կանգ առավ, մեզ հաղորդեցին, որ ոչ ոք գնացքից դուրս գալու իրավունք չունի, որովհետև փաստաթղթերն ստուգելու են։ Մենք գտնվում էինք երկրորդ կուպեում և իրերը հավաքելով պատրաստվում էինք դուրս գնալու։ Կողքի կուպեում արդեն երևա-

digitised by A.R.A.R.@

ցին սահմանապահ ադմինիստրացիայի ներկայացուցիչները դաշնակյան սպայի գլխավորությամբ և սկսեցին փաստաթղթերի ստուգումը։ Իմ «հիվանդ» քույրիկը անկողնուց վեր կացավ ու սկսեց հագնվել՝ պատրաստվելով վագոնից դուրս գալու։ Հանկարծ նա ինձ մոտ կանչեց և ականջիս ասաց, որ շալն արձակվել է։

Փաստաթղթերն ստուգողներն արդեն մտնում էին մեր կուպեն և շալը նորից կապելու ոչ մի հնարավորություն չկար։ Բավական է, որ Աղավնին շարժվեր տեղից, և թռուցիկները ցրիվ կգային կուպեում։ Ես առանց երկար մտածելու շալը թռուցիկներով արագ պոկեցի նրա վրայից և կոխելով շալվարիս գոտու տակ՝ ֆրենչիս կոճակները պինդ կոճկեցի։

Հենց նույն րոպեին ստուգողները մտան մեր կուպեն և փաստաթղթերը պահանջեցին։ Բոլոր ուղևորները ներկայացրին իրենց փաստաթղթերը։ Իմ աշակերտական վկայականը, չգիտես ինչու, կասկած առաջացրեց ստուգող սպայի մեջ, և նա բարկությամբ գոռաց. «Ի՞նչ աշակերտ ես դու, որ տարվա այս ժամանակ քարշ ես գալիս այստեղ»։ Ես փորձեցի բացատրել, թե հիվանդ քրոջս գյուղ եմ տանում, բայց նա լսել էլ չուզեց և դառնալով իրեն ուղեկցող հրացաններով զինված գյուղացի երիտասարդներին՝ կտրուկ հրամայեց. «Տարե՛ք սրան»։

Իրենց տեսքով, վերաբերմունքով, իրենց պարզությամբ, միամտությամբ ու բարությամբ այդ հրացանավոր գյուղացի տղաները հիվանդագին կասկածամիտ, գոռհկության հասնող կոպիտ ու գազազած դաշնակյան սպայի ուղղակի հակադրությունն էին։ Նրանց հագին ցնցոտիներ էին, ոտքերին՝ մաշված տրեխներ, որոնց ծակերից դուրս էին պրծել մերկ մատները, գլուխներին՝ միմի մոթալ փափախ։ Ակներև էր, որ նրանք դժկամությամբ են կատարում իրենց պետերի հրամանները՝ նրանց գործողությունների մեջ չտեսնելով ոչ մի իմաստ ու անհրաժեշտություն։

Սրանք շրջակա գյուղերից պահակային ծառայության համար շտապ մոբիլիզացված գյուղացի երիտասարդներ էին։

Ես մտածեցի, որ սրանցից ոչ մի վնաս սպասել չի կարելի, և երբ վագոնից դուրս եկանք, հարցրի. «Ո՞ւր եք տանում ինձ և ինչո՞ւ։ Բա ես էլ ե՞րբ պիտի ֆուրգոն վարձեմ»։ Նրանք ինձ բացատրեցին, որ տանում են կայարանապետի սենյակը, ուր կգա և ավագ սպան՝ ամբողջ գնացքն ստուգելուց հետո։

Մեզանից ոչ հեռու կանգնած էր Աբրահամը՝ Ջալալ-օղլեցի մի երիտասարդ գյուղացի, որը եկել էր մեր կուպեում և սպասում էր իմանալու, թե ինչով կվերջանա իմ ձերբակալությունը։ Ճանապարհին ես արդեն մտերմացել էի նրա հետ, շոշափել էի տրամադրությունը և համոզված էի, որ թեև նա քաղաքական հասուն հայացքներ չունի, բայց պետք եղած րոպեին կպաշտպանի և կօգնի ինձ։ Ես դիմեցի նրան՝ խնդրելով իր հետ տանել քրոջս և մեր փոքրիկ ճամպրուկը, մինչև ես կպարզեմ ինձ ձերբակալելու պատճառը։ Նա սիրով համաձայնեց։ Ճամպրուկը նրան տալով՝ ես շարժվեցի ինձ ուղեկցող միլիցիոներների հետ, բայց հանկարծ գլխումս միտք ծագեց նրա միջոցով փրկել թռուցիկները, ուրեմն՝ և ինձ։

Հույս դնելով ինձ ուղեկցողների միամտության վրա, ես ռիսկի դիմեցի։ Արդեն մութ էր։ Շալվարիս գոտկի տակից հանեցի լրագրի մեջ փաթաթած թռուցիկների դաստան և վճռական ու հրամայական տոնով ձայն տվի. «Վսի՛ր, Աբրահամ, վերցրու քո լրագրերը, իջեանում քեզ պետք կգան, իսկ ես սրանք



կարդալու հավես չունեմ»։ Ինձ ուղեկցողների ներկայությամբ ես նրան հանձնեցի «լրագրերը» և մենք շարժվեցինք տարբեր ուղղությամբ՝ Աբրահամը Աղավնու հետ դեպի իջևան, իսկ ես՝ ինձ ուղեկցողների հետ դեպի կայարանի շենքը։

Արդեն խավար գիշեր էր և Դեբեդը անխոնջ վշշոցով հոսում էր մռայլ կիրճի միջով։

Հասանք կառամատույց, սանդուղքով իջանք կայարանի շենքը։ Կայարանապետը, հեռագրիչը և մյուս ծառայողները տեղավորված էին մեկ սենյակում։ Այդ նույն սենյակում էր գտնվում նաև սահմանապահ վարչությունը։ Մենք կանգ առանք առաջին սենյակում, որը ծառայում էր որպես ուղևորների սպասարան։ Ինձ բերողների նման միլիցիոներների ուղեկցությամբ այդ սենյակը բերին ուրիշ ձերբակալվածներ ևս։ Դրանք մի վեց մարդ էին, որոնց բռնել էին տարբեր պատճառներով։

Սենյակի աջ կողմում դրված էր նիկոլաևյան ժամանակներից մնացած մի կաղնե կոշտ նստարան։ Ձերբակալվածների մի մասը տեղավորվեց նրա վրա, մյուսները մնացել էին ոտքի վրա կանգնած և երբեմն ետ ու առաջ էին քայլում, որովհետև երկար կանգնելը շատ ձանձրալի էր։

Ավագ սպայի գալուն սպասեցինք երկար, մոտ մեկ ու կես ժամ։ Այդ ժամանակամիջոցում ես խորհում էի ձերբակալության մասին, աշխատում էի կռահել, թե ինչ կասի ինձ այդ «ամենազոր» սպան, ինչով պիտի հիմնավորի ինձ ձերբակալելը, ինչ հիմքեր ունի դրա համար և մտածում էի, թե ինչպես պիտի պահեմ ինձ նրա հետ խոսելիս։

Ինձ համար պարզ էր, որ նրանք առայժմ իմ դեմ որևէ հանցանշան չունեն, այլ միայն ինչ-որ կասկած ունեն, ուստի հարկավոր էր որևէ կերպ ոչնչացնել ինձ մոտ մնացած վկայականը, որը ստացել էի Վրաստանի ԿԵՄ Կենտկոմից և ռետինե կլոր կնիքը, որպեսզի խուզարկության դեպքում մոտս ոչինչ չգտնեն։

Այս սենյակը գալուց մի քիչ ժամանակ անց՝ ես մոտս կանգնած միլիցիոներին հարցրի, թե որտեղ է զուգարանը և խնդրեցի ինձ տանել այնտեղ։ Նա սիրով կատարեց իմ խնդիրքը, և ես հնարավորություն ստացա վկայականը պատառ-պատառ անել, կլոր կնիքը կոտրել և գցել կոյուղու մեջ։

Նորից կայարանի շենքը վերադառնալով՝ մենք էլի երկար սպասեցինք սպային։ Մեզ հսկող միլիցիոներներից մեկին սպասելը ձանձրացրեց, նա խոսեց երկրորդ միլիցիոների հետ և որոշելով, որ երկուսով այստեղ անելիք չունեն, ինքը գնաց։

Քիչ հետո մեզ հսկող միլիցիոներն էլ անգործությունից ու երկար սպասելուց հոգնած՝ քուն մտավ նստարանի թիկնակին հենված, հրացանը երկու ոտների մեջ առած։ Ինձ հետ միասին նույն սենյակում գտնվող ձերբակալվածների հետ զրուցելով ես իմացա, որ նրանք բոլորն էլ մոտակա Ծաթեր, Ջորագյուղ, Դսեղ և այլ գյուղերից են և ձերբակալվել են զանազան պատճառներով, որը տոմս չի ունեցել, որը վկայական, երրորդը անցաթուղթ չի ունեցել, այնինչ պետք է գնար հաջորդ կայարանը։

Ձերբակալված վեց հոգուց չորսը համարյա իրենց տանն էին։ Նրանց գյուղերն այնքան մոտիկ էին, որ ոտքով կարելի էր այնտեղ հասնել ամենաշատը մեկ ժամում։ Իմանալով, որ ձերբակալելիս նրանցից ոչ մի փաստա-

digitised by A.R.A.R.@

թուղթ չեն վերցրել, ես հարց տվի, թե էլ ինչի՞ եք սպասում, ինչո՞ւ չեք գնում ձեր տները:

Նրանք նայեցին նստարանին խռմփացնող միլիցիոներին և որոշեցին, որ իսկապես սպասելու կարիք չկա, մանավանդ այնպես մութ էր, որ կայարանից մի 100—150 քայլ հեռացող մարդը կկորչեր խավարի մեջ: Քիչ հետո այդ ձերբակալված գյուղացիները մեկ մեկ սկսեցին գնալ իրենց տները:

Բայց իմ դրությունն ուրիշ էր: Ես չէի կարող գնալ, որովհետև դրանով ավելի մեծ կասկած կհարուցեի իմ հանդեպ: Բացի այդ, հո չէի՞ կարող թողնել քրոջս, իրերս և թռուցիկները, որոնց տարածումը գյուղացիների մեջ՝ պարտիական հանձնարարություններից մեկն էր, որը և ինձ պարտավորեցնում էր իմ ամեն մի քայլը համաձայնեցնել այդ առաջադրանքի կատարման հնարավորության հետ:

Իմ փախուստը ակներևաբար կտապալեր ամբողջ գործը, դրա համար էլ փախչելու մասին չէի մտածում: Իմ միտքն այդ ժամանակ զբաղված էր թռուցիկներով, Աբրահամով, որն իր անտեղյակությամբ կարող էր և՛ ինձ կործանել, և՛ իրեն: Չէ՞ որ նա չգիտեր, թե ինչ «թերթեր» եմ տվել իր ձեռքը: Այսպես մտածելով ես ետ ու առաջ էի քայլում սենյակում, իսկ ինձ հսկող միլիցիոները շարունակում էր խռմփացնել:

Մտքիս թելն ընդհատեց մի անակնկալ աղմուկ ու հայհոյանք: Դռան մեջ երևացին մի խումբ մարդիկ՝ մաուզերներն ու նագանները ձեռքներին, իսկ նրանց առջևից քայլում էր սև հագուստով մի մարդ, գլխին մեծ հովհարով մի սև կեպի, որը շուռ տված կաթսայի ձև ուներ: Այս մարդուն կոպտորեն հրեցին կայարանապետի սենյակը, գցեցին հատակին և սկսեցին ծեծել: Այդ տեսարանը ես դիտում էի դռան մեջ հագցրած քառանկյունի փոքրիկ ապակու միջով: Ակներև էր, որ «հանցագործն» օտարերկրացի է, բայց ինչո՞ւ էին ծեծում նրան, և ո՞վ էր նա: Շրջապատիս մարդկանց հարցնելով իմացա, որ դա պարսկական հյուպատոսության աշխատող է, որ նրա հետ կռվի է բռնվել մի ինչ-որ մաուզերիստ, նրանք հայհոյել են իրար, հետո կռիվն ավելի է մեծացել, բորբոքվել են կրքերը, երկուսն էլ իրար վրա են հարձակվել մերկացված ատրճանակներով, և ահա նրանց բերել են այստեղ:

Իհարկե, ոչ մի քննություն էլ չեղավ, այլ պարզապես որոշել էին իրանցուն հասկացնել, որ չհամարձակվի որևէ կարգ ու կանոնի և օրինականության մասին մտածել մի երկրում, որտեղ մաուզերիստներն են իշխում: Նայում էի ու մտածում. «Ահա քեզ դիվանագիտություն՝ դաշնակյան ձևով»: Որպիսի՜ գռեհկություն, անպատասխանատվության ու անտաշության կարող են հասնել մարդիկ, որոնք իրենց համարում են իշխանության պաշտոնական ներկայացուցիչներ և այդպես լկտիաբար ոտնահարում են մարդու տարրական իրավունքները, մանավանդ, որ այդ մարդն օտարերկրացի է և օտարերկրյա պետության պաշտոնական ներկայացուցիչ:

Այս մտքերի մեջ էի, երբ հանկարծ լսեցի մեզ հսկող միլիցիոների ձայնը: Ետ նայեցի, տեսնեմ՝ աչքերը տրորելով նա ինչ-որ բան է մրթմրթում քթի տակ: Նա արթնացավ, ինձ նկատեց և փոքր-ինչ վրդովված ձայնով հարցրեց, թե՝ հապա որտե՞ղ են մյուս ձերբակալվածները:

— Ես ի՛նչ գիտեմ,— պատասխանեցի ես:— Ի՛նչ է դու ստացականով նրանց պա՞հ ես տվել ինձ: Տեսնում ես, այստեղ մի ամբողջ ներկայացում է, նայում ենք: Ձերբակալվածներն էլ այստեղ էին, երևի դուրս գնացին, կգան:



Նա անհանգստացավ, դուրս գնաց կայարանի շենքից, մի քանի րոպեից հետո վերադարձավ, բայց, իհարկե, ոչ ոքի գտնել չէր կարողացել: Նրանք երևի արդեն իրենց գյուղերումն էին, և կայարանի տերիտորիայում որոնելն անօգուտ էր:

Արդեն կես գիշեր էր: Լուսամուտից դուրս նայելով Դեբետի հոսանքի հակառակ ուղղությամբ՝ իմ ուշադրությունը գրավեցին ինչ-որ լուսավոր շարժվող կետեր: Լույսերը ավելի ու ավելի էին մոտենում կայարանին: Մի քանի րոպեից հետո կայարանի սենյակը մտավ Աբրահամը՝ լապտերը ձեռքին, մի քանի հոգու ուղեկցությամբ, որոնց ձեռքին նույնպես «չըչիկ» լապտերներ կային: Այդ սրանք էին եղել, որ լապտերները ձեռքներին իջևանի կողմից կամուրջի վրայով գալիս էին կայարան:

Աբրահամը և մի քանի մարդ ինձ շրջապատեցին ու սկսեցին զրուցել, իսկ նրանց հետ եկածներից մեկը մտավ կայարանապետի սենյակը: Ես Աբրահամին հարցրի քրոջս մասին և իմանալով, որ նա վատ չի տեղավորվել և արդեն քնած է, սկսեցի նրանց պատմել իրանցու հետ պատահած դեպքը:

Դեռ ասելիքս չէի վերջացրել, երբ ինձ կանչեցին կայարանապետի մոտ: Սպան ինձ հարցրեց, թե ուր եմ գնում և քանի որ աշակերտ եմ, ինչո՞ւ գյուղ եմ գնում այժմ, երբ շուտով ամառային արձակուրդները վերջանալու են և դասերն սկսվելու: Ես նրան բացատրեցի, որ հանգստանալու համար չեմ գյուղ գնում, այլ տանում եմ հիվանդ քրոջս և շուտով պետք է վերադառնամ, որպեսզի պարապմունքներին հասնեմ: Նա իմ աշակերտական վկայականը վերադարձրեց և ասաց. «գնա, ազատ ես»: Հարկ չկա ասելու, որ ես շատ գոհ էի գործի այսպիսի ընթացքից, բայց չէի կարողանում հասկանալ, թե ինչի շնորհիվ այդպես լավ ու հեշտ ազատվեցի հնարավոր անախորժություններից ու բարդություններից:

Կայարանապետի կաբինետից դուրս գալով՝ ես մոտեցա առջևի սենյակում ինձ սպասող Աբրահամին և հայտնեցի, որ ես ազատված եմ: Նա էլ ուրախացավ, և մենք նրան ուղեկցող մարդկանց հետ միասին գնացինք դեպի իջևանը, որ գտնվում էր գետի մյուս ափին, կայարանից մի կես կիլոմետր հեռու: Սկզբում բոլորս միասին խմբով էինք գնում, հետո մեր ուղեկիցներն առաջ ընկան, իսկ ես ու Աբրահամը ետ մնացինք: Ես շտապում էի իմանալ, թե Աբրահամն ինչ է արել թռուցիկները և նրա կարծիքն իմանալ, թե ինչպես եղավ, որ ինձ այսպես հեշտ ազատեցին:

Երբ առջևից գնացողներն արդեն այնքան հեռու էին, որ մեզ լսել չէին կարող, ես Աբրահամին հարցրի, թե ի՛նչ է արել «լրագրերը»: Եվ սկսեցի նրան բացատրել, որ դրանք սովորական լրագրեր չեն, այլ կարևոր փաստաթղթեր են և պետք է որքան կարելի է պինդ պահել, որպեսզի որևէ մեկի ձեռքը չընկնեն: «Լավ, լավ,— ասաց Աբրահամը:— Ես երեխա չեմ: Հենց որ դու ինձ տվիր թռուցիկների այդ կապոցը, ասելով, թե իմ լրագրերն են, մի պահ տարակուսանքի մեջ ընկնելուց հետո հասկացա, որ դրանք լրագրեր չեն, այլ կարևոր փաստաթղթեր, որոնք ձերբակալվածի մոտ թողնելը վտանգավոր բան է: Դրա համար էլ սուսուփուս վերցրի և դրի իմ խուրջինի մեջ: Հասնելով իջևան և քրոջդ տեղավորելով՝ ես մի թռուցիկ հանեցի ու վատ լուսավորված սենյակի մի անկյունում կարդացի գաղտուկ, այնպես՝ որ ոչ ոք չնկատի, թռուցիկը դրել էի լրագրի մեջ և այնպիսի տպավորություն էր ստացվում, թե լրագիր եմ կարդում:

digitised by A.R.A.R.@

Երբ Թռուցիկի բովանդակությունն իմացա, որն իսկ և իսկ իմ սրտովն էր, մտածեցի կազմակերպել քո ազատվելու գործը, իսկ Թռուցիկները Թաքցրի շատ ապահով տեղ, իշխանի շենքերից մեկի կտուրի տակ։ Իշխանի տերը ինձ շատ մոտիկ մարդ է, իսկ նա մտերմություն ունի սահմանապահ իշխանությունների և մանավանդ այդ ավագ սպայի հետ։ Բոլոր մեծավորները հաճախ են հյուր լինում նրա մոտ։ Համարյա ամեն առավոտ մտնում են նրա մոտ, որպեսզի «բարի լույս»ասեն, մի Թաս օղի կուլ տան։ Դե ես էլ որոշեցի քո ազատման համար օգտագործել իշխանի տիրոջ մոտիկությունն այդ սպայի հետ։

Տեսնելով, որ դու ուշանում ես, իշխանի տիրոջը պատմեցի, Թե քեզ ձերբակալել են առանց որևէ պատճառի, ասացի, Թե դու իմ մոտիկ ազգականն ես։ Նա սիրով համաձայնեց խոսել ավագ սպայի հետ, մենք միասին եկանք կայարան, և ահա հետևանքը ինքդ տեսնում ես»։

Այսպիսով ամեն ինչ շատ բարեհաջող ընԹացք ունեցավ։ Վտանգն անցած էր, այժմ հարկավոր էր մտածել առաջիկա օրերի անելիքների մասին։

Երբ հասանք իջևան, Աբրահամն առանց վաղվան հետաձգելու գնաց կտուրից Թռուցիկները բերեց, տվեց ինձ։ Մենք մտանք իջևանի կիսախավար սենյակը, ես Թռուցիկները տեղավորեցի ճամպրուկիս մեջ, ապա առանց շորներս հանելու պառկեցինք Թաղիքով ծածկված Թախտի վրա։ Կես գիշերն արդեն անց էր։ Օրվա անցուդարձից հոգնած՝ շուտով խոր քուն մտանք։

Առավոտյան շատ վաղ արԹնացանք արդեն ոտքի վրա գտնվող ուղևորների աղմուկից։ Նույն նավԹի ճրագի աղոտ լույսի տակ հավաքեցինք մեր իրերը, իջևանի տիրոջը վճարեցինք և գնացինք տեղավորվելու ֆուրգոնում, որը մեզ գյուղ էր տանելու։ Իջևանի նեխած օդից հետո մենք ագահաբար էինք շնչում դրսի Թարմ, կազդուրիչ օդը։

Իջևանի բակում և խճուղու եզրերին կանգնած էին ֆուրգոնները։ Ձիերը գլուխները տոպրակների մեջ խրած՝ կերի վերջին մնացորդներն էին ուտում։ Կառապաններից ոմանք լծասարքն էին հագցնում ձիերին, ոմանք ձիերն էին ջրում, ոմանք էլ արդեն լծել ու պատրաստ էին մեկնելու։ Մեր ֆուրգոնը՝ երեք ձի լծած արդեն պատրաստ էր։ Երեխաներին, կանանց ու հասակավորներին նստեցնելուց հետո ճանապարհ ընկանք։ Աբրահամը, ես և էլի մի քանի ուղևոր ֆուրգոնի հետևից ոտքով էինք գնում, չէինք ուզում հենց ճանապարհի սկզբին, այդ խիստ վերելքում ծանրաբեռնել խեղճ անասուններին, որոնք դեռ 28 կիլոմետր ճանապարհ պիտի անցնեին։

Մենք գտնվում էինք խոր կիրճի հատակում, մեզանից ցած աղմուկով հոսում էր Դեբետը, երկու կողմերում բարձրանում էին անտառապատ լեռները, որոնց լանջերով օձագալար բարձրանում էր խճուղին։ Քանի դեռ դուրս չենք եկել այդ կիրճից, ուղևորներից շատերը ֆուրգոն կամ սայլ չեն նստում, այլ ոտքով գնում են ուղիղ ճանապարհով, առանց ոլորապտույտներ անելու, ուստի սովորաբար ֆուրգոններից ավելի շուտ են բարձրանում և կանաչ խոտի վրա նստած՝ սպասում իրենց ֆուրգոնի գալուն։

Ահա այս սովորությանը հետևելով՝ մենք էլ ոտքով բարձրացանք մինչև վերջին շրջադարձը, որտեղ արդեն ֆուրգոն նստելով ուղղվեցինք դեպի Գյուլագարակ գյուղը։ Գյուլագարակում մենք պետք է հրաժեշտ տայինք Աբրահամին, որովհետև նա գնում էր Ջալալ-օղլի, իսկ ես ու քույրս պետք է գնայինք հակառակ ուղղությամբ՝ Գյառգյառ գյուղը, որը Գյուլագարակից մի երկու կիլոմետր հեռավորության վրա էր գտնվում։



Հրաժեշտ տալիս ես Աբրահամին մի քանի Թռուցիկ տվի վստահելի գյուղացիների շրջանում տարածելու համար, խստորեն պատվիրելով ո՛չ մի դեպքում և ո՛չ մի պայմանով չասի, Թե ումից է ստացել։ Աբրահամը գնաց դեպի Ջալալ-օղլի, իսկ ես ու քույրս մի ուրիշ ֆուրգոն նստեցինք և մի կես ժամից հետո արդեն Գյառգյառ գյուղումն էինք։

## ԳՅԱՌԳՅԱՌ ԳՅՈՒՂՈՒՄ

Իմ տրամադրության տակ միայն մի քանի օր կար։ Գյուղում երկար մնալու ոչ իմաստ կար, ոչ անհրաժեշտություն, մանավանդ, որ դա կարող էր ավելորդ կասկածանքի առիԹ դառնալ։

Իմ խնդիրն էր՝ սկզբնական բջիջներ ստեղծել և դրանք կապել Թիֆլիսի մեր կենտրոնի հետ և միաժամանակ տարածել բոլշևիկյան Թռուցիկները։

Ժամանակը կարճ էր, ուստի հարկավոր էր որքան կարելի է շուտ՝ գործողության ծրագիր կազմել։ Ինչի՞ց սկսել։ Ինչպե՞ս գտնել բոլշևիկների նկատմամբ լավ տրամադրված մարդիկ։ Հարկավոր էր շոշափել առանձին երիտասարդների տրամադրությունը և դրանցից կազմակերպության ապագա անդամներ ընտրել։

Գալուս առաջին օրը զբաղված էի մոտիկ և հեռու ազգականներիս հետ հանդիպելով, որոնք Գյառգյառում բավական շատ են, իսկ հետևյալ օրը հանդիպեցի իմ մանկության ընկերներ Սուրեն Մովսիսյանին և Պարգև Մուրադյանին։

Իմ այս ընկերների հետ զրուցելով ու տրամադրությունները շոշափելով հասկացա, որ սրանց վրա լրիվ կարելի է հույս դնել։ Զբոսնելով մենք գյուղից դուրս գնացինք, նստեցինք մի կանաչ դաշտում և սկսեցինք զրուցել։ Նրանք պատմում էին գյուղի դրության մասին, Թյուրքական օկուպանտների կատարած գազանությունների մասին, երբ 1918 Թվականին եղել էին գյուղում, պատմում էին գյուղացիների տրամադրությունների մասին։

Գյուղացիները շատ էին դժգոհ այն դրությունից, որ Վրաստանի ու Հայաստանի «անկախ» պետություններ ստեղծելու կապակցությամբ առաջացել էր Լոռիում։ Վրաստանի ու Հայաստանի միջև ծագած պատերազմը երկու եղբայրական ժողովուրդների՝ վրացիների ու հայերի միանգամայն անմիտ արյունահեղության պատճառ էր դարձել։ Չեզոք գոտի ստեղծելն ավելի էր խստացրել Լոռու բնակչության անջատումը հարևան Բորչալուի և Շուլավերի բնակչությունից, այնինչ Լոռին հնուց ի վեր և՛ տնտեսապես, և՛ կուլտուրապես կապված է եղել այդ շրջանների և Թիֆլիսի հետ։ Այժմ դաշնակների ու մենշևիկների հակաժողովրդական քաղաքականության հետևանքով Լոռվա շրջանի կտրվածությունը բացասական ազդեցություն էր ունենում Լոռվա գյուղերի տնտեսության վրա և գյուղացիների օրինական դժգոհությունն էր առաջացնում։

Իմ բարեկամների պատմածները, նրանց հաղորդած փաստերը բավական պարզ պատկերում էին դաշնակների ու մենշևիկների հակաժողովրդական քաղաքականությունը։

Ես նրանց հետ խոսեցի միջազգային դրության մասին, պատմեցի Կարմիր Բանակի ու սովետական իշխանության հաջողությունների, միջազգային բանվորական շարժման հեռանկարների մասին, բացատրություններ տվի նրանց գյուղացիներին հուզող հրատապ խնդիրների վերաբերյալ, որպեսզի նրանք էլ

digitised by A.R.A.R.@

գյուղացիների հետ խոսելիս կարողանան համապատասխան բացատրություններ տալ։

Զրույցի վերջում մենք կարդացինք մի թռուցիկ, ապա նրանց հայերեն տպագրած թռուցիկներ տվի, որպեսզի տարածեն ոչ միայն իրենց, այլև հարևան գյուղի գյուղացիների շրջանում։ Պայմանավորվեցինք, որ նրանք համապատասխան ընկերներ հավաքագրեն երիտասարդության կոմունիստական կազմակերպության մեջ ընդունելու համար և երկու օրից հետո գումարենք կազմակերպական ժողով։ Կոնսպիրացիայի նպատակով ես լայն կապեր ստեղծել չէի կարող և երիտասարդության մեջ աշխատանքը կատարվում էր այդ ընկերների միջոցով։

Այս «զբոսանքից» վերադառնալիս ես նրանց խնդրեցի իմանալ, թե որ գյուղերում բոլշևիկորեն տրամադրված գյուղացիներ կան, որպեսզի նրանց հետ կապ ստեղծեմ։ Մյուս օրը իմ բարեկամները հարևան Ռուսական Գյառգյառ (ներկայումս Պուշկինո) գյուղի մի քանի գյուղացու անուն տվին։ Ռուսերեն տպված մի դաստա թռուցիկներ վերցնելով ես գնացի այդ գյուղը, որը Հայկական Գյառգյառից կես կիլոմետրի վրա է գտնվում։ Այդտեղ ես գտա Սաղովսկուն, Պիվովարովին և Դրյուկովին, որոնց անունները ինձ տվել էին իմ բարեկամները։ Ես նրանց հայտնեցի իմ գալու նպատակը և խնդրեցի տեղական բոլշևիկների ժողով գումարել։

Ինչպես իմ, այնպես էլ նրանց դրությունը բավական անհարմար էր։ Ոչ նրանք էին ինձ ճանաչում, ոչ ես՝ նրանց։ Ես ձեռքիս չունեի այն փաստաթուղթը, որ պիտի հաստատեր, թե կոմունիստական կազմակերպության կողմից այստեղ եմ ուղարկված որոշ առաջադրանքով. այդ փաստաթուղթը ես ոչնչացրել էի Քոլագերանում ձերբակալվելու պատճառով։ Զգացի, որ նրանք որոշ անվստահությամբ ու զգուշությամբ են վերաբերվում ինձ, որ ընդհատակյա աշխատանքի պայմաններում միանգամայն բնական էր։ Սակայն իմ անկեղծ զրույցը նրանց հետ իր ազդեցությունն ունեցավ և հավատ ներշնչեց իմ նկատմամբ։ Նրանք համաձայնվեցին հավաքվել կազմակերպության անդամներից մեկի տանը։

Ինձ տարան մի խրճիթ, որտեղ ժողովն էր կայանալու։ Քիչ հետո ընկերները մեկ-մեկ հավաքվեցին։ Ընդամենը վեց հոգի էին. մի քանի ընկեր էլ գյուղից բացակա էին, ուստի ժողովին մասնակցել չէին կարող։ Ժողովն սկսվեց։ Ես հայտնեցի իմ գալու նպատակը և զեկուցում տվի ընթացիկ մոմենտի մասին, պատմեցի Ռուսաստանում քաղաքացիական ռազմաճակատներում կարմիրների ունեցած հաջողությունների, միջազգային իմպերիալիզմի անխուսափելի փլուզման մասին, կապիտալի երկրներում բանվորական շարժման ծավալման և գաղութային երկրներում, մասնավորապես Հնդկաստանում ազգային-ազատագրական շարժման ստեղծման մասին, ինչպես և ամբողջ աշխարհում ռևոլյուցիոն շարժման հեռանկարների մասին։ Դրա հետ միասին մերկացրի դաշնակների ու մենշևիկների դավաճանական քաղաքականությունը, որոնք անգլո-ամերիկյան իմպերիալիստների լակեյները դառնալով՝ Վրաստանն ու Հայաստանը կտրել են Սովետական Ռուսաստանից և իմպերիալիստներին օգնում են գաղութատիրական լուծ դնելու մեր ժողովուրդների վզին։ Այս ամենից բխում էր տեղական կոմունիստների խնդիրը։ Նրանք պետք է աշխատավոր գյուղացիությանը բացատրեին Հայաստանի ու Վրաստանի հակառևոլյուցիոն պարտիաների վարած քաղաքականության կործանարար լինելը և աշխատավորներին պայքարի կազմակերպեին սովետական իշխանություն հաստատելու համար։



Սրանից հետո անցանք երկրորդ հարցին։ Ես պատմեցի պարտիայի կազմակերպական կառուցվածքի մասին, առանձնապես նշելով պրակտիկ հարցերը, կազմակերպության առավել նպատակահարմար կառուցվածքը տվյալ գյուղում ընդհատակյա աշխատանք տանելու համար։ Ասացի նաև, որ անհրաժեշտ է հատուկ աշխատանք տանել երիտասարդության մեջ և կազմակերպել կոմունիստական երիտասարդական միության բջիջ։ Ապա նրանց տվի բերածս թռուցիկները՝ գյուղացիների մեջ տարածելու համար։ Ժողովը վերջանալուց հետո բոլորին հրաժեշտ տվի և գնացի Հայկական Գյառգյառ։

Երբ գյուղ հասա, արդեն աղջամուղջ էր իջել։ Օրվա այդ ժամին սովորաբար գյուղի տղամարդիկ հավաքվում էին խճուղու վրա գտնվող կոոպերատիվ խանութի առաջ և որը գերաններին, որը քարերին, որը խանութի առջև դրված նստարանին նստած, որն էլ ոտի վրա կանգնած զրուցում էին օրվա անց ու դարձից։ Այդտեղ էլ ես հանդիպեցի Սուրենին ու Պարգևին։ Նրանք ինձ հայտնեցին, որ արդեն գյուղի երիտասարդներից մի քանիսի հետ խոսել են, և կազմակերպության մեջ մտնել ցանկացողներ կան։ Պայմանավորվեցինք նոր ընկերների հետ հանդիպել հետևյալ օրը, Դվալի լեռնանցքի մոտ, անտառում։

Հետևյալ օրը կեսօրից հետո պայմանավորված ժամին մենք երկու առանձին խմբերով ուղղվեցինք դեպի անտառ, որպես թե զբոսանքի ենք գնում։ Դվալի լեռնանցքի ստորոտում, կողմնակի հայացքից պաշտպանված ու կանաչ ձորակում նստեցինք ու սկսեցինք մեր կազմակերպական ժողովը։ Ես պատմեցի կոմունիստական երիտասարդական միության նպատակների, խնդիրների և կազմակերպական սկզբունքների մասին, որից հետո մտքերի փոխանակություն ունեցանք ընդհատակյա աշխատանքի կոնկրետ ձևերի ու մեթոդների մասին։ Պայմանավորվեցինք, որ նրանք պարբերաբար կապ են պահպանելու ինձ հետ, առանձին ընկերներ ուղարկելով Թիֆլիս։ Սրանով էլ ժողովն ավարտեցինք, ես նրանց հայերեն թռուցիկներ տվի՝ գյուղացիների մեջ տարածելու համար, և արդեն երեկո էր, երբ վերադարձանք գյուղ։

---



digitised by A.R.A.R.@

# ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ԵՐԿԵՐԻ ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐԸ

ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալը տպագրության է պատրաստում Կոմունիստական պարտիայի ականավոր գործիչ Ստեփան Շահումյանի Երկերի ժողովածուն՝ երեք հատորով։ 1955 թվականին լույս է տեսել առաջին հատորը, որն ընդգրկում է մեծ ռևոլյուցիոների 1902—1907 թվականներին գրած աշխատությունները, հոդվածներն ու նամակագրությունը։ Տպագրության են պատրաստվում մյուս հատորները։

Ստ. Շահումյանի Երկերի հրատարակումը անհրաժեշտ և նշանակալից ձեռնարկում է. դրա պահանջը վաղուց էր զգացվում։

Առաջին հատորում զետեղված նյութերը իրենց բնույթով, ընդգրկված հարցերով բազմազան են։ Ստ. Շահումյանի դիմանկարը՝ որպես լայն ընդգրկումներ ունեցող պարտիական տաղանդավոր տեսաբան ու հրապարակախոս, հիմնական գծերով երևում է արդեն այս հատորի նյութերից։ Նրա աշխատությունները, հոդվածները լուրջ նշանակություն են ունեցել մարքսիստական-լենինյան գաղափարների մասսայականացման, Անդրկովկասի և Հայաստանի պայմաններում նրանց ստեղծագործական զարգացման գործում։

Առաջին հատորում Շահումյանի տեսական աշխատություններից զետեղված են «Դասակարգերը ժամանակակից եվրոպական հասարակության մեջ», «Էվոլյուցիոնիզմն ու ռևոլյուցիոնիզմը հասարակական գիտության մեջ», «Ազգային հարցը և սոցիալ-դեմոկրատիան»։

«Դասակարգերը ժամանակակից եվրոպական հասարակության մեջ» աշխատությունում համառոտակի տալով ժամանակակից բուրժուական հասարակության դասակարգային կազմը, կանգ է առնում հատկապես բանվոր դասակարգի վրա։ Ըստ որում Ստ. Շահումյանը նախազգուշացնում է, որ հոդվածում չի շոշափելու այն բոլոր խնդիրները, որ կապված են այդ դասակարգի պատմական միսիայի, նրա դասակարգային կռվի և այդ կռիվը ղեկավարող քաղաքական պարտիայի հետ։

Աշխատությունում բնորոշելով բանվոր դասակարգի առաջացման պատմական ու հասարակական նախադրյալները՝ Ստ. Շահումյանը հարուստ փաստերով ու վիճակագրական տվյալներով բնութագրում է պրոլետարիատի տնտեսական ծանր դրությունը։ Այդ վիճակի բնական ու անխուսափելի հետևանքն է,— նշում է Շահումյանը,— մահացությունների բարձր տոկոսը, ալկոհոլականության, ոճրագործությունների և պրոստիտուցիայի հարաճուն զարգացումը, որը ահագին ավերումներ է գործում բանվոր դասակարգի մեջ։ Բուրժուական գիտնականները աշխատում են այդ երևույթները բացատրել մարդկանց բիոլոգիական հատկություններով։ Մինչդեռ «այդ երևույթները, իբրև լայն, մասսայական երևույթներ, ոչ թե բիոլոգիական, այլ, ընդհակառակը սոցիոլոգիական կատեգորիաներ են, որ նրանք անմիջական արդյունք են տիրող աննորմալ ու անազորույն սոցիալական կարգերի, ազգաբնակության անապահով, թշվառ տնտեսական վիճակի» (Ստ. Շահումյան, «Երկեր», հատ. I, էջ 79)*։

Ստ. Շահումյանը հանդես է գալիս որպես հասարակական երևույթները հետազոտող մարքսիստ գիտնական։ Զինված հասարակության զարգացման օրենքների գիտական ուսմունքով՝ նա ցույց է տալիս, որ ֆեոդալական արտադրական հարաբերություններն սկսեցին արգելակել արտադրողական ուժերի զարգացումը։ «Սկսվեց սոցիալական ռևոլյուցիայի դարաշրջանը» — հասունացած ու ամրապնդված նոր «տնտեսական ստրուկտուրը» ժայթքեց հրաբուխի նման և օդը ցնդեցրեց իր վրա ծանրացած ու կապարի նման իրան ճնշող հին, ֆեոդալական «իրավական վերնաշենքը»։ Ծնունդ առավ ժամանակակից բուրժուական պետությունը, որը միանգամայն փոխեց իրերի դրությունը» (էջ 65)։

Նույնը տեղի է ունենալու և բուրժուական հասարակության հետ, նրան փոխարինելու է գալու նոր հասարակարգը — սոցիալիստականը, որի ստեղծողն ու կրողը հանդիսանում է պրոլետարիատը։ Վերլուծելով բուրժուական հասարակության մեծամասնությունը կազմող սեփականազուրկ ու չքավոր դասակարգի սոսկալի

* Այսուհետ կտրվեն միայն էջերը։



վիճակը՝ Շահումյանը գրում է. «Այո, սոսկալի է այդ վիճակը, բայց բարեբախտաբար, պետք է ավելացնենք մենք, հուսահատական չէ։ Պատմությունը երբեք տեղիք և իրավունք չի տալիս իրան ճշմարիտ ըմբռնողներին, հոռետես լինելու իր վերաբերմամբ։ Ստեղծելով իր զարգացման ընթացքում որոշ անհրաժեշտ ու անխուսափելի չարիքներ, նա միևնույն ժամանակ կռում-կոփում է այն զենքերը, որ պետք է հարվածեն ու վերացնեն այդ չարիքները, ճանապարհ հարթելով մարդկության ազատ ու հաղթական առաջադիմության համար» (էջ 87)։

Երկրորդ տեսական հոդվածը նվիրված է էվոլյուցիոնիզմի և ռևոլյուցիոնիզմի փոխհարաբերության ըմբռնմանը հասարակական գիտության մեջ։ Այս աշխատությունը ներքին իմաստով սերտորեն կապվում է առաջին հոդվածի հետ և կարծես ներկայացնում է նրա յուրահատուկ շարունակությունը։ Քննադատելով այդ հարցի մասին եղած անարխիստական և ռեֆորմիստական ըմբռնումները, ինչպես և բիոլոգիական օրենքները մեխանիկորեն հասարակության մեջ փոխադրելու փորձերը, ռևոլյուցիոնիզմը էվոլյուցիոնիզմին հակադրելու հակագիտական սկզբունքները՝ Շահումյանը գտնում է, որ այն հարցը, թե էվոլյուցիոնիզմը ինչպես է հարաբերվում ռևոլյուցիոնիզմին, «ոչ այլ ինչ է, եթե ոչ «բազիսի» և «վերնաշենքի» հարց,— մի հարց, որը երկարորեն ծեծվել է մարքսիստական գրականության մեջ» (էջ 96)։

Այս առնչությամբ նա սեղմ շարադրում է մարքսիստական սոցիոլոգիական սիստեմի էությունը, բացատրում է «բազիսի» և «վերնաշենքի» փոխհարաբերության մարքսիստական ուսմունքը։

Բնութագրելով դասակարգերը և դասակարգային պայքարը, բացահայտելով պետության դերը որպես «դասակարգային տիրապետության կազմակերպություն», Շահումյանը պատմությունից փաստեր է բերում իր թեզերը հաստատելու համար և եզրափակում է՝ այդ բոլորը առնչելով ռուսական առաջին ռևոլյուցիայի խնդիրների հետ. «Թե՛ արյունից ու բռնությունից վախեցող ֆիլիստերական «էվոլյուցիոնիզմը», թե՛ ուտոպիստական «ռևոլյուցիոնիզմը», որ հաշվի չի առնում էվոլյուցիայի երկաթե օրենքները, ռևոլյուցիոն մոմենտներում հավասարապես անհեթեթ, հավասարապես վնասակար են» (էջ 103)։ Նա դատապարտում է ոչ միայն նրանց, ովքեր փորձում են կանգնեցնել ռուսական ռևոլյուցիայի փոթորկալից երթը և ձգտում են «խաղաղ բարենորոգումների վերից», այլև նրանց, ովքեր անմիջապես սոցիալիստական ռևոլյուցիայի կոչ են անում։ Մինչդեռ երկրի տնտեսական զարգացումը,— գրում է Շահումյանը,— հնարավոր է դարձնում մեզ մոտ միայն բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան, քանի որ մենք դեռ չենք ազատվել ֆեոդալիզմի ծանր շղթաներից։ Դա ռևոլյուցիայի առաջին էտապն էր։

Ստ. Շահումյանի տեսական հոդվածների կարևորագույն առանձնահատկությունը, հարցերի խոր և սկզբունքային լուսաբանության հետ միասին, այն է, որ տեսական հարցերը նա սերտորեն շաղկապում է ռևոլյուցիոն շարժման պրակտիկայի և բանվոր դասակարգի ազատագրական պայքարի անմիջական խնդիրների հետ։

Այս տեսակետից չափազանց ուշագրավ են նաև նրա աշխատությունները ազգային հարցի մասին։ Հայտնի է, որ Շահումյանը ազգային հարցի մարքսիստական տեսության լավագույն գիտակներից էր. Վ. Ի. Լենինը բարձր էր գնահատում նրա կարծիքը և աշխույժ նամակագրություն ուներ Շահումյանի հետ պարտիայի ազգային քաղաքականության ու ծրագրային հարցերի շուրջ։

Ներկա հատորում զետեղված է Շահումյանի առաջին ծավալուն աշխատությունը՝ «Ազգային հարցը և սոցիալ-դեմոկրատիան» վերնագրով, որը սկզբում տպագրվել է 1906 թվականին «Կայծ» թերթում և նույն թվականին էլ հրատարակվել է առանձին գրքույկով։ Այդ աշխատությունը հիշյալ հարցին նվիրված առաջին մարքսիստական աշխատություններից է։ Մերժելով ազգության բնորոշման նացիոնալիստական կոնցեպցիաները՝ Շահումյանը տալիս է ազգության մարքսիստական բնորոշումը և լայնորեն մեկնաբանում է պարտիայի ազգային ծրագիրը։

«Ազգային հարցը և սոցիալ-դեմոկրատիան» չափազանց կարևոր տեսական ներդրում է մարքսիստական գրականության մեջ, որը զինել է հայ բանվորներին և ընդհանրապես ռևոլյուցիոն ուժերին՝ բուրժուական նացիոնալիզմի և շովինիզմի դեմ պայքարելու համար, հանուն ժողովուրդների ինտերնացիոնալ համերաշխության ու եղբայրական կապերի ամրապնդման։ Հստակ դիրքորոշում ունենալով ազգային հարցում և պաշտպանելով պարտիայի լենինյան ազգային քաղաքականության սկզբունքները՝ Շահումյանը ազգային հարցը դիտում էր որպես պրոլետարական ռևոլյուցիայի բաղկացուցիչ մաս և գտնում էր, որ այդ հարցը իր վերջնական լուծումը կստանա միայն պրոլետարական ռևոլյուցիայի հաղթանակով։ Նա անողոք քննադատության է ենթարկում Անդրկովկասի և մասնավորապես հայ իրականության մեջ գործող նացիոնալիստական պարտիաների ու կազմակերպությունների գործունեությունը, նրանց տեսական դրույթներն ու պրակտիկ քաղաքականությունը։ Շահումյանը այն ճիշտ կարծիքին

digitised by A.R.A.R.@

էր, որ Անդրկովկասի նման բազմազգ երկրամասում ռևոլյուցիայի ամենաոխերիմ թշնամին նացիոնալիզմն է, որը բանվորներին ու աշխատավորներին բաժանում է ըստ ազգությունների և ջլատում է նրանց ուժերը ընդհանուր թշնամու՝ միապետության ու կապիտալիզմի դեմ մղվող ռևոլյուցիոն պայքարում։ Այս տեսակետից հասկանալի է, թե ինչու Շահումյանը, ինչպես և մյուս բոլշևիկները, այնքան անողոք պայքար են մղել հայ իրականության մեջ գործող նացիոնալիստական պարտիաների ու կազմակերպությունների՝ դաշնակների, հնչակյանների, «հայ սոցիալ-դեմոկրատական բանվորական կազմակերպության» (սպեցիֆիկների) դեմ։

Հատորում զետեղված մի շարք հոդվածներ նվիրված են այդ կազմակերպությունների տեսության ու պրակտիկայի քննադատությանը։ Հիշենք, «Երևանից (Հայ իրականությունից)», «Դաշնակցությունը — «Պրոլետարիատի ղեկավար»», «Առաջիկա ընտրությունները Թիֆլիսում և «դաշնակցություն» պարտիան» և այլ հոդվածները, որոնցում Շահումյանը անողոք կերպով մերկացնում է նացիոնալիստական պարտիաների և հատկապես նրանցից ամենառեակցիոն՝ հայ բուրժուազիայի հարազատ զավակի, նրա շահերի լավագույն արտահայտչի ու պաշտպանի՝ դաշնակցության գործունեությունը։

Ռուսական առաջին ռևոլյուցիայի թողած ազդեցության տակ ցույց է տալիս, որ այդ պարտիան ամեն կերպ աշխատում է այլ արտաքինով հանդես գալ։ Հայ բնակչության աչքում ամեն մի վստահություն վերջնականապես չկորցնելու, իր բուրժուական էությունը չմերկացնելու համար նա «թյուրքահայ հարցի» հետ միասին սկսում է ընդունել նաև «ռուսահայ հարցը», անամոթաբար իրեն հայտարարում է «պրոլետարիատի ղեկավար» և նույնիսկ, «սոցիալիստական պարտիա» և այլն։ Այս մանյովրների իմաստը պարզ է. նա մի քայլ արեց դեպի առաջ, արթնացող ժողովրդի ետևից միայն այն նպատակով, որպեսզի ետ պահի նրան, որպեսզի շարժմանը հնարավորություն չտա առաջ գնալու այդ պարտիայի իդեալներից հեռու։ Հանձինս դաշնակցականների, «մեռածները գնում էին, որպեսզի բռնեն կենդանիներին»։ Բայց այդ մետամորֆոզները, մաշկի ու գույնի այդ արտաքին փոփոխությունները բնավ չեն ազդում այդ պարտիայի նացիոնալիստական ռեակցիոն էության վրա։ Այդ պարտիայի գործունեությունը մեր աչքերի առաջ է,— շարունակում է նա,— և ներկայումս նա թերևս ավելի բուրժուական է, թե՛ նացիոնալիստական, թե՛ ռեակցիոն, քան երբևիցե։

Մերկացնելով դաշնակցություն պարտիայի բուրժուական և նացիոնալիստական էությունը, Շահումյանը միաժամանակ բնութագրում է «հնչակյանների» գործունեությունը։ «Հայ իրականությունից» հոդվածում Շահումյանը նշում է, որ «Դրոշակի» և «Հնչակի» պարտիական կազմակերպությունները հոծ ցանցով պատել են հայկական ամենախուլ գյուղերը և ամենուրեք հրահրում են «իրենց համար այնքան ձեռնտու շովինիստական զգացմունքը»։ Բայց ի տարբերություն «դաշնակցության»՝ «Հնչակի» մի քանի կազմակերպություններ,— գրում էր նա,— համակրանք են տածում դեպի մեզ, սոցիալ-դեմոկրատներս և տեղ-տեղ տարածում են մեր գրականությունը։ Հիրավի այդ պարտիայի աջ ձեռքը չգիտե, թե ինչ է անում ձախ ձեռքը։

«Հնչակյան» պարտիայի մի քանի կազմակերպությունների այդ հակումը դեպի սոցիալ-դեմոկրատիան բնավ չի փոխում պարտիայի, որպես ամբողջության, քաղաքական ու իդեոլոգիական դիմանկարը, որպես մանր բուրժուական և նացիոնալիստական։ Այս մասին Շահումյանը խոսել է և այլ առիթներով. «Վպերյոդ» լենինյան թերթում գրախոսելով հնչակյանների «Ապագա» թերթը, Շահումյանը տվել է այդ պարտիայի, որպես ամբողջության, լիակատար բնութագիրը, որ այսօր էլ պահպանել է իր ամբողջ նշանակությունը։

Պետք է ցավել, որ այդ հոդվածի պատկանելիությունը ուշ է հայտաբերվել և տեղ չի գտել ներկա հատորում։ Տեղ չի գտել նաև 1906 թվականին Լենինին Շահումյանի գրած նամակը, որ անցյալ տարի հրապարակվեց «Պարտիական կյանք» ամսագրում։ Այս փաստերը ցույց են տալիս, որ Շահումյանի ժառանգության հետագա ուսումնասիրությունը չափազանց կարևոր է և նոր պրպտումներն ու ուսումնասիրությունները դեռ շատ նյութեր կհայտաբերեն։

Ստ. Շահումյանը քննադատելով նացիոնալիստական կազմակերպությունների ու պարտիաների գործունեությունը, միաժամանակ անողոք պայքար է մղել պարտիայի ներսում եղած օպորտունիստական տարրերի, մենշևիկների, լիկվիդատորների, օտզովիստների դեմ, բացահայտել նրանց հայացքների վնասակարությունը ռևոլյուցիայի գործի համար։ Այս տեսակետից ուշագրավ են Շահումյանի «ՌՍԴԲՊ վերջին համագումարը», «Պլեխանովի նամակի առթիվ», «Ներկա մոմենտը», «Գյուղացիական շարժումը», և այլ հոդվածները։ Շահումյանը մերժելով մենշևիկների տեսակետը ռևոլյուցիայի շարժիչ ուժերի մասին, իր մի շարք հոդվածներում լուսաբանում ու պաշտպանում է ռուսական առաջին ռևոլյուցիայում բոլշևիկների տակտիկական ու ստրատեգիական սկզբունքները։ Նա հետևողականորեն պաշտպանում է լենինյան հայացքները, համաձայն որի բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի ղեկավար ուժը, հեգեմոնը հանդիսանում է բանվոր դասակարգը։



Նշելով գյուղացիական շարժման և գյուղացիության զարթոնքի փաստը ռևոլյուցիայի տարիներին, Շահումյանը «Ներկա մոմենտը» հոդվածում գրում է, որ քաղաքների ռևոլյուցիոն պրոլետարիատը մինչև այժմ միայնակ է իր ահռելի կռվում բռնակալության դեմ. միակ դասը, որ կարող էր ընկեր լինել նրան այդ ահավոր կռվում, գյուղացիությունն էր, և պրոլետարիատը անհամբեր սպասում էր նրա արթնանալուն, այժմ նա արդեն արթնանում է և ձեռք է մեկնում իր հարազատ բարեկամ ու դաշնակից պրոլետարիատին։ Հետևելով Լենինին՝ Շահումյանը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի մեջ էր տեսնում ռևոլյուցիայի հաղթության գրավականը։

Շահումյանի բազմաթիվ հոդվածները, որոնք շոշափում են 1905 թվականի ռևոլյուցիայի հետ կապված հարցերը, կարող են դասվել բոլշևիկյան հրապարակախոսության փայլուն ստեղծագործությունների թվին։ Սեղմ ու հակիրճ, ծավալով փոքրիկ այդ հոդվածները շոշափում են բանվորական շարժման և ռևոլյուցիայի հետ կապված բազմաթիվ հարցեր, որոնք ստանում են իրենց հստակ ու բոլշևիկյան պարզաբանումը։ Այդ հոդվածները զինել են մասսաներին լենինիզմի գաղափարով և պայքարի կոչել բռնակալության և նրա գործակալների դեմ։ Համակված մարտական ու ռևոլյուցիոն պաթոսով՝ նրանք այսօր էլ կարդացվում են մեծ հետաքրքրությամբ, հիշեցնելով անցյալի հերոսական էջերը։



Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի ընկերները զգալի աշխատանք են կատարել հատորի նյութերը կազմելու գործում։ Հատկապես դրական է այն փաստը, որ մի շարք նոր նյութեր են զետեղված հատորում, որոնք առաջին անգամ են մտնում Ստ. Շահումյանի երկերի ժողովածուի մեջ։ Այդ նյութերից ուշագրավ են «Երիտասարդ դաշնակցականների պրոկլամացիան», «Մեր խնդիրները», «Մամուլի տեսություն» և այլն։ Բայց, ցավոք սրտի, պետք է նշել, որ հայտաբերված և հատորում զետեղված նյութերը բոլորը չեն, որ անտարակուսորեն պատկանում են իրեն՝ Շահումյանի գրչին։ Կազմողները թույլ են տվել առանձին խախտումներ։

Աշխատելով տալ ավելի շատ նոր, առաջներում ոչ հայտնի հոդվածներ, հատորը կազմողները առանձին դեպքերում վրիպել են։ Հատորի մեջ զետեղված է Շահումյանի մի ելույթի լրագրային շարադրանքը մենշևիկյան «Հոսանք» (1907 թիվ. 10 փետրվ.) թերթից, որը խեղաթյուրում է Շահումյանի իսկական հայացքները։

Խոսքը վերաբերում է «Պետական դումայի պատգամավորի ընտրությունը Թիֆլիսում» վերնագրով նյութին (էջ 301—304)։ Նույնիսկ վերնագիրը մտնում է իրենն։ Կազմողները չեն կարողացել համապատասխան վերնագիր գտնել ընտրական այդ ժողովում Շահումյանի ելույթի համար և թողել են ժողովի մասին լրագրային հաշվետվության ընդհանուր վերնագիրը։

Ստ. Շահումյանի այդ ելույթին արձագանքել են դաշնակցական «Ժամանակ» և մենշևիկյան «Հոսանք» թերթերը, տպագրելով այդ ելույթի իրենց սեփական շարադրանքները՝ իրենց կոմենտարներով։ Ըստ որում «Ժամանակը» Շահումյանի ելույթի շարադրանքը տպագրել է ավելի առաջ՝ 1907 թվականի փետրվարի 8-ին (№ 30), իսկ «Հոսանքը» տպագրել է երկու օր հետո՝ փետրվարի 10-ին։ Երկու թերթերի այդ շարադրանքների մեջ Շահումյանին է վերագրված մի միտք, որից նա հրաժարվել է և որի դեմ նա բողոքել է։ Այսպես, օրինակ, «Թիֆլիսի պատվիրակների ժողովը» հաշվետվության մեջ, «Ժամանակ» թերթը, զրպարտելով Շահումյանին, պաշտպանել է այն միտքը, թե իբր Շահումյանն իր ելույթում ասել է, որ դաշնակցությունն ավելի «հեղափոխական է», ավելի «ծայրահեղ» կուսակցություն է, քան մենշևիկները, որ մենշևիկները բոլորովին զուրկ են հեղափոխականությունից։

Շահումյանը, ծանոթանալով իր ելույթի այդ աղավաղված շարադրանքին, նույն օրը շտապել է նամակ գրել և բողոքել «Ժամանակ» թերթի այդ հերյուրանքների դեմ։ Նամակը նա հանձնել է «Հոսանք» թերթին, որը տպագրել է նախ Շահումյանի ելույթի իր շարադրանքը («Հոսանք», № 59, 10 փետրվարի 1907 թ.), իսկ մի համար հետո տպագրել է Շահումյանի «Նամակ խմբագրության» բողոքը։ Այդ նամակում Շահումյանը գրել է.

««Ժամանակի» այսօրվա համարում հայտարարված է, իբր թե ես ասել եմ պատվիրակների ժողովում, որ Դաշնակցությունը ավելի հեղափոխական կուսակցություն է, քան մեր «փոքրամասնական» ֆրակցիան։

Քա՜վ լիցի, պարոնե՛ր։ Մեր «փոքրամասնականները» շատ են հեռացել (այդպես է գոնե «մեծամասնականների» կարծիքը) միջազգային հեղափոխական սոց.-դեմոկրատիայի տակտիկական սկզբունքներից, բայց և այնպես «դաշնակցությունը» և սոցիալ-դեմոկրատիան, նույնիսկ աջակողմյան սոցիալ-դեմոկրատիան, մնում են անհամեմատելի մեծություններ։ Ճիշտ է, վերոհիշյալ միտքը վերագրեց ինձ ժողովում մեր ընկ. Արշ. Ջափարիձեն (հայտնի մենշևիկ—

digitised by A.R.A.R.@

Ա. Ո.), բայց իզուր է նրա այդ դիտումնավոր, դեմագոգիական... աղավաղումը կրկնում «Ժամանակը» և հարմարեցնում իմ ասածները Ջափարիձեի պատասխանին» («Հոսանք» № 60, 11 փետրվարի, 1907 թ.)։

Մենշևիկների միտումնավոր և դեմագոգիկ այդ հայտարարությունը դաշնակցականները շտապել են մասսայականացնել թերթի միջոցով։ Նույն ձևով է վարվել և մենշևիկյան «Հոսանք» թերթը՝ Շահումյանի ելույթի հաշվետվության մեջ, պնդելով թե իբր Շահումյանը մենշևիկների հասցեին ասել է. «Այո՛, մինչև ո՛ւր եք դուք իջել, ընկե՛ր «փոքրամասնականներ», որ մինչև իսկ դաշնակցականներն են ձեզանից ավելի հեղափոխական հայտնվում, որ մինչև անգամ նրանք էլ ձեզ պակաս հեղափոխականներ են համարում» (տես նաև Շահումյան, Երկեր, հատոր 1, էջ 301)։

Այսպիսով, Շահումյանի ելույթի դաշնակցական թերթի և մենշևիկյան թերթի շարադրանքի մեջ լիակատար համերաշխություն գոյություն ունի։ Ավելին, երբ «Հոսանքը» տպագրեց Շահումյանի նամակ-բողոքը, թերթի խմբագրությունը հատուկ պատասխան տպագրեց Շահումյանի դեմ՝ հաստատելով դաշնակցական «Ժամանակ» թերթի և հենց իրենց՝ մենշևիկների զրպարտիչ հայտարարությունը Շահումյանի հասցեին (տես. «Հոսանք» № 61, 13 փետրվարի, 1907 թ.)։

Ինչպես կարելի է տեսնել, Շահումյանի ելույթը աղավաղված ու կեղծված են շարադրել ոչ միայն դաշնակցական «Ժամանակ» թերթը, որի դեմ բողոքել է Շահումյանը, այլև մենշևիկյան «Հոսանք»-ը։

Շահումյանի երկերի առաջին հատորի նյութերը կազմող ընկերները հավանաբար լավ չիմանալով այս ամբողջ պատմությունը, տեղ են տվել նրա երկերում մի նյութի՝ «Պետական դումայի պատգամավորի ընտրությունը Թիֆլիսում» ընդհանուր խորագրով լրագրական հաշվետվությունը՝ արտատպված մենշևիկյան «Հոսանք» թերթից, որը աղավաղել է Շահումյանի ելույթի բուն իմաստը, որի մասին նա շոշափել է «Նամակ խմբագրության» միջոցով։

Տարօրինակ է, որ հատորը կազմող ընկերները Շահումյանի այդ կարևոր նամակը չեն զետեղել նրա երկերի ժողովածուի մեջ, իսկ դրա փոխարեն՝ տպագրել են ելույթի աղավաղված շարադրանքը և հարկ չեն համարել նույնիսկ ծանոթագրությունների մեջ քաղվածքաբար օգտագործել նամակը, որպեսզի ընթերցողները վերապահությամբ մոտենան այդ «լրագրական հաշվետվությանը»։

Մեր կարծիքով առաջին հատորի մեջ, թեկուզ և առանձին բաժնի կամ հավելվածի ձևով հարկավոր էր զետեղել երիտասարդ Շահումյանի մի շարք արժեքավոր նամակներն ու հոդվածները, որոնք հրատարակվել են ռուսերեն և հայերեն «Գրականության մասին» ժողովածուում (1947—1948 թթ. հրատարակությունները) և «Литературно - критические статьи» (Москва, 1952—1954 г.г.)։

Իսկ ինչ վերաբերում է գիտական ապարատին, ապա պետք էր սպասել շատ ավելի լավը։ Հատորը բացվում է ընդարձակ առաջաբանով, որը Շահումյանի կյանքի ու գործունեության սեղմ ակնարկն է։ Հատորի վերջում տրված են «Ս. Գ. Շահումյանի կյանքի ու գործունեության տարեթվերը (1878—1907 թթ. մայիս)» և «Ծանոթագրությունները»։ Այսպիսի գիտական ապարատի հետևանքով հանդիպում ենք բազմաթիվ կրկնությունների։ Հաճախ միևնույն միտքը կրկնվում է երեք անգամ՝ առաջաբանում, տարեգրության և ծանոթագրությունների մեջ։

«Ինստիտուտի կողմից» առաջաբանում, ի միջի այլոց, ասված է.

«Ներկա հրատարակության առաջին հատորը լիովին չի սպառում Ստ. Շահումյանի 1902 թվականից մինչև 1907 թվականի հունիսը գրած բոլոր երկերը» (էջ 6)։ Այս տողերը կարդալով՝ ընթերցողը հարց է տալիս. ինչո՞ւ այդ հոդվածները տեղ չեն գտել Շահումյանի երկերի ժողովածուի մեջ և որո՞նք են դրանք։

«Տարեգրության» մեջ խոսվում է Շահումյանի 1906—1907 թթ. «Նամակ խմբագրության»-ների մասին, որպես նրա կյանքի կարևոր տարեթվեր։ Այնինչ, այդ նամակները անհասկանալի պատճառներով չեն մտցված հատորի մեջ։ Հատորում հիշված հայանի թերթերը ծանոթագրված են, իսկ մի շարք թերթեր՝ ոչ (էջ 112)։ Հատորի ռուսերեն վերնագրում չի հիշատակված, որ առաջին հատորն է և այլն։ Այս դիտողություններն անհրաժեշտ են մյուս հատորներում նման սխալներ չկրկնելու համար։

Ամփոփենք։ Ստ. Շահումյանի աշխատությունները մեծ դեր են կատարել անցյալում մասսաների գաղափարական զինման և ռևոլյուցիայի թշնամիների մերկացման գործում և այսօր էլ պահպանել են իրենց այժմեական նշանակությունը։ Ստ. Շահումյանի գաղափարական ժառանգությունը համակված է լենինիզմի անաղարտ ու մեծ գաղափարներով։ Նա ճիշտ պատկերացում է տալիս հերոսական անցյալի մասին և զինում է մեր կադրերին մեծ պայքարի համար։

ԱՐՏ. ՈՍԿԵՐՉՅԱՆ

# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ՄԱՄՈՒԼԻ ՄԱՍԻՆ

Մամուլի օրվա առթիվ «Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը ստացել է մի շարք նամակներ, ուր նրանց հեղինակները կոնկրետ դիտողություններ և առաջարկություններ են անում ռեսպուբլիկական թերթերի ու ամսագրերի, քաղաքային և շրջանային թերթերի, հրատարակչությունների և ռադիոհաղորդումների աշխատանքի մասին։ Ստորև տպագրում ենք այդ նամակներից մի քանիսը։

## ՑԱՆԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԵՎ ԱՌԱՋԱՐԿՆԵՐ

Մեր ռեսպուբլիկական թերթերը հնարավորություն ունեն և պետք է իրենց էջերում մեծ տեղ տան շարքային մարդկանց՝ բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի նյութերին։ Հաճելի է լսել ժողովրդական բարիք ստեղծող մարդկանց խոսքը մամուլում։ Ցանկալի է հաճախակի մեր թերթերում լուսաբանել արտադրական, շինարարական, կոլտնտեսային և հիմնարկային պատի թերթերի աշխատանքի փորձը, ինչպես նաև կազմակերպել պատի թերթերի լավագույն հոդվածների արտատպությունը քաղաքային ու շրջանային թերթերում։

Ռեսպուբլիկական մի շարք ամսագրերում, ինչպիսիք են «Լենինյան ուղիով», «Սովետական գրականություն», չեն լուսաբանվում գրականագիտական ու արվեստի տեսական հանգույցային հարցերը, ինչպես նաև չեն տպագրվում հայ ժողովրդի պատմության սովետական շրջանի վերաբերյալ նյութեր։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների համար օգտակար կլիներ, եթե «Լենինյան ուղիով» ամսագիրն իր էջերում հաճախակի լուսաբաներ պարտիական-կազմակերպական աշխատանքի ակտուալ հարցերը, ինչպես նաև պարտիական կազմակերպությունների աշխատանքի փորձը, արտասահմանյան կոմունիստական և բանվորական պարտիաների գործունեությունը, սիստեմատիկաբար նյութեր զետեղեր արդի միջազգային դրության հարցերի մասին, ինչպես նաև կոնսուլտացիոն հոդվածներ տպագրեր ՍՄԿՊ պատմության առանձին էտապների վերաբերյալ։

Ցանկալի է, որ «Սովետական մանկավարժ» ամսագիրը իր շուրջը համախմբի ավելի մեծ թվով գյուղական ուսուցիչների և իր էջերում տպագրի մանկավարժական հարուստ փորձ ունեցող ուսուցիչների մեթոդական հոդվածները։

Մի քանի խոսք շրջանային թերթերի մասին։ Նրանք իրենց ներկա ծավալով ի վիճակի չեն բազմակողմանիորեն և խոր լուսաբանելու տեղական կյանքը։ Թվում է, որ ինչպես մեր շրջանի, այնպես էլ մյուս շրջանների թերթերը խիստ կարիք են զգում ծավալի մեծացման, պարբերականության ավելացման։ Այնուհետև, շրջանային թերթերում վատ է իլյուստրացիան. դրա պատճառն այն է, որ ռեսպուբլիկայում չկա մի կազմակերպություն, որը պատասխանատու լինի շրջանային թերթերին անհրաժեշտ կլիշաներ մատակարարելու հարցով։ Կարծում ենք, որ հնարավոր կլինի թեկուզ Հայաստանի հեռագրական գործակալությանը կից ստեղծել կլիշե բյուրո, որը բավարարեր շրջանային թերթերի կարիքները։ Պետք է լուրջ ուշադրություն դարձնել խմբագրական աշխատողների որակավորման վրա։ Նրանց համար հաճախակի պետք է կազմակերպել սեմինարներ։ Լավ կլիներ փորձի փոխանակման նպատակով մեր շրջանային թերթերի աշխատողներին երբեմն գործուղել ինչպես ռեսպուբլիկայի, այնպես էլ եղբայրական ռեսպուբլիկաների շրջանային առաջավոր թերթերի խմբագրությունները։

Իմ կարծիքով դեռևս անբավարար չափով է հայերեն թարգմանվում և հրատարակվում ՍՍՌՄ ժողովուրդների գեղարվեստական հարուստ գրականությունը։ Նույնը կարելի է ասել նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների գրականության թարգմանության և հրատարա-

digitised by A.R.A.R.@

կության մասին: Լավ կլիներ, որ ռեսպուբլիկական հրատարակչությունները զբաղվեին միջազգային մրցանակների արժանացած գրողների և հասարակական գործիչների երկերն ու աշխատությունները թարգմանելու և հրատարակելու գործով:

Անհրաժեշտություն է զգացվում թարգմանել և հրատարակել աշխարհի ժողովուրդների լավագույն գրողների, մաթեմատիկոսների, ֆիզիկոսների, բնագետների, մանկավարժների աշխատությունները: Ցանկալի կլիներ ավելի մեծ ուշադրություն դարձնել հայ կլասիկ գրողների երկերի վերահրատարակմանը: Անհրաժեշտ է լավացնել մանկա-պատանեկական գրականության ձևավորումը, գրքերը տպագրել լավորակ թղթի վրա: Հաշվի առնելով մեր աշակերտության պահանջը՝ հրատարակչությունները պետք է ձեռնամուխ լինեն դպրոցական պիեսների հրատարակմանը:

Հ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

ՀԿՊ Ալխտայի շրջկոմի քարտուղար

## ՏԵԽՆԻԿԱՆ ՄԱՍՍԱՆԵՐԻՆ

Արդյունաբերության ու շինարարության կառավարման կազմակերպումն էլ ավելի կատարելագործելու մասին ընկ. Խրուշչևի զեկուցման թեզիսները նոր, ավելի լայնածավալ հեռանկարներ են բաց անում մեր մամուլի և ռադիոհաղորդումների հետագա գործունեության համար:

Տնտեսական նախագծված շրջանների կազմակերպումը, գերատեսչական արգելակների վերացումը, ռեսպուբլիկաների իրավունքների խիստ մեծացումը, հիմնարկ-ձեռնարկությունների տնտեսավարների իրավունքների լայնացումը և այլն, այս ամենը նոր պահանջներ են դնում մեր մամուլի առջև, անհրաժեշտ են դարձնում մամուլի ու ռադիոհաղորդումների աշխատանքները բարձրացնել նոր խնդիրների մակարդակին:

Հայտնի է, որ ռեսպուբլիկայի մի շարք խոշոր գործարաններ ունեն իրենց բազմատիրաժ թերթերը (Ս. Մ. Կիրովի անվան գործարան, «Կանազ», Հայէլեկտրո գործարան, Տեքստիլ կոմբինատ, Քաջարանի կոմբինատ և այլն): Այդ թերթերը լուսաբանում են միայն և միմիայն վերոհիշյալ ձեռնարկությունների ներքին կյանքը, բացահայտում ու խարազանում նրանց աշխատանքի թերությունները և հազվադեպ միայն զետեղում են ճյուղային՝ միջգործարանային նշանակություն ունեցող առանձին հոդվածներ: Քանի որ այդ թերթերը չեն տարածվում մյուս համանուն հիմնարկ-ձեռնարկություններում, ապա նույնիսկ ճյուղային նշանակություն ունեցող հոդվածներն էլ իրենց նպատակին չեն հասնում: Մեր կարծիքով, քանի որ հիմա նախատեսվում է կազմակերպել մասնագիտացված ձեռնարկությունների վարչություններ, լավ կլիներ առանձին ձեռնարկությունների բազմատիրաժների փոխարեն ստեղծել մասնագիտացված վարչությունների տպագիր օրգաններ՝ նույն սխեմի բոլոր ձեռնարկությունների համար: Օրինակ՝ Քիմիական արդյունաբերության վարչությունը կարող է հրատարակել «Հայաստանի քիմիկ» բազմատիրաժ թերթը և այլն:

Մեր կարծիքով այդ թերթերը պետք է լուսաբանեն ոչ միայն առանձին գործարանների ու հիմնարկների կյանքը, այլև համընդհանուր բնույթի հարցերը, ասենք՝ աշխատանքի կազմակերպման ու աշխատավարձի, նորմաների ու նորմավորման, հումույթի, օժանդակ նյութերի և էներգետիկայի ծախսման գործակիցների հարցերը, առաջավորների փորձի փոխանակումը և այլն:

Օգտվելով առիթից՝ նորից հարկ ենք համարում խոսել ռեսպուբլիկայում լուրջ տեխնիկական ամսագիր ունենալու հարցի անհետաձգելիության մասին: Համապատասխան մարմինները միշտ հավաստիացնում են, որ հարցը համարյա թե լուծված է, կամ արդեն լուծված է, սակայն այդ ամսագիրը դեռ չկա: Բանն այն է, որ էկոնոմիկական շրջանները կազմակերպելուց հետո տեխնիկական ամսագիր չունենալն արդեն անհանդուրժելի կլինի: Իհարկե, տեխնիկական ինտելիգենցիայի այդ բացը կարող է լրացնել ռուսերեն հրատարակվող տեխնիկական գրականության ու ամսագրերի միջոցով, բայց չէ՞ որ հարցը դրանով չի լուծվում. մեր գործարաններում աշխատողների ճնշող մեծամասնությունը ռուսերենին լավ չի տիրապետում, նրան հարկավոր է տեխնիկական գրականություն՝ մայրենի լեզվով:

Նպատակահարմար է, որ այդ ամսագիրը լինի ժողտնտխորհի և ՀԱՄԽ-ի օրգանը: Որոշ ընկերներ այն կարծիքին են, թե հարկավոր կլինի ունենալ մի քանի ամսագրեր: Սակայն, մեր կարծիքով, վարչությունների բազմատիրաժ թերթեր ունենալու պայմաններում մեկ ամսագիրն էլ միանգամայն բավական կլինի:



Մի քանի խոսք ռադիոհաղորդումների մասին: Կասկածից վեր է, որ ռադիոն վերջին ժամանակներս զգալիորեն լավացրել է իր աշխատանքները, բայց դեռ շատ ավելին պիտի սպասել:

Քանի որ այս մասին առիթ եղավ խոսելու, թող մեր դիկտորների համար վիրավորական չլինի, եթե մի քանի ընկերական դիտողություններ անենք: Ըստ երևույթին դիկտորները երբեմն նյութերն ու հոդվածներն ընթերցելիս կամ չեն կենտրոնանում կամ կարդում են մեխանիկորեն, հասարակությանը հրամցնելով նաև խմբագրական կարգի սխալները: Ես լեզվագետ չեմ, սակայն ճիշտը լսելու համար դրան կարիք էլ չկա. հաղորդումներում բառերի վրա շեշտերի ոչ ճիշտ դնելն ուղղակի ականջ է ծակում: Ռադիոյի խմբագիրների մեղքով, հաճախակի են շփոթվում մի շարք տեխնիկական հասկացողություններ՝ կիլովատտը—կիլովատտ-ժամի հետ, մակերեսը-ծավալի հետ, քաշը-տեսակարար կշռի հետ, տեսակարար ծախսը-ընդհանուր ծախսի հետ և այլն: Երբեմն աղավաղվում են փաստերն ու անունները:

Ժամանակն է, որ մենք այս «մանրուքների» վրա լուրջ ուշադրություն դարձնենք: Ռադիոն դարձել է մեր լայն մասսաների կուլտուրական, դաստիարակչական հիմնական գործոններից մեկը: Անցնելով հաղորդումների բուն էությանը, պետք է ասել, որ դրանցում չափազանց շատ են տրանսլյացիաները, գեղարվեստական-տեքստային հաղորդումները և շատ քիչ են տեխնիկային վերաբերող հաղորդումները, տընտեսական ու տնտեսագիտական հոդվածները:

Մեր կարծիքով ռադիոհաղորդումներում մեծ տեղ պետք է տրվի մեր հիմնարկ-ձեռնարկությունների և կոլեկտիվ տնտեսությունների աշխատանքներին, առաջավորների փորձին վերաբերող գիտականորեն հիմնավորված նյութերին:

Մեր ռեսպուբլիկայի ռադիոն շատ քիչ է հաղորդում այնպիսի նյութեր, որտեղ գիտականորեն վերլուծված լինեն ինչպես արդյունաբերական ձեռնարկությունների, այնպես էլ գյուղատնտեսության տեխնիկական-տնտեսական ցուցանիշները: Բերենք բազմաթիվ օրինակներից միայն մեկը. Կիրովականում արտադրված յուրաքանչյուր տոննա կարբիդը 70 ռ. էժան է, քան Երևանի ճիշտ նույնանման և նույն հզորության վառարաններից արտադրված կարբիդը: Լավ կլիներ, որ այս առթիվ հոդված հաղորդվեր և ցույց տրվեր կարբիդի արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղիները:

Վերջապես կցանկանայինք մի քանի խոսք էլ ասել մեր հրատարակչությունների մասին:

Այստեղ ևս մոռացության են տրված մեր հիմնարկ-ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, ՄՏ կայանների տնտեսական-տեխնիկական աշխատանքի բնագավառները: Ամենից առաջ հայերեն տեխնիկական գրքեր շատ քիչ են հրատարակվում: Երկրորդ, հրատարակվող տեխնիկական ձեռնարկները մեծ մասամբ կրում են տեսական բնույթ և քիչ են մատչելի աշխատավորության լայն խավերին:

Մի քանի տարի առաջ Հայպետհրատը ձեռնարկեց հանրամատչելի գիտա-տեխնիկական գրքույկների հրատարակումը: Այդ գրքույկները մեծ սիրով էին կարդում լայն մասսաները: Բայց վերջերս հրապարակի վրա քիչ են երևում նման գրքեր ու գրքույկներ: Արդի պայմաններում դրանք չափազանց անհրաժեշտ են, և Հայպետհրատը պետք է ձեռնամուխ լինի այդ գործին: Ցանկալի է մեծ մասամբ հրատարակել առաջավորների փորձին նվիրված գրքույկներ:

Ս. ԹԵՎՈՍՅԱՆ

Կիրովականի Քիմիական կոմբինատի դիրեկտոր

## ԱՎԵԼԻ ՄԵԾ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԲԱՆԳՅՈՒՂԹՂԹԱԿԻՑՆԵՐԻՆ

Ալավերդու շրջանային «Պղնձի ֆրոնտում» թերթն իր էջերում բացահայտում է մեր աշխատանքում եղած թերություններն ու սխալները, գովաբանում աշխատանքի մարդկանց հերոսական գործերը, խրախուսում նորարարներին, գյուտարարներին ու ռացիոնալիզատորներին:

Թերթում շատ նյութեր են տպագրվում արդյունաբերական ձեռնարկություններից, հանքահորներից: Ընթերցողը մտովին սլանում է գործարան, հանքահոր, մասնակցում աշխատանքային եռ ու զեռին, լսում հորատող մուրճի անդուլ շառաչը, ընթերցողն ինքն էլ է մտահոգվում, թե ինչու հանկարծ կտրվեց օդատար ռետինե խողովակը... Այդ հոդվածների ու թղթակցությունների հեղինակներից շատերը կոշտացած ձեռքերով շարքային բանվորներ են, վարպետներ, որոնց գրած տառերը թղթի վրա երբեմն շարված են ծուռումուռ, բայց գրված են պարզ, այնպիսի շնչով ու անկեղծությամբ, որ խմբագիրները շատ անգամ նույնիսկ դըժվարանում են թեկուզ մի բառը փոխել:

Թերթի էջերում ընթերցողը գտնում է իրեն հետաքրքրող շատ հարցերի պատասխանը: Պա-

digitised by A.R.A.R.@

*խատանքի են առաջ քաշվել պարտիական լավագույն կադրեր։*

*Թե՛ զեկուցողը, և թե՛ ելույթ ունեցողները նշեցին, որ այդ հաջողությունների հետ մեկտեղ դեռևս լուրջ թերություններ կան պարտշրջկոմների և սկզբնական կազմակերպությունների աշխատանքում՝ կոլտնտեսային արտադրության մեջ պարտիական ուժերի ճիշտ տեղաբաշխման գործում։ Այդպես է դրությունը հատկապես Կարմիրի, Վեդու, Իջևանի, Աղինի, Արտաշատի, Սիսիանի շրջաններում։*

*«Պարտիական կազմակերպությունների ղեկավարությունը կոմերիտական կազմակերպությունների նկատմամբ» հարցի մասին ինչպես զեկուցողը, այնպես էլ ելույթ ունեցողները նշեցին, որ չնայած ռեսպուբլիկայի կոմերիտական կազմակերպությունները պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ լուրջ աշխատանք են կատարել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, բայց և այնպես կոմերիտական կազմակերպությունների աշխատանքում դեռևս զգալի թերություններ կան։*

*Պարտիայի մի շարք քաղկոմ-շրջկոմներ մոտիկից չեն ղեկավարում կոմերիտական կազմակերպությունների աշխատանքը։ Բազմաթիվ կոմերիտական կազմակերպություններում տարիներով ժողով չի գումարվում, մի շարք կոլտնտեսություններում երիտասարդների որոշ մասը խուսափում է հանրօգուտ աշխատանքից, շատ տեղերում անուշադրության է մատնված երիտասարդության մեջ տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքները։*

*Թալինի, Աղինի, Արթիկի շրջաններում որոշ սկզբնական պարտիական կազմակերպություններ կոմերիտական կազմակերպություններին ղեկավարում են վաղուց դատապարտված մեթոդներով. իրենց ղեկավարությունը կոմերիտմիության նկատմամբ ապահովելու համար հատուկ մարդիկ են ամրացնում կոմերիտական կազմակերպություններին։ Թալինի շրջանի Ն. Արթիկ գյուղի և Նոյեմբերյանի ՄՏ կայանի կոմերիտական կազմակերպությունները 2 տարվա ընթացքում ոչ մի ժողով չեն գումարել, իսկ պարտիական աշխատողները հարկ չեն համարել զբաղվել այս հարցով։*

*Որպես թերություն նշվեց նաև, որ պարտիական և սովետական ղեկավար կադրերը զեկուցումներով և դասախոսություններով քիչ են հանդես գալիս երիտասարդության շրջանում, շատ քիչ են մասնակցում կոմերիտական ժողովներին և կոմերիտական կազմակերպությունների կողմից ձեռնարկվող միջոցառումներին։ Անբավարար աշխատանք է տարվում երիտասարդներից տնտեսական և սովետական ղեկավար աշխատանքներում առաջ քաշելու, լավագույն կոմերիտականներից պարտիայի շարքերը համալրելու ուղղությամբ։*

*Խորհրդակցության աշխատանքներն ամփոփեց ՀԿՊ Կենտկոմի քարտուղար ընկ. Բ. Սարկիսովը, որը մի շարք խնդիրներ դրեց խորհրդակցության մասնակիցների առջև և պահանջեց ՍՄԿՊ XX համագումարի որոշումների ոգով բարելավել պարտիական-կազմակերպական աշխատանքները, կատարելագործել պարտիական աշխատանքի մեթոդներն ու ձևերը և ճիշտ զուգակցել պարտիական աշխատանքը տնտեսականի հետ։*

*Խորհրդակցության մասնակիցները լսեցին «Արդյունաբերության ու շինարարության կառավարման կազմակերպումն էլ ավելի կատարելագործելու մասին» Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի նախագահի տեղակալ ընկ. Ս. Մովսիսյանի և «Միջազգային դրության մասին» ընկ. Ն. Գասպարովի զեկուցումները։*

---

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք,
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении. тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր),
ԲԱԲԱՅԱՆ Լ. Հ., ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ ՀՈՎՀ. Մ.,
ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ
Գ. Ա., ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ ԱՐ. Ն., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ
Վ. Ս., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.։

*ՎՖ 06269* *Պատվեր 1264* *Տիրաժ 6500*

Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ։ *Ստորագրված է տպագրության 4/V 1957 թ.։*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։*

digitised by A.R.A.R.@

ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.

11746

## ՀԱՅԳԻՐՔԻ ԳՐԱԽԱՆՈՒԹՆԵՐՈՒՄ ԵՎ ԿՐՊԱԿՆԵՐՈՒՄ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ ՀԵՏԵՎՅԱԼ ԳՐՔԵՐԸ

Ֆ. ԷՆԳԵԼՍ—«Բնության դիալեկտիկա», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 7 ռ.։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—«Կարլ Մարքս», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 50 կոպ.։*

«ՍՄԿՊ Կենտկոմի 1956 թ. Դեկտեմբերյան պլենումի որոշումները», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 20 կոպ.։*

Կ. ՄԻՐԶԱԽԱՆՅԱՆ — «Հայաստանի կոմերիտմիությունը Հայրենական Մեծ պատերազմի տարիներին», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 2 ռ.։*

Մ. ԱԴՈՆՑ—«Արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքը և նրա իջեցման ուղիները», *Հայպետհրատ, 1956 թ., գինը 1 ռ. 10 կոպ.։*

Կ. ՊԱՊՅԱՆ—«Քիմիական արդյունաբերության արտադրանքի ինքնարժեքը և նրա իջեցման ուղիները», *Հայպետհրատ, 1956 թ., գինը 90 կոպ.։*

Պ. ԼԵՊԻՇԻՆՍԿԻ — «Ճրշադարձին», *Հայպետհրատ, 1956 թ., գինը 4 ռ. 10 կոպ.։*

Ջ. ՍԱՎԵԼԻՆ — «Դավադրությունները ռեակցիայի զենքն են», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 60 կոպ.։*

«Օգնություն կոմերիտական միամյա քաղդպրոցների ունկնդիրներին», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 3 ռ. 20 կոպ.։*

«Օգնություն քաղդպրոցների ունկընդիրներին», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 5 ռ. 80 կոպ.։*

Գ. ԱՓԻՆՅԱՆ — «Տավարաբուծություն», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 5 ռ. 50 կոպ.։*

Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ—«Բանջարաբուծություն», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 5 ռ. 10 կոպ.։*

Հ. ԱՎԵՏԻՍՅԱՆ—«Դաշտային մկների արտաքնային ոչնչացման եղանակները», *Հայպետհրատ, 1956 թ., գինը 30 կոպ.։*

Վ. ՋԱՔԱՐՅԱՆ, Պ. ԿԱՐԱՆՅԱՆ—«Հայաստանում աճեցվող տանձերը», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 10 ռ.։*

Ս. ԶԼՈԲԻՆ — «Ստեփան Ռազին», *հ. I, Հայպետհրատ, 1957 թ., գինը 12 ռ.։*

Վ. ՏԵՆԴՐՅԱԿՈՎ — «Անտառներում», *Հայպետհրատ, 1956 թ., գինը 7 ռ. 80 կոպ.։*

Տ. ԿԱՄՍԱՐԱԿԱՆ — «Վարժապետին աղջիկը», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 6 ռ.։*

ՍԻԱՄԱՆԹՈ — «Հատընտիր», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 6 ռ.։*

Հ. ԱՐԱՄՅԱՆ—«Փարիզի նեգրուհին», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 3 ռ. 10 կոպ.։*

Ք. ԳՐԻԳՈՐՅԱՆ—«Գարնան ծաղիկներ», *Հայպետհրատ, 1956 թ., գինը 1 ռ.։*

Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ—«Երախտիք», *Հայպետհրատ, 1956 թ., գինը 4 ռ. 75 կոպ.։*

Ջ. ԴԱՐՅԱՆ—«Մայիս», *Հայպետհրատ, 1957 թ., գինը 6 ռ. 95 կոպ.։*

«ՀԱՅԳԻՐՔ»